


**Հարգելի՛ ընթերցող,**

Ձեզ եմ ներկայացնում **Լ.Շ. Հովհաննիսյանի «Գրաբարի բառապաշարի իմաստային խմբերի քննություն (II մաս)»** աշխատության (Երևան, 2012) էլեկտրոնային տարբերակը, որը պատրաստել եմ մեծ սիրով՝ հույս ունենալով, որ կկարողանամ օգտակար լինել այս գրքի կարիքն ունեցողին:

**Սոնա Ալավերդյան**

hominemhominemyan@gmail.com

НАЦИОНАЛЬНАЯ АКАДЕМИЯ НАУК РА
ИНСТИТУТ ЯЗЫКА им. Р. АЧАРЯНА

Л. Ш. ОГАНЕСЯН

# ИССЛЕДОВАНИЕ СМЫСЛОВЫХ ГРУПП ЛЕКСИКИ ДРЕВНЕАРМЯНСКОГО ЯЗЫКА

(Часть II)

ЕРЕВАН
ИЗДАТЕЛЬСТВО "ГИТУТЮН" НАН РА
2012

ՀՀ ԳԻՏՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԱԶԳԱՅԻՆ ԱԿԱԴԵՄԻԱ
Հ. ԱՃԱՌՅԱՆԻ ԱՆՎԱՆ ԼԵԶՎԻ ԻՆՍՏԻՏՈՒՏ

Լ.Շ.ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ

# ԳՐԱԲԱՐԻ ԲԱՌԱՊԱՇԱՐԻ ԻՄԱՍՏԱՅԻՆ ԽՄԲԵՐԻ ՔՆՆՈՒԹՅՈՒՆ

( II ՄԱՍ)

ԵՐԵՎԱՆ
ՀՀ ԳԱԱ «ԳԻՏՈՒԹՅՈՒՆ» ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ
2012

ՀՏԴ 809.198.1
ԳՄԴ 81.2Հ
Հ 854

*Տպագրվում է ՀՀ ԳԱԱ Հ.Աճառյանի անվան
լեզվի ինստիտուտի
գիտական խորհրդի որոշմամբ*

Պատասխանատու խմբագիր՝ բանասիրական գիտությունների
թեկնածու **Ն.Գ. Հովհաննիսյան**

**Հովհաննիսյան Լ.Շ.**
**Հ 854** Գրաբարի բառապաշարի իմաստային խմբերի քննություն. (II մաս) Գիտություն. 2012 – 184 էջ

ԳՄԴ 81.2Հ

ISBN 978-5-8080-0727-7


## ԵՐԿՈՒ ԽՈՍՔ

Սույն ուսումնասիրության առաջին մասը լույս է տեսել 2008թ.: Այն բաղկացած է չորս գլուխներից:

*Առաջին գլուխը* վերնագրված է *Մարդ, կյանք, մահ*, որի ենթաբաժիններն են. ա/ *Մարդ* հասկացության լեզվական արտահայտությունները գրաբարում, բ/ *Ծնունդ և կյանք*, գ/ Մարդու տարիքային անվանումները, դ/ *Մահ/մեռնել* հասկացության լեզվական արտահայտությունները գրաբարում, ե/ *Թաղում* հասկացության ընկալումն ու լեզվական արտահայտությունները:

*Երկրորդ գլխում* քննված է *հիվանդություն, բժշկություն* իմաստային խմբի բառապաշարը:

*Երրորդ գլուխը* նվիրված է *ժամանականիշ* բառերի քննությանը՝

ա/ օր և օրվա ժամանակահատվածներ.

բ/ շաբաթ և շաբաթվա օրեր.

գ/ ամիս, ամսանուններ.

դ/ տարի:

*Չորրորդ գլուխը* վերնագրված է *Գունանուններ.*

քննված են հայերենի գունանունների գործառական առանձնահատկությունները, որոշ գունանունների իմաստային զարգացումները:

Տարբեր խմբերի բառապաշարի քննության ժամանակ բացի լեզվական փաստերից, ըստ կարելվույն, օգտագործվում են նաև արտալեզվական տվյալներ:

Որոշակի դժվարությունների հետ է առնչվում /նաև գրքի երկրորդ մասում/ դասակարգումների ու քննության միասնական սկզբունքների պահպանումը: Բառապաշարի տարբեր խմբեր պահանջում են քննության տարբեր եղանակներ ու մեթոդներ՝ կախված նյութի ծավալից, բազմաշերտությունից, այդ բնագավառին վերաբերող առկա ուսումնասիրությունների արդյունքներից:

Բառապաշարի իմաստային խմբերի քննությունը կարևորվում է նաև տվյալ խմբի /ենթախմբի/ բառապաշարը հնարա-

վորինս ամբողջական ներկայացնելու առումով: Սակայն դա պայմանավորված է որոշակի դժվարություններով՝ բառարաններում չվկայված լինելը, որոշ դեպքերում էլ վկայված բառերի՝ բնագրային օրինակների բացակայությունը, նույն բառի տարբեր ձևերի առկայությունը, հետգրաբարյան փուլում վկայված բառերի՝ գրաբարում ավանդված լինելու կամ չլինելու հանգամանքը, բառերի բազմիմաստությունը /սա ենթադրում է նույն բառի ներառում տարբեր դասակարգումներում/ և այլն:

Ըստ կարելվույն փորձել ենք առանձնացնել Նոր հայկազյան բառարանում չվկայված բառերը:



# ԳԼՈՒԽ ԱՌԱՋԻՆ

## ՈՒՏԵԼԻՔ ԵՎ ԸՄՊԵԼԻՔ

Գրաբարյան աղբյուրները որոշ տեղեկություններ են հաղորդում կերակրատեսակների և ըմպելիքների վերաբերյալ: Այս ոլորտին առնչվող անվանումների անդրադարձ կա հայոց լեզվի պատմությանը վերաբերող մի շարք աշխատություններում: Նման կարգի բառերի ըստ հնարավորին ամբողջական ցանկը ներկայացված է Հ. Աճառյանի և Գ. Ջահուկյանի կողմից[1], որոնք ուշադրություն են դարձրել հատկապես բառերի ծագումնաբանական շերտերին:

Գրաբար մատենագրության և գրաբարյան բառարանների ընձեռած նյութի հիման վրա փորձել ենք ավելի ընդգրկուն ներկայացնել իմաստային այդ խումբը՝ ուշադրություն դարձնելով բառիմաստներին, գործառական յուրահատկություններին, հաճախականությանը և այլ երևույթների:

Գրաբարում *ուտելիք* իմաստային խմբի ընդհանրական ու միջուկային բառերն են՝ *ուտելի, կերակուր, ճաշ, պարէն, սնունդ:* Վերոհիշյալ շարքը գործառական տարբեր հաճախականությամբ ու իմաստային նրբերանգներով լրացնում են *բուտ, ուտեստ, խորտիկ, կեր, սպաս, կուր, խահ/խոհ, եփոյ/եփոց, ջամբ* «կերակուր» բառերը. «...ինքեանք անգործք և զգործոցն զկուրս և զվաստակս ուտեն» /Կոչ. ընծ., 116/: «Եկն և արկ ի սան եփոյին... և արկ առաջի արանցն ուտել» /Դ. Թագ., 40-41/: «Տուեալ էր զնոսա յուտեստ... հարճի թագաւորին» /ՆՀԲ/: «Ննջեաց առանց ընթրեաց և խորտիկ ոչ մուծին առաջի նորա» /ՆՀԲ/: *Եփոյ/եփոց*-ը ունի «եփած ճաշ» նրբիմաստը:

Ուտելու գործողություն արտահայտող բառերն են՝ *ուտել, ճաշել, ճաշակել, բուտել, բուծանել, սնանել, որովայն լնուլ, որովայն պարարել, լափել* /վերջին երեքը՝ անարգական իմաստով/. այդպես է և *մցոել*-ը, որը եզակի կիրառություն ունի: Ըստ էության *բտել*-ը նույնպես անարգական իմաստով է:

*Ճաշկերույթ* հասկացությունը գրաբարում արտահայտվում է *երախան, հացկերույթ, սեղան, խնջույք, կոչունք, գինարբուք, հիւրոյք* բառերով. «Սովորութիւն էր յորժամ մեռանէր ոք հացկերոյթ առնել» /ՆՀԲ/: «Եկեսցես դու ի կոչունսն իմ զոր առնելոց եմ այսօր... և մինչդեռ ըմպէին գինի, ասէ արքայն ցեսթեր» /Եսթեր, Ե., 4-6/: «Պատրաստ արարէր առաջի իմ սեղան» /ՆՀԲ/: *Ագապ*-ը ըստ Արմ.-ի աղքատներին տրված սիրո ճաշ է:

*Սեղան կազմել, սեղան յօրինել* նշանակում է «ճաշ պատրաստել», «սեղան գցել»:

Օրվա որոշակի պահերի՝ ուտելուն առնչվող հասկացություններից գրաբարը չունի *նախաճաշ* բառը, բայց կան *ճաշ* «կեսօրվա ճաշ» և *ընթրիք* «երեկոյան ճաշ»: Գրաբարում եզակի վկայությամբ հանդիպում է և *մակընթրակք* «աղանդեր», որն անշուշտ պատճենված է հունարենից. «Հուսկ յետոյ մրգոցն ի ներքս մուծեալ՝ որ ասին մակընթրակք» /Փիլ., Ճառ., 21/: 5-րդ դարից վկայված է և *աղանդեր* «ճաշից հետո մատուցվող քաղցրեղեն, միրգ». հմմտ. «Եւ ի ժամ աղանդեր մատուցանելոյ եդին առաջի նորա միրգ, խնձոր և վարունգ և ամիճ զի կերիցէ» /Բուզ., 174/:

*Սնունդ* բառը գրաբարում հաճախական չէ: Բառի արմատն է *սուն*, որը հանդես է գալիս որպես բառաբաղադրիչ /կաթնասուն, ընդասուն/, առկա են և ձայնդարձային տարբերակները՝ *սան*, որի նախնական «սնունդ» իմաստը մթագնվել է և գործածվում է «զավակ, ձեռնասուն», և *սին*, որից *միասին*՝ բառացի «մեկտեղ սնված, միասին մեծացած»:

*Սնունդ, սննդակից, սնուցանել* և նման մի շարք բառերի առաջին բաղադրիչը կարող է ծագած լինել թե՛ *սին*, թե՛ *սուն* ձևերից[2]:

Մեզ հետաքրքրող իմաստային խմբի միավորները ներկայացնենք որոշ դասակարգումներով:



1. ՀԱՑ, ՀԱՑԱՏԵՍԱԿՆԵՐ

Գրաբարում հաց և հացի զանազան տեսակ են մատնանշում *հաց, դոն, նկան, նկանակ, գրտակ, սիղիգն, շօթ, պան* բառերը: Հոմանիշային այս շարքի հիմնական անդամը *հաց*-ն է: *Դոն* «հացի տեսակ» վկայված է մեկ անգամ՝ ուշ շրջանից /տե՛ս Արմ./, բայց բառի հնդեվրոպական ծագումը թույլ է տալիս ենթադրելու դրա գործածությունը նախագրային շրջանից: *Սիղիգն* և *գրտակ* նույնպես հաճախական չեն: Ըստ Արմ.-ի *գրտակ*-ը կլոր հացն է: *Պան* «կլոր հաց» հանդիպում է հիմնականում Աստվածաշնչում՝ 15 անգամ: *Շօթ*-ը թեև հաճախական չէ, բայց վկայված է 5-րդ դարից. «Եւ պանս բաղարջս և շօթս բաղարջս զանգեալ իւղով» /Ելք., ԻԹ., 2/: Թերևս հացատեսակ են *հաց կսկուծ*-ը և *աշտուճ հացը*. «Հաց կսկուծ, որ նկանն կոչի և լինէր այսպէս. սալ ջեռուցանէին, յորոյ վերայ զճարպն թացեալ՝ անաստառ անդ դնէին և ապա մաղ մաղ ի վերայ արկանէին» /Եմես., Մեկն., 182/: Սա միակ վկայությունն է: «Միթէ ո՞չ երբէք կերակրեաց. այլ թեպէտ և կերակրեաց, այլ աստուճ հացիւ և ձկամբ» /Ոսկ., Ես., 157/: Բառարանները վերը նշվածները մեկնում են «չոր հաց, ցամաք հաց»: Վկայված են՝ *գարեհաց, նկանակ, գարեղէն:* Հաճախական է *հացիկ* բառը. «Կոչեա դու զտնանկն և տուր նմա զհացիկ» /ՆՀԲ/:

Արմատական բառարանը *նկան/նկանակ* ձևերի միջև իմաստային զանազանություն չի տեսնում՝ որպես բառահոդված նշելով *նկան*-ը՝ «մի տեսակ հաց» բացատրությամբ: Նկատենք, որ *նկանակ*-ը ավելի հաճախական է: Աստվածաշնչում *նկան* օգտագործված է 3 անգամ, իսկ *նկանակ*-ը՝ 29: Մատենագրության վկայած օրինակները թույլ են տալիս այդ երկու բառերի միջև տեսնել իմաստային սահմանազատում: *Նկան*-ը հացն է ընդհանրապես, հացի զանգվածը, իսկ *նկանակ*-ը՝ այդ զանգվածի ձևը, մեկ հատ հացը: Պատահական չէ, որ *նկանակ*-ը հաճախակի գործածվում է քանակական թվականների հետ կամ հանդիսանում է *հաց* բառի որոշիչ. «Գինք կնոջ պոռնկի որչափ նկանակի միոջ հացի» /Առակ., Զ, 26/: «Առ երկերիւր նկանակ» /Ա. Թագ., ԻԵ, 18/: «Տուր ինձ փոխ երկու նկանակ» /Ղուկ., ԺԱ, 5/:

Բուզանդի մի վկայությունից երևում է, որ հնում *հացի /նկանակի/* չափերը մեծ չեն եղել. «Եւ իբրև եմուտ ի վանսն իւր, վերացուցեալ զպարեգօտս իւր ի վերայ սրտին ցուցանէր կապուտակեալ քան զչափ նկանակի միոյ» /183/: Ուշագրավ է նաև *նկան*-ի ստուգաբանական իմաստը: Բառը իրանական փոխառություն է, ***ni*** մասնիկով ***kan*** «քանդել, փորել» արմատով: Ենթադրվում է, որ *նկան*-ը «մոխրի տակ թաղելով եփած հացն է» /Արմ./[3]:

Հացատեսակներից են նաև զանազան կարգի խմորեղենները /*խմորեղեն* բառը գրաբարում չկա/՝ *բաղարջ, բլիթ, բոկեղ, ծաղ, կարկանդակ, կտապ, հաստեայ, պղակուն, պաքսիմատ, տողխու, քաքար: Նաստիկ*-ը հունարենից կատարված փոխառություն է, որը վկայված է «Վարք հարանցում» *նատիկ, նստիփ* սխալ ձևերով: Սրանք սովորական *հացից /նկանակից/* տարբերվում են թերևս թխելու ձևով, պարունակությամբ, գուցե և ալյուրի տեսակով:

*Ծաղ* «մի տեսակ խմորեղեն», *տողխու* «խմորեղենի տեսակ», *հաստեայ* «խմորեղեն» գրաբարի բառարանների հավաստմամբ վկայված են մեկական անգամ: *Մանգաղ* – ՆՀԲ-ը չունի: Ըստ Արմ.-ի «մի տեսակ խմորեղեն» դարձյալ վկայված է մեկ անգամ: Ուշ շրջանից է վկայված *բոկեղ*-ը /տե՛ս Արմ./:

*Հաց թխել* կապակցությունը գրաբարում չկա: Այդ իմաստն արտահայտվում է *առնել, պատրաստել, եփել* բառերի հարադրությամբ. «...արարեալ ալիւր հաց պատրաստեցից» /Ոսկ., Պօղ., 733/: «Եւ կանայք նոցա հայս հարկանեն, առնել կարկանդակ» /Երեմ. Է, 18/: «Բաղարջ եփեաց նոցա» /ՆՀԲ/:

Հացի, խմորեղենի զանազան տեսակների պատրաստման հիմնական նյութը ալյուրն է, որը գրաբարում այլ հոմանիշ չունի, բայց կան բառեր, որոնք մատնանշում են ալյուրի տարբեր տեսակներ. *գերմակ* «ճերմակ, նուրբ ալյուր», *նաշիհ* «ընտիր ալյուր» /Արմ./, *սիմինդր*-ը նույնպես բարձրորակ ալյուր է: *Գերմակ*-ը հետագայում ձեռք է բերել նաև «հաց. ընտիր ալյուրից պատրաստված հաց» իմաստը. «Եղին զգերմակ հացն»: «Գերմակ հաց փշրեալ խառնէ և ուտէ» /ՆՀԲ/: Անստույգ համարվող *արման* բառը, որ կա Մագիստրոսի թղթերում, թերևս «խոշոր աղացած ալյուր, կորկոտ» իմաստն ունի /տե՛ս ՆՀԲ, Արմ./:



Գրաբարը ավանդել է ալյուրից պատրաստված մի շարք այլ ուտելիքների անվանումներ. *աքերայ* «ցորենից կամ խմորից պատրաստված կերակուր», *խիւս, խաւիծ, խորխիսխ, խորակ* «ալյուրով կերակուր», *հայս* «խմորեղենի միջուկը», *փոխինդ:*

*Խորակ*-ը ըստ Արմ.-ի վկայված է մեկ անգամ:

## 2. ՄՍԵՂԵՆ

Միսը հնուց ի վեր եղել է մարդու հիմնական սննդատեսակներից մեկը: Քաղաքակրթության որոշակի մակարդակում, նաև կրոնական նկատառումներով ի հայտ է եկել *մսակերություն - ոչ մսակերություն* հասկացությունը: *Մսից հրաժարվել* հասկացության համար Եզնիկը օգտագործում է *մսահատ* բառը. «Իսկ ձեր ուխտաւորքն ասեն ընդէր են մսահատք» /231/: *Հում միս* իմաստն ունի *շաղիղը*, որից *շաղղակերութիւն* «հում միս ուտելը». «Յորժամ տեսանիցես զայր մի զօրաւոր, որ ի բազում յափշտակութեանց լի առնէր զտեղան իւր և յարբեցութիւն և ի շաղղակերութիւն հարեալ, հասանէր իբրև զառիւծ մի և զայլոց զոսկերս խորտակէր և զիւր սեղանն լնոյր արեամբ և շաղղով» /Ոսկ., Ես., 137/:

Ուտելիքներից գրաբարը ավանդել է *միս, ամիճ, ապուխտ, ճարպ, պախ, խորտիկ, ուղեղ* բառերը:

*Ամիճ* բառով երկու օրինակ կա արձանագրված /Բուզանդ, Եղիշե/: Եղիշեի վկայությունից ակնհայտ է դառնում և բառիմաստը՝ «երեի մսից ճաշ»: Այդ օրինակում առկա է մեկ այլ ուտելիքի անվանում՝ *զվարակի ուղեղը,* որ հայ փափկասունք տիկնանց սիրելի ճաշատեսակներից էր. «Որ ի մանկութենէ իւրեանց սնեալ էին ուղղովք զուարակաց և ամճովք էրէոց, խոտաբուտ կենօք իբրև զվայրենիս ընդունէին զկերակուրն մեծաւ խնդութեամբ» /Եղիշ., 201/:

*Ապուխտ*-ը աղած ու չորացրած միսն է, ստուգաբանական իմաստը՝ *անեփ* /***a*** ժխտական մասնիկ +***puxt*** *«եփելի»* արմատը/: Գրաբարյան վկայություններից երևում է, որ ապխտում էին նաև ձուկը, թռչունների միսը. «Ժողովեցին զլորամարգին... և սպանին և

ապխտեցին իւրեանց ապուխտս» /Թիւք. ԺԱ, 32/: «... ապուխտ արարեալ, զձուկն զնա կարծելով» /ՆՀԲ/:

*Խորտիկ*-ը թեև ունի «ուտելիք» ընդհանրական իմաստը, որը նաև ստուգաբանական իմաստն է, բայց վկայված որոշ օրինակներից երևում է, որ այն նաև մսից պատրաստված ուտելիք է. «Որսա ինձ որս և արա ինձ խորտիկս» /ՆՀԲ/:

*Պախ*-ը ջրում եփած միսն է. «Եւ կերիցեն զմիսն ի գիշերիս յայսմիկ. խորովեալ հրով... և ոչ ուտիցէք ի նոցանէ հում և ոչ պախ եփեալ ջրով» /Ելք., ԺԲ, 8-9/:

Թեև *կենդանանում + եմ* կաղապարը սովորաբար արտահայտում է «մորթի, հագուստ» իմաստը, բայց որոշ օրինակներում նաև նշանակում է «տվյալ կենդանու միս». «Հրաժարէին ի խոզենւոյն և ոչ միայն յայնմանէ, այլ յամենայն իսկ ի մսոյ» /Ոսկ.,Պօղ., 351/:

## 3. ԿԱԹՆԵՂԵՆ

Այս ենթախումբը ներկայացնող բառերն են *կաթն, դալ, իւղ, խեր, կարագ, կոգի, մածուն, պանիր, սեր, մաճառակ, շճուկ /թան, մածնաջուր/:*

Գրաբարում հաճախական են *կաթն, իւղ, կոգի, պանիր* բառերը: *Մածուն*-ը վկայված է ուշ շրջանից /թերևս 10-րդ դարից/, սակայն 5-րդ դարից *մածնու* բայի առկայությունը ինչ-որ տեղ ենթադրել է տալիս նաև համապատասխան գոյականի առկայությունը:

*Դալ* բառով վկայված օրինակները ունեն միայն «մոր առաջին կաթը» իմաստը: *Կարագ* հին մատենագրության մեջ ավանդված չէ, բայց եթե իրոք այն միջին պարսկերեն *karak-ն է, ապա ուրեմն բառը գործածական է եղել նաև հնում: *Մաճառակ*-ը ՆՀԲ-ը մեկնում է «կաթն մածեալ, մակարդեալ, բլիթ կաթնեղէն, նոր պանիր», Արմ.-ը՝ «նոր և թարմ պանիր»: Վկայված մեկ օրինակ կա միայն. «Եւ զտասն մաճառակս զկաթին տարցես հազարապետին և տեսցես զողջոյն եղբարց քոց» /Ա. Թագ., ԺԷ, 18/:



## 4. ՔԱՂՑՐԱՎԵՆԻՔ

Այս խմբի մեջ են մտնում *մեղր, խորխախ* «մեղրահաց, մոմով մեղր», *շաքար, հրուշակ*, նաև չորացրած մրգերի զանազան տեսակների անվանումները՝ *չամիչ, չիր, պաղատիտ* «չոր թուզ»:

*Չիր*-ը վաղ շրջանի գրաբարը չի վկայել, բայց բառի հ.-ե. ծագումը ենթադրում է գործածության հին ակունքներ: *Հրուշակ*-ը գրաբարում ավանդված չէ. ըստ Արմ.-ի առաջին վկայությունը Նաղաշ Հովնաթանի տաղերից մեկում է: Բառը իրանական փոխառություն է, և դրա միջին իրանական բնույթը կարող է հավաստել գրաբարում բառի գործածությունը:

Ըստ բառարանային տվյալների՝ *շաքար*-ի առաջին վկայությունը 7-րդ դարից է: Որպես առաջին բաղադրիչ՝ բառը առկայանում է միայն *շաքարաբուխ* բարդ բառի կազմում: 5-րդ դարից են վկայված *չամիչ, պաղատիտ* բառերը. «Երկերիւր նկանակ և հինգ արդու փոխնդոյ և կայթ մի չամիչ և պաղատիտս երկերիւր» /Ա. Թագ., ԻԵ, 18/:

## 5. ՀԱՏԻԿԵՂԵՆ

*Բրինձ, գարի, կորեակ, հաճար, ոլոռն, ոսպն, որիզ, ցորեան:*

*Բրինձ*-ը վկայված է 7-րդ դարից, իսկ հոմանիշ *որիզ*-ը՝ 5-րդ դարից՝ եզակի վկայությամբ: Հատիկեղենից պատրաստված այլ ուտելիքներից են՝ *աղանձ, կասկ* «եփած գարի», *կորկոտ, մուրկ* «աղանձ», *եղի* «կաթնահամ ցորեն, նաև այդ ցորենի աղանձը»: Վերջինիս հինգերորդդարյան վկայություն չկա, հետագա դարերից են նաև *գարեկորկոտ, գարեփոխինդ: Խայծառ* հ.-ե. ծագում ունեցող բառը ըստ Արմ.-ի գործառում է միայն բարբառներում:

## 6. ՋՐԻԿ ՃԱԾ

Այս տեսականիով մեր նախնյաց սեղանը, ամենայն հավանականությամբ, հարուստ չի եղել: Վկայված են *արգանակ, թան*: *Արգանակ*-ը ըստ ՆՀԲ-ի «պարարտ հիւթ մսոյ եփոյ»: Ահա երկու վկայություն. «... և հուր բորբոքեցից զի միսն հալեսցի և արգանակն նուաղեսցի և ոսկերքն փխրեսցին» /Եզեկ., ԻԴ, 10/: «Եւ միս եդ ի վերայ խանի և զարգանակն արկ ի պղյտն» /Դատ., Զ, 19/:

*Խաշոյ*-ը վկայված է ուշ շրջանից:

*Թան*-ը հաճախական է հատկապես Աստվածաշնչում. «Ետ Եսաւայ հաց և թան ոսպնեայ» /Ծննդ., ԻԵ, 29/: *Թան ոսպնեայ* կապակցությունը վկայված է 5-րդ դարից, իսկ *ոսպնաթան*-ը` ուշ շրջանից: Կա և *շիկաթան*. «...տո՛ւր ինձ ճաշակել ի շիկաթանէդ յայդմանէ» /Ծննդ., ԻԵ, 30/:

Ներքոգրյալ օրինակներից երևում է, որ *արգանակ*-ի և *թան*-ի զանազան տեսակներ են եղել. «Ամաչեմ զամենայն պատմել, բայց սակայն ասացից զհաւսն և զփասեանսն և զգունակ թանսն և զարգանակ, զազգի ազգի համեմունսն ընդ միմեանս խառնեալս, զդալար և զչոր խորտկացն համադամս» /Ոսկ., Մտթ. Գ, 69/: « Մի զուարթուն հաց կարկառոյր և ... ազգի ազգի թանս» /Եփր., Կց., ԽԳ/: *Սամթաջուր*-ը վկայում է Մանդակունին:

Ըստ ՆՀԲ-ի *եփոյ/եփոց*-ը «թարգմանի ստէպ ի մեզ թան»: *Եփոյ/եփոց*-ը տարբերվում է *խորովոյք*-ից. «մեծամեծացն ճաշք և ընթրիքն դժուարաւ յօրինին, եփոցք և խորովոյք և ծախք ի վաճառաց» /ՆՀԲ/:

## 7. ԸՄՊԵԼԻՔ

Անվանումները մեծաթիվ չեն. *գինի, խազմուզ* «քաղցու», *ցքի, քաղցու, օղի, օշարակ,* նաև սրանց տեսակները:

*Օշարակ*-ը կարող է լինել ոգելից կամ ոչ ոգելից, իսկ մյուս ըմպելիքները ոգելից են: *Ցքի*-ն ըստ ՆՀԲ-ի ունի «ոգելից խմիչք, օղի», ըստ Արմ.-ի`«արմավից պատրաստված արբեցուցիչ ըմպե-



լիք, օղի» իմաստը. «Արբեցարուք ոչ ի գինւոյ և ոչ ի ցքւոյ» /ՆՀԲ/: «Իսկ ցքի.... որ ի պէտս գինւոյ փոխէին` զայն կոչէ, քանզի ըմբրեցուցիչ իմն և արբեցուցիչ է» /Ոսկ., Ես., 53/: *Քաղցու*` «նորաքամ գինի». «Եւ որովայն իմ իբրև զտիկ քաղցուոյ կապեալ նռայ» /Յոբ., ԼԲ, 19/: *Քացախ* ՆՀԲ-ը մեկնում է «կծու և բարկ ըմպելիք». «Զքացախ ցքւոյ մի արբցէ» /ՆՀԲ/: *Օղի* բառը հաճախական է *օղի և գինի* կապակցությամբ. «Արդ զգոյշ լեր, գուցէ ըմպիցես գինի և օղի» /Դատ.,ԺԳ, 4/: «Յամենայնէ որ ելանէ յորթոյ` մի՛ կերիցէ և գինի և օղի մի՛ արբցէ և ամենայն անօրէն մի՛ կերիցէ» /Դատ., ԺԳ, 14/: Որպես բառակազմական բաղադրիչ առկա է *ամբրաւօղի, հացօղի, մեղրօղի* բառերում:

Ոչ միայն հաճախականությամբ, այլև բառակազմական հնարավորություններով առանձնանում է *գինի* բառը /գինարբու, գինեբուխ, գինարբութիւն, գինաւէտ, գինեակ, գինեբեր, գինեգոյն, գինեհամ, գինեհան, գինեկէզ, գինեճանութիւն, գինեմ «գինովանալ», գինեմոլ, գինեպաշտ լինել «մատռվակել», գինըմպու, գինութիւն «գինարբուք»..../:

*Արիւն խաղողոյ /որթոյ/* նշանակում է «քաղցու, գինի». «Արիւն խաղողոյ և ձէթ», «կանխագոյն է ծաղիկն...քան սկիզբն լինել արեան որթոյ» /ՆՀԲ/:

Հներն էլ բծախնդիր էին գինու որակի հանդեպ: Բարձր խավերն ունեին իրենց պատշաճող տեսականին. գրաբարը վկայում է *արքունի գինի*, այսինքն` ազնվագույն, արքունիքին վայել գինի. «Որ զարքունի գինի ըմպեն» /ՆՀԲ/: Կա և *թասուն գինի* /ըստ ՆՀԲ-ի «ազնիւ գինի Թասոս կամ Թաշոս կղզւոյ». «Դու զԹասուն գինին ըմպես, նմա և ոչ բաժակ մի ցուրտ ջրոյ տաս ի ծարաւ» /Ոսկ., Մտթ., Բ, 693/:

* * *
* *

Ուտելիք ցույց տվող բառերը պատկանում են ծագումնաբանական տարբեր շերտերի.

ա/ *Բնիկ հայերեն բառեր.* աղանձ, ալիւր, բոկեղ, բլիթ, բուտ, դալ, դոն, զանգուած, թան, խայծաղ, կաթն, կոգի, կորկոտ, կեր, կուր, կերակուր, մաստ «ածիկ», միս, մածուն, մեղր, մուրկ «աղանձ», չիր:

Բարբառային գործածություն ունեցող մի շարք բառեր էլ հ.-ե. ծագում ունեն. *ածիկ, լափ, բմբուշ* «լավ թխած հաց», *բուլ* «խմորի գունդ»:

բ/ *Իրանական փոխառություններ.* ամիճ, ապուխտ, գրտակ, թոշակ «կերակուր», գերմակ, խոհ, խորակ, խորբալ «ցորեն», խորտիկ, կասկ, կարկանդակ, կարագ, կտապ, հրուշակ, ճաշ, ճարպ, նկան, նպար, նշխար, շիրիկ, շաքար, պանիր, պիհ, պարէն, պաշար, պատրուճակ «ուտելու միս», պախ, պախաճճամ «կարկանդակ», քաշկէն «գարեհաց»:

գ/ *Հունական փոխառություններ.* մորէ /ձկնեղենով համեմունք/, պաղատիտ, պաստեղ /գրաբարյան փուլում վկայված չէ/, պան, պղակունդ:

դ/ *Սեմական փոխառություններ.* խաւիծ, խմոր, ձէթ, մանանայ, նաշիհ, քաքար:

ե/ *Անստույգ ծագմամբ բառեր.* արգանակ, բաղարջ, եղի, խիւս, կաղտի, հայս, հաստեայ, ձու, ունդ, շօթ, չամիչ, ջամբ, փոխինդ:

*Խմիչք* մատնանշող բառերից հայերեն է *գինին* /նաև ջուր/, իրանական փոխառություն է *օշարակ*-ը, իսկ *ցքի* և *օղի* բառերի ծագումը հստակ չէ:

Ինչպես նկատելի է, իմաստային այս խմբում զգալի թիվ են կազմում բնիկ հայերեն և իրանական ծագում ունեցող բառերը:

Հայ մատենագրության բազմաթիվ վկայություններ ուշադրության արժանի են ինչպես լեզվական քննության, այնպես էլ ուտելիքի և ըմպելիքի վերաբերյալ մի շարք մեկնաբանությունների տեսակետից: Բազմաթիվ վկայություններ կան արդեն 5-րդ դարից: Օրինակ՝ Մանդակունու «Յաղագս քառասնորդական պահոց եւ բաղդատութիւն նորա ընդ զատկական քառասնին» ճառում հաղորդվող տեղեկությունը կարևոր է ոչ միայն նրանով, թե ինչ չպետք է ուտել պահքի ժամանակ, այլև ուտելիքների անվանումներով:



Ահա այդ հատվածը.«Արդ ասրէն է զայս պահոց քառասնորդս խարթիկ պահել ի բարեկենդանէն մինչեւ ցզատիկն... Այլ գինի եւ իւղ, ձու, ձուկն, պանիր, կոգի, կաղտի, բածին, շճուկ, կաթն, խեր, և ձկանմորէ, զայս բնաւ ամենեւին չէ ասրէն և ոչ վայել է ճաշակել ամենայն ումեք» /ՄՀ, Ա, 1273/:

Գրաբարի բառարանները փորձում են մեկնաբանել վերոբերյալ հատվածում նշված մի շարք բառեր. այդուհանդերձ դրանք կարող են նոր ստուգաբանությունների, ճիշտ բառաձևի, հնչյունական փոփոխությունների մասին այլ դիտարկումների նյութ դառնալ. օրինակ՝ *բածին*-ը, որ Արմ.-ում դիտվում է որպես «մի տեսակ աղած ձուկ», կարող է և *մածուն* բառի տարբերակը լինել, մանավանդ, որ հայերենում, թեև ոչ հաճախական, առկայանում են բ/մ լծորդները:

Բազմաթիվ վկայություններ կան, որոնցում քննադատվում է շատակերությունը, ստամոքսը հաճախ անարգական ձևով անվանվում է *աղբարոյն, աղբաման.* «Զաղբարոյն որովայնն փտեալ ապականիցէ» /Մանդ./: «Զի յորժամ սիրտն հանճարական հպարտանայցէ, սաստեսցէ ի նա փորն աղբաման» /Եմես., ԺԲ/: «Որովայնք աղբով կերակրոցն փափկացեալք խորհուրդս անտեղիս բերեն», «զի որովայնք թանձրացեալք խորհուրդս սուրբս ոչ ծնանին ... եւ որք որովայնին ծառայեն, անհնարին է լինել հաւատարիմ ծառայ Աստուծոյ» /Մանդ., ՄՀ,Ա,1168/: Անարգական երանգ ունի և *փոր*-ի *ձոր* հոմանիշը. «Որ պճնէ զձորս իւր և լնու զպորտ իւր» /Եւագր., 120/:

Գրաբար մատենագրության մեջ շատ հաճախական է *գինի* բառը. կան նաև *գինի* խմելու, *հարբելու* հասկացություններին առնչվող բազմաթիվ բառակապակցություններ ու դարձվածային միավորներ:

Կան վկայություններ, երբ գինու չափավոր օգտագործումը դրական է համարվում:Ս.Գրքում գինին խմելու /որը թույլատրելի է/ շատ վկայություններ կան: Հիշենք հարսանիքի տեսարանը, որին հրավիրված էին Հիսուսը և նրա աշակերտները: Երբ գինին վերջանում է, Հիսուսը կարգադրում է՝ թակույկով ջուր բերեն, և ջուրը

դարձնում է գինի, և տաճարապետը ասում է՝ «ամենայն մարդ զանոյշ գինին յառաջագոյն պաշտէ» /Յովհ., Բ, 1-10/[4]:

Բայց գերակշռող են այն վկայությունները, երբ գինի խմելը, հարբելը պախարակվում է: Տարբեր գործերից բերենք այդ կարգի օրինակներ՝ հատկապես լեզվական /լեզվամտածողական/ երեվույթները ներկայացնելու միտումով. «Կարի արբեցող զայն ասեմ, որ յոռի գինովն զգլխիցէ» /Ոսկ., ՆՀԲ/:

Ս. Գրքում բազմաթիվ են այդօրինակ վկայությունները: Առաջին հարբած մարդն էլ ըստ Գրքի եղել է Նոյը. «Եւ սկսաւ Նոյ, այր հողագործ, զերկիր գործել եւ տնկեաց այգի, եւ երբ ի գինւոյն արբեցաւ, եւ մերկացաւ ի տան իւրում» /Ծննդ., Թ, 20-21/: «Արդ զգոյշ լեր, զուցէ ըմպիցես գինի և օղի» /Դատ., ԺԳ, 4/: «Եւ մի արբենայք գինւով յորում զեխութիւն է» /Եփես., Ե, 18/: Կորյունը *գինի*-ն վկայել է մեկ անգամ. «Անդ էր այնուհետեւ զարբեալ գինւով» /32/: Եզնիկը՝ 6. «Գինի զբազմութիւն ախտից զարթուցանէ» /303/: Բուզանդը՝ 17: Նշենք մեզ հետաքրքրող օրինակները. «Գինին եկն զակամբ նորա» /174/, «...առնոյր գինի ի մատուն ըմպել» /159/, «Թագաւորն Պապ զուրախութեան գինին ունէր ի մատունս իւր» /196/, «Իբրև ընդ գինիս մտին...» /196/, «Եւ եղեւ իբրև անցին զառանձին ի գինւոյն՝ ըստ չափ անցանելով, և ... թագաւորն Վարազդատ պահէր զանձն ի գինւոյն» /200/: Ագաթանգեղոսը՝ 13. «Կիզան ի համոյ հրաբաժակ գինւոյն» /253/, «Արբ Սոդոմ զգինին անօրէնութեան» /269/: Եղիշեն՝ 1: Փարպեցին՝ 8. «Բայց ի թմրական գինւոյն հրաժարեցուցէք զոխեղծսն» /181/: Խորենացին՝ 4. «Ուրախացեալ Արշակ ի գինիս պարծէր» /283/, «Ի գինւոջ զեխեալ...» /331/:

*Արբենալ* և *ըմպել* գրաբարում հոմանիշության եզրեր ունեն՝ «խմել, ըմպել» ընդհանրական իմաստով: Բայց *արբենալ* «գինի խմել, հարբել» իմաստով գործածությունը շատ հաճախական է: Նկատենք, որ անցյալ կատարյալի դեպքում էլ ըմպել-ի հիմքը *արբ*-է, և այդ դեպքում փաստորեն *խմել* կամ *հարբել* իմաստը տարբերակվում է ըստ համատեքստի: Օրինակ՝ *այր կերող և արբեցող* բառակապակցությունը կարող է նշանակել «ուտող և խմող» /բայց ոչ հարբող/, նաև «ուտող և հարբեցող»: «Արբ ի գինւոյն և արբեցաւ»



ՆՀԲ/ օրինակում *արբ* նշանակում է «խմեց», իսկ *արբեցաւ*՝ «հարբեց»:

*Արբ* արմատով որոշ կազմություններ «հարբել, գինովանալ» իմաստով են գործածված՝ *արբեցութիւն, արբեցումն, արբեցող*... և այլն: Իսկ *արբուցանել*-ը հիմնականում նշանակում է «խմեցնել, ծարավը հագեցնել». «Արբո՛ ինձ սակաւ մի ջուր ի սափորոյ այտի» /ՆՀԲ/, «Նոքա և զծարաւիս արբուցանեն» /Ագաթ., 4/:

Բազմաթիվ օրինակներ կան, որոնցում հարբեցողությունը համարվում է անհանդուրժելի՝ հատկապես քրիստոնեական գաղափարախոսության տեսանկյունից: Մանդակունին իր ճառերից մեկում գրում է. «Եւ արդ եթէ չար է  պոռնկութիւն, չար է և արբեցութիւն. իսկ ընդէ՞ր չերկնչիս և խորշիս յարբեցութենէն» /ՄՀ,Ա,1225/: Նման օրինակներ կան հատկապես ճառերում, քարոզներում, կանոններում: Հայ իրականության մեջ թերևս առաջին վկայությունը Գրիգոր Լուսավորչինն է. «Եթէ ոք արբեցաւ ի պահանայից կամ ի սարկաւագաց... մի իշխեսցէ ի պատարագ կամ ի պաշտաւն մերձենալ... զի արբեցողք ընդ սպանողսն են» /ՄՀ, Ա, 144/:

Այդօրինակ վկայություններ կան նաև հետհինգերորդդարյան գրականության մեջ: Բերենք Սիմեոն Աղձնեցու մի դիտարկումը. «Գինարբութիւն՝ մատն կախարդաց... Արբեցութիւն շուն կատաղեալ... արբեցութիւն պատառ Յուդայի, կեր անշիջանելի հրոյն: Գինարբուն խաւար պատրոյգ և շիջեալ լոյս... պսակ փշատոյ և գինդ ոսկի ի քիթս խոզի.... Արբեցութիւն ատելի աստուծոյ, ցանկալի շանց...»[5]:

## ՆՀԲ-ՈՒՄ ՉՎԿԱՅՎԱԾ ԲԱՌԵՐ

Քննվող բառիմաստային խմբի և դրան առնչվող մի շարք բառեր վկայված չեն ՆՀԲ-ում: Դրանցից են՝

*աղաւնման* «աղունը , հացահատիկը մաղող». «Արդ աղաչեմ յիշել... զԹորոս հացկտուր և զԱնտոն աղաւնման» /Հիշատ., ԺԴ, 109/:

*ասպակ* «ուտելիքի մնացորդ». «Շունք սեղանոյն ասպակի սպասիցեն» /Ոսկ., Պօղ.,Ա, 459/:

*գինեզեղութիւն* «հարբածություն».«Գտին նմա թմբրեալ գինեզեղութեամբ» /Ղևոնդ, 115/:

*ըմպումն* «խմելը». «Յերկար ըմպման գինւոյն» /Ն. Բիւզ./:

*ընթրակերոց* «ճաշասենյակ». «Յոտն կան առ հասարակ ամենեքին և ի միջոցի ընթրակերոցին, նախ զառաջինն երկուք լինին, մին արանց և մին կանանցի» /Փիլ., Ճառ., 30/:

*խոհակերումն* «ճաշ պատրաստելը». «Միով կատարեալ պատարագաւն խնայեաց զոչխարս ի սպանմանէ և զորթս ի խոհակերմանէ» /Եփր. Կց., ԾԱ, 106/:

*խոհապետ* «գլխավոր խոհարար». « Եւ կոչեցեալ խոհապետին զվաճառականսն և խնդրեաց զիս ի նոցանէ գնոյ» /Անկ. գիրք հ. կտ., Ա, 141/:

*խորակ* «այլուրով պատրաստված ուտելիք». «Զգորեանն ետ քեզ Աստուած միայն և դու ազգս ինչ հնարիս հնարել անտի զնաշիհն և զխորակն և զգերմակն» /Արմ./:

*հացանաղաց* «չմանրած հացահատիկ». «Յայտ է հասուցեալ և պատրաստեալ կերակուրս... և հացանաղաց ըստ թուոց...» /Եղիշ., Մեկն. արարծ., ՄՀ, 873/:

*հացկտուր* «հացագործ» /տե՛ս *աղաւնման*-ի օրինակը/:

*հացաւղի* «գինի և գքի ոչ ըմպէին. զի գինի և հացաւղի և մեղրաւղի... մի են» /ՄՀ, Ա, 1284/:

*մանգառ* «խմորեղենի տեսակ». «Եւ ի վերայ հացին... և ի վերայ նաշիհին պատարագացն և ի վերայ անխումն մանգառան...» /ՆԳ.Ա. Մնաց., ԻԳ, 29/:



*մատռուակոց* «գինու մառան կամ սեղանատուն». «Մատռուակոցս ընդ հարաւ կողմն» /Անկ. Գիրք առաք., 376/:

*սննդականութիւն* «սնունդ, սնվելը». «Դիել կաթն յօժարեցուցէր զանգէտսն ի սննդականութիւն» /Փարպ., 181/:

## ԾԱՆՈԹԱԳՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

1. 1.Տե՛ս Հ. *Աճառյան*, Հայոց լեզվի պատմություն, մաս 1-2, 1940-1951: Գ. *Ջահուկյան*, Հայոց լեզվի պատմություն /նախագրային ժամանակաշրջան/, Ե., 1987:
2. Մանրամասն տե՛ս *Արմ.*-ի *Սան, Սուն* բառահոդվածները:
3. Տե՛ս նաև В.И. Абаев, Этимологические заметки, "Труды ИЯЗ", 1956, 4, стр. 449:
4. Գիրգոր Տաթևացին Հովհաննու Ավետարանի *անոյշ գինի* արտահայտության հետ է կապում գինի խմողին *անուշ* ասելը, որը «յայսմանէ սովորեալ քրիստոնէից ի յըմպել, գինւոյն «անոյշ» ասեմք միմեանց, որպէս տաճարապետն *անոյշ գինի* ասաց» /Տե՛ս Սուրբ Գիրգոր Տաթևացի, Մեկնութիւն Յովհաննու Աւետարանի, Ս. Էջմիածին, 2005, էջ 120/:
5. Սիմէոնի Աղձնեաց եպիսկոպոսի ասացեալ վասն գինո խմողաց, որ արբենան... /Տե՛ս *Անեմյան մատենաշար*, Ա, Ե., 2002, էջ 194/:

## ԳԼՈՒԽ ԵՐԿՐՈՐԴ

## ՀԱԳՈՒՍՏ, ԶԱՐԴԱՐԱՆՔ

Հագուստը քաղաքակրթության առաջին նշանակալից քայլերից մեկն է: Դրա ծագումն ու ձևաբովանդակային զարգացումը պայմանավորված է բնակլիմայական, սոցիալական, հասարակական շերտավորման, արվեստի ընկալման ու կիրառման, անհատական ճաշակի և այլ բազմաթիվ գործոններով:

Մերկ մարդուց մինչև թզենու տերև, այնուհետև մարմնի պարզունակ ծածկույթ ժամանակահատվածը կարճատև չի եղել, և այդ ընթացքում մի շարք այլ գործոնների հետ ձևավորվել, զարգացել է բնության և մարդու մի նոր ներդաշնակություն:

Ժամանակի ընթացքում տարազը ներկայանում է ոչ միայն որպես ծածկույթ, այլև սոցիալական զանազան դիրքերի, տարբեր սեռերի մարդկանց յուրատեսակ տարբերակիչ: Հագուստների տարբերույթ ու տարածև բազմազանությունը կախված է նաև ազգային, պատմամշակութային յուրահատկություններից. պատահական չէ, որ գոյություն ունի *ազգային տարազ* հասկացությունը:

Հագուստների փոփոխությունը, այլ հանգամանքներից զատ, մեծապես պայմանավորված է նաև ազդեցության գործոնով: Հայտնի է, որ մեր նախնիների տարազը նման էր իրանականին: Դա պատահական չէ, այլ արդյունք է այն սերտ առնչության, որ գոյություն ուներ հայ և իրանական ժողովուրդների միջև: Ուսումնասիրողները, ինչպես շատ հարցերում, այնպես էլ տարազի հարցում հակված են տեսնելու զուտ իրանական ազդեցություն[1]: Մենք սա վիճելի ենք համարում. այստեղ պետք է տեսնել փոխազդեցություն և ոչ թե միայն ազդեցություն /մանավանդ եթե ուրարտական շրջանն էլ դիտենք մեր ժողովրդի պատմության մի հատվածը, ապա անհերքելի է ուրարտական ազդեցությունը իրանական իրականության մի շարք կողմերի վրա/: Իհարկե, անվերապահորեն չպետք է մերժել և ազդեցության որոշ դրսևորումներ, որոնք ինքնըստինքյան հասկանալի են:



Տարազների մասին առաջին տեղեկությունները քաղում ենք հնագույն որմնանկարներից, մետաղադրամներից, արձաններից, իսկ ավելի ուշ` հայ մատենագրությունից ու պատմագրությունից: Հայկական տարազին վերաբերող լուրջ ու սպառիչ աշխատանք է Վ. Հացունու ուսումնասիրությունը, որտեղ Մխիթարյան հայրերին բնորոշ գիտականությամբ ու բծախնդրությամբ քննված է հայկական տարազը իր պատմական զարգացման գործընթացի մեջ` պատմական տարբեր ժամանակահատվածներում: Նա համեմատում համադրում է տարբեր ժամանակաշրջանների հագուստները, դրանց փոփոխությունները, տարազին վերաբերող նոր հասկացությունները, վերջիններիս հին համարժեքները /եթե կան/: Հեղինակը քննում է նաև հասարակության տարբեր խավերի /թագավոր, թագուհի, նախարարներ, դշխուհիներ, զորականներ, զինվորներ, քաղաքացիներ, կրոնավորներ/ հագուստները:

Բնականաբար, մեզ հետաքրքրում է տարազների անվանումների լեզվական քննությունը, որը Վ. Հացունու ուսումնասիրության խնդիրներից դուրս էր:

Նյութը քաղել ենք ինքնուրույն ու թարգմանական գրականությունից, հայկական համաբարբառներից ու գրաբարի բառարաններից:

Նկատենք, որ զգեստների անվանումներում այնպիսի հիմնական տարաբաժանում, ինչպես *տղամարդու զգեստ – կնոջ զգեստ*, հստակորեն չի արտահայտվում: Բազմաթիվ անվանումներ վերաբերում են թե՛ տղամարդու, թե՛ կնոջ հագուստին /թագ, գոտի, կոշիկ, արկանելի, վերարկու... և այլն/:Դրանց պատկանելությունը որոշվում է համատեքստից, որևէ նկարագրությամբ, որից և տեղեկություններ ենք ստանում տարբեր սեռերի մարդկանց հագուստների մանրամասների մասին:

Բերենք մեկ օրինակ. Բուզանդի մի վկայությամբ Հայր Սպարապետը, շրջելով Ներսես եպիսկոպոսի ենթակա գավառներում, բացականչում է. «Զիարդ զայսպիսի տեղիս կանանցահանդերձ մարդկան տուեալ է» /Բուզ., 97/: Այդ օրինակը հուշում է կանանց և հոգևորականների հագուստների նմանության մասին` հաշվի առնելով զգեստի երկարությունը: Բուզանդի Պատմության մեկ այլ

հատվածից ակնհայտ է դառնում կրոնավորների որոշ բարքերի դրսևորումը՝ պայմանավորված հատկապես նրանց հագուստներով. մի ոմն Զավեն «...ամենայն քահանայից ուսոյց առնել հանդերձ զինուորաց... զի ոչ ըստ կրօնիցն ագանէին քահանայքն զպճղնաւորսն, որպէս օրէն էր ի բնէ, այլ սկսան զխոտորկոտւսն ի վերայ ծնգացն ունել և զարդարէին զհանդերձս իւրեաց պէս պէս նարօտօք... և զմորթ մեռելոտիս գազանացն քահանայքն անխտիր ագանէին, որ ոչ վայել էր: Եւ ինքն Զավէն աթինեալս... և զկնգմենիս և զգայլենիս ագանէր» /223/:

Անդրադառնանք *արտահագուստ – ներքնահագուստ* հասկացություններին:

Բանական մարդը, երբ սկսել է հանդերձավորվել, սկզբնական շրջանում և թերևս երկար ժամանակ չէր տարբերում *ներքնահագուստ-արտահագուստ* հասկացությունը: Նրան պետք էր ծածկոց՝ բնության մեջ, կենցաղում, ռազմի դաշտում իր գործունեությունը իրականացնելու հարմարություն:

Հացունու վկայությամբ «Ներքին կտաւեղէնք, որ պաշտօն ունին պահել արտաքին ազնիւ զգեստները մարմնոյ աղտէն անծանօթ էին հնոց: Հոռվմեացիք ի սկզբան իրենց թիկնոցին ներքև ազդերաց սփածանելի մը ունէին, յետոյ առին յունական պարեգօտը և զայն կրկնեցին, մին ներքին իբրև շապիկ և միւսն արտաքին, զորս առին բիւզանդացի ազնուականք ալ: Մարմնոյ կտաւեղէնք ԺԶ դարուն ծանօթացան քաղաքակիրթ ժողովուրդոց, սկսելով, ինչպէս կերևի Գաղիայէն» /էջ 5/:

Մատենագրական որոշ տվյալներ կան, որոնք ակնարկում են *ներքին զգեստ-արտաքին զգեստ* տարբերակումը:

Օրինակ՝ *անդրավարտիք-վարտիք* բառերի առկայությունից ենթադրվում է առաջինի ներքնահագուստ լինելը՝ ստուգաբանական մեկնությամբ իրան. andar «ներս» - vart «ծածկ»: Այդ են հաստատում և որոշ օրինակներ. «Եւ արասցես նոցա անդրավարտիս կտաւիս, ծածկել զառականս մարմնոյ իւրեաց» /Ելք., ԻԸ, 42/: Ստուգաբանական իմաստից ելնելով՝ *շապիկ*-ը նույնպես կարելի է դիտել որպես ներքնազգեստ /միջ.պրս. šapik, պրս. šabi «գիշերազգեստ»/. «Որ հանէ ի քէն զբաճկոնն քո, մի՛ արգելուր ի նմանէ և վ.ապիկ լու» /Ղուկ., Զ, 29/: Մատենագրության տվյալներով *շապիկ*-ը նաև արտահագուստ է /տե՛ս Արմ., ՆՀԲ/: *Ներքնահագուստ* հասկացությունն են արտահայտում նաև *ներքնակ, վտաւակ,* *[illegible], սփածանելի* բառերը. «Զգեցուցես... Ահարոնի... զպարեգօտս պճղնաւորս ի վերայ ներքնակացն» /Ելք., ԻԹ, 5/: «Բազում անգամ և զներքնակ պատմուճանսն ի վեր քաշելով, եթէ որովայնն ստոյգ է՝ հարցափորձեն» /Փիլ., Բանք, 60/: «Զվտաւակն ի ներքոյ զգեստու իւրոյ» /ՆՀԲ/: «Էառ զսփածանելին և ածաւ զմիջով իւրով ի վերայ առականաց իւրոց ի ներքոյ զգեստու իւրոյ» /Վկ. արև., 163/: «Եւ գիտացին զի մերկ էին և կարեցին տերեւս թզենւոյ և արարին իւրեանց սփածանելիս» /Ծննդ., Գ, 7/:

*Շապիկ, սփածանելի, վտաւակ* որոշ համատեքստերում «ներքնահագուստ» իմաստը չունեն:

*Արտահագուստ* հասկացությունն արտահայտող բառերը հաճախ ունենում են *կրկին* բաղադրիչը. «Կրկնոց փոքրիկ առնէր ինձ» /ՆՀԲ/: «Ստանալ փափուկ ինչ հանդերձ բարակս և ողորկս և այծենիս կրկնաւորս» /ՆՀԲ/:

*Հագուստ* ընդհանրական հասկացությունը արտահայտում են հետևյալ բառերը՝ *տարազ, զգեստ, հանդերձ, ձորձք, ագանելիք, արկանելի.* «Պատուականքս առ մեզ զգեստուց և սակաւուց ագանելիք՝ հասարակաց նոցա է զգեստ» /Խոր., 223/: «Գձուձ հանդերձիւնք հասանիցէ առ իւր գերիսն» /Եմես., Ճառ., Է, 3/: «Ընկեցեալ զձորձ իւր՝ յարեաւ եկն առ Յիսուս» /ՆՀԲ/:

Այս խմբի բառերին բնորոշ իմաստով երբեմն հանդես է գալիս *ծածկոյթ*-ը. «Զգլխոյն և զոտիցն զօրութիւն ոչ ապականել օտարոտի ծածկութիցն զգեցմամբ» /ՆՀԲ/:

Հ.-ե. ծագում ունեն *ագանելի, զգեստ, հանդերձ* բառերը, *տարազ, արկանելի* բառերի համար ենթադրվում է իրանական ծագում, թեև բացառելի չէ *արկանել*-ի բնիկ հայերեն լինելու հանգամանքը:

Հագուստների ընդհանրական անվանումներից ամենահաճախականը *հանդերձ*-ն է: Ահա որոշ տվյալներ 5-րդ դարի ինքնուրույն գրականությունից /տվյալները քաղված են համաբարբառներից/:

Եզնիկը կիրառել է 4 անգամ, Բուզանդը՝ 13, Եղիշեն՝ 14, Խորենացին՝ 3, Փարպեցին՝ 8:

Ընդհանրական իմաստ ունի և *վերարկու* բառը՝ «զգեստ, վերնազգեստ, գլխի ծածկույթ» նրբիմաստներով. «Կին յորժամ բաց գլխով հանդիպի, վաղվաղակի վերարկու արկանէ գիսոցն» /ՆՀԲ/: «Զբաճկոն ընկերի քոյ... զի այն է վերարկու նորա» /ՆՀԲ/: Այս և այլ բազմաթիվ օրինակներից ակնհայտ է դառնում, որ *վերարկու* բառը պահել է իր ստուգաբանական իմաստը՝ «ի վերայ արկանել», այսինքն՝ ծածկույթ, շոր:

Հագուստների անվանումներ են նշում հետևյալ կազմությունները.

1. *Կենդանու անուն + ենի* /տվյալ կենդանու մորթուց պատրաստված հագուստ/՝ աղուեսենի, այծենի, առիւծենի, գայլենի, գառնենի, դուարենի, ոչխարենի, ուլենի, սամուրենի, օդի «ոչխար, գառ»-ից՝ օդենի... «Զսամուրենիս և զկնգմենիս և գայլենիս ագանէր» /ՆՀԲ/: «Ծածկեալ յաչս իշխանին դուարենի զգեստիւք ի հանդերձս ոչխարաց» /ՆՀԲ/: «Եւ զուլենիսն ագոյց ի բազուկս նորա և ի վերայ մերկոյ պարանոցի նորա» /ՆՀԲ/:

2. *Նյութ ցույց տվող գոյական + եղէն, եայ, ի.* ասուի, այծեայ, ասուեայ, խորդեղէն, մազեղէն, մաշկեղէն, բրդեայ, բրդեղէն, ստեւեղէն... «Զգոյշ լինիջիք հանդերձ քում. մազեղէնս և մաշկեղէնս եթէ կամիցիս ի ներքո ագանիջիր, թէ սգաւոր իցես» /Եւագր., 140/: «Խոշոր բրդեայ զգենուին » /ՆՀԲ/: «Զգեցաւ մազեղէն» /ՆՀԲ/: «Հանդերձ ստեւեղէն զգեցեալ էր Յովհաննէս» /ՆՀԲ/:

3. *Նյութի /կտորի/ անվանումը որպես հագուստի անվանում.* կտաւ, մորթ, ստեւ, սնդու, բուրդ, բեհեզ, կաճ, զզաթ... «Զգեցեալ էին ի տաճարին կտաւս մաքուրս» /ՆՀԲ/: «Ագանէր բեհեզս և ծիրանիս» /ՆՀԲ/: «Վասն էր Յովհաննէս ստև ուղտոյ զգենոյր» /Ոսկ., Ես., 180/:

4. *Կտավի, շորի գույնը որպես զգեստի անվանում.* «Կապուտակ և ծիրանի զգեցուցանեն նոցա» /ՆՀԲ/: «Զգեցեալ հիրս և կարմիրս» /Եզեկ., ԻԳ, 6/: *Հիր*-ը ըստ Աճառյանի վկայված է երեք անգամ: Համեմատելով հունարեն բնագրերի հետ՝ նա գտնում է, որ բառը ունի «հակնթագույն» իմաստը: Գ. Ջահուկյանը հավանական



համարում բառի ուրարտական ծագումը /Գ.Ջահուկյան, 1987, էջ 436/:

Անդրադառնանք հագուստների զանազան տեսակների անվանումներին և դրանց բառակազմական, իմաստային և ծագումնաբանական քննությանը:

1. *Գլխարկ*

Արդի հայերենում հաճախական *գլխարկ* բառը գրաբարում հազվադեպ է հանդիպում /վաղ շրջանից ՆՀԲ-ը վկայություն չի բերում/: Այդ հասկացությունը գրաբարում արտահայտվում է այլ բառերով՝ *գլուխ + այլ արմատ /կամ ածանց/* կաղապարով. *գլխանոց, գլխադիր, գլխապատ, գլխապան, գլխապահ*: Ահա մի քանի օրինակ. «Ծածկոյթն այն գլխադիր ինչ է» /ՆՀԲ/: «Գլխանոց ագուցեալ երկաթի» /Խոր., 35/: «Զգլխապատսն քակելով և զվարսն հարթելով» /ՆՀԲ/: *Գլխարկ* հասկացությունն են արտահայտում նաև *գլխոյ հանդերձ, գլխապինդ վարշամակ* կապակցությունները: Բացի վերոհիշյալներից կան նաև մի շարք բառեր, որոնք գլխարկի զանազան տեսակներ են /կամ գլխարկի մաս/: Ներկայացնենք դրանք համապատասխան օրինակներով:

*Աշխարաւանդ* «թագավորական թագի կապը». Բուզանդը վկայում է մեկ անգամ, որը բերում է և Արմ.-ը համապատասխան մեկնությամբ: Ակնհայտորեն իրանական փոխառություն է, որի երկրորդ բաղադրիչն է իրան. vand «կապ», իսկ առաջին բաղադրիչի ինկությունը պարզ չէ:

*Ապարօշ.* Արմ.-ը մեկնում է որպես «գլխին կապելու մի զարդ», ՆՀԲ-ը՝ «վարշամակ ազնիւ պատեալ զգլխոյն արանց կամ կանանց. կամար գլխոյ, խոյր, արտախուրակ»: Վկայված օրինակներից երևում է, որ բառը ավելի շատ «հագնելիք», քան «զարդ» իմաստն ունի. «Ապարօշ բեհեզեայս», «կապեաց ապարօշն ի ճակատ իւր» /ՆՀԲ/: Բառը հավանորեն իրանական ծագում ունի:

*Արտախոյր.* հանդիպում ենք Ագաթանգեղոսի երկում, որը և բերում է Արմ.-ը. «Զթագաւորս շքեղացուցանէ ի նմանութիւն արտախոյրն պսակի ի վերջաւորն փողփողելոյ»: Արմ.-ը մեկնում է «թագավորական թագ», որը և ճիշտ բացատրություն է: Աճառյանը, ենթադրելով բառի իրանական ծագումը, անբացատրելի է համա-

րում առաջին բաղադրիչը: Նորագույն փաստերով հաստատվում է բառի իրանական բնույթը /Բեյլի, Բենվենիստ/. ավելի համոզիչ է վերջինիս փաստարկը` իրան. rta-xauda «ուղիղ գլխարկ»[2]: Այս ստուգաբանությունը հավաստվում է նաև մի լրացուցիչ փաստարկով. «Անաբասիսի» հայերեն թարգմանության մեջ կա մի այսպիսի տող. «Միայն արքան ունի իրավունք գլխին ուղիղ տիարա խույր դնելու»[3]:

*Գազաբնաղաշն*. մատենագրության մեջ միակ վկայությունը բերում է ՆՀԲ-ը. «Որպէս զօրականացն սաղաւարտն, զոր ի հին արտաքնոցն կորբանն կոչեն, այսինքն` գազաբնաղաշն»: Բառի վկայության ժամանակաշրջանը ստույգ չէ:

*Գդակ/գտակ*. բառարանները նշում են «գլխարկ» իմաստը:

*Գլխադիր* «գլխաշոր, գլխի ծածկոց»:

*Թագ*. հանախական կիրառություն ունի «թագավորական թագ» նշանակությամբ. իրանական փոխառություն է:

*Խույր* /թագավորի, քահանայապետի, իշխանների գլխարկ/. «Զգեստաւորէ զնա թագաւորական զգեստու և դնէ խոյր ոսկի ընդելուզեալ մարգարտով» /ՆՀԲ/:

*Ծաղիար* /կանացի գլխարկ/. «Մի՛ ծամակալս ի ծամս, մի՛ տեռակալս և թաղիարս ի գլուխս» /ՆՀԲ/: Բառի առաջին բաղադրիչը` *թաղ*, նշանակում է «ծածկոց», նաև «գլխի ծածկոց» /երևի հիմնականում կանացի/: Ահա մեկ այլ վկայություն *թաղ* արմատով. «Եթէ քաղաքափ տեսանիցես զնա ժիշտն, քեզ թշնամանս համարիս զիրսն...» /Ոսկ., Պօղ., Ա, 835/: *Թաղաքափ* նշանակում է առանց գլխի ծածկույթի /տե՛ս ՀԱ, 1914,320/:

*Ծամակալ*. կրում են միայն կանայք:

*Կեղար/կիղար* «խույր». նվազ հաճախական է: ՆՀԲ-ը բերում է մեկ օրինակ: Հունարենից կատարված փոխառություն է:

*Կորբան* /տե՛ս Գազաբնաղաշն/:

*Միթր* «պսակ, խույր» /ունի և *միտր* գրությունը, որն ավելի ճիշտ է/. «Իբրև փեսայի եդի ինձ միտր... միտրն պսակ ինչ բոլորեալ... զոր դնեն փեսայք ի հարսանիս» /Ոսկ., Ես., 458/:

*Շարագոյր* «ծածկոց, քող». «Կանայքն իւրեանց ունէին գդականի`



ոսկեկալ շարագուրով դիպակի» /ՆՀԲ/: Թեև վկայությունը ուշ շրջանից է, սակայն որպես իրանական փոխառություն բառն ավելի հին ժամանակագրություն է ենթադրում /տե՛ս Հովհաննիսյան, 1990, էջ 255/:

*[illegible]* «վեղար, կրոնավորների գլխարկ». միջինհայերենյան շրջանում հին ֆրանսերենից կատարված փոխառություն է:

*Սաղավարտ* «երկաթե կամ պղնձե գլխարկ, նաև խույր». իրանական փոխառություն է:

*[illegible]* «կանացի գլխարկ, գլխաշոր». հունարենից կամ լատիներենից կատարված փոխառություն է:

*Վարսակալ*. հիմնականում տղամարդու գլխանոց է` ի տարբերություն ծամակալի. «Եկն դիպեցաւ սմա օտար պատանի մի... վարսակալ եղեալ ի գլուխ» /Բուզ., 226/: Բառի առաջին բաղադրիչը` *վարս*, իրանական է, բառը ամբողջությամբ` հայակազմություն:

Ուշագրավ է, որ *վարս, գէս, մազ, հեր* հոմանիշներից *հերակալ, մազակալ* կազմությունները բառարանները չեն ավանդում, իսկ *գիսակալ*-ով ՆՀԲ-ում մեկ օրինակ կա` հետգրաբարյան շրջանից: *Վարս*-ը գրաբարում առկայանում է հիմնականում հոգնակի ձևով, այսինքն` նշանակում է մազեր, մազափունջ, ինչպես և *ծամ*-ը:

*Քուսիթայ* /ըստ բառարանների կրոնավորների գլխարկ/. «Մազեղէն քուսիթայ եդ ի գլուխ» /ՆՀԲ/: Փոխառություն է ասորերենից:

*Տեռ, փաղան, քող* բառերը հիմնականում «շղարշ, երեսի քող» իմաստն ունեն, որոնք կարելի է և որոշ վերապահությամբ գլխանոց համարել:

*Գլխարկ պատրաստող* հասկացությունը գրաբարում արտահայտվում է հիմնականում *գոյ. + գործ, գոյ. + արար* կաղապարով /թագագործ, խույրագործ, խույրարար/: Այս կաղապարը չի գործում գլխարկի բոլոր անվանումների դեպքում /համենայնդեպս բառարանները չեն վկայում/, սակայն անկախ վկայությունից կաղապարը պետք է համարել ընդհանրական:

*Գլխարկ դնել* իմաստը արտահայտելու համար բայահիմք /բայարմատ/ + ել /ալ/ կաղապարը ըստ էության չի գործում: Թերևս միայն նշելի է *սաղավարտել* «սաղավարտ դնել»: Բառարանները նշում են երեք օրինակ, բոլորն էլ դերբայական ձևով:

*Թագեմ* «թագադրել. պսակել». վկայված է ուշ շրջանից:

Ավելի գործածական են *գոյ. + բայ* հարադրավոր կազմությունները. ածել /վարսակալ/, դնել /վարսակալ, թագ, խույր, սաղավարտ, միտր/, արկանել /գլխարկ, քող/, ագանել /գլխանոց/, կապել /թագ/: Ինչպես նկատելի է, ավելի տարածված է *գոյ. + դնել* կաղապարը:

2. *Կոշիկ*

Այս հասկացությունն արտահայտում են *կօշիկ, մոյկ, մուճակ, օղ, հողաթափ* բառերը: Առաջին երկուսը իրանական փոխառություններ են` վկայված 5-րդ դարից: Երկու տարբեր անվանումների առկայությունը ենթադրել է տալիս, որ դրանք նույն առարկայի տարբեր տեսակներ են, որը, սակայն, վկայված օրինակներից չի զգացվում, կամ էլ գործ ունենք փոխառության տարբեր սկզբնաղբյուրների կամ տարբեր ժամանակահատվածների հետ:

*Կօշիկ* գործածական է և արդի գրական արևելահայերենում, իսկ *մոյկ*-ը` արևմտահայերենում:

*Հողաթափ*. ՆՀԲ-ը մեկնում է «ազանելի ոտից ի կաշւոյ` որ և է ձևով. մոյկ, սանդալ, տրեխ, կօշիկ»: *Հողաթափ*-ը ըստ երևույթին կոշիկների տեսականու մեջ ամենահասարակն էր. «Հողաթափք իւրեանց հնացեալք և կարկատեալք» /ՆՀԲ/: Գրիգոր Տաթևացու մի վկայությամբ ևս հաստատվում է *կոշիկ*-ի և *հողաթափ*-ի տարբերությունը. «Նախ [Քրիստոս] առաքելոցն ասաց ունել հողաթափս և ոչ կօշիկս, ապա և ինքն ոչ զգեցաւ»[4]:

*Մուճակ* «կոշիկ» /ըստ երևույթին կանացի կոշիկ/ վկայված է միջին-հայերենյան փուլից, բայց պետք է համարել հին փոխառություն /մոյկ բառի հնչյունափոխված տարբերակն է, իսկ k-č հնչյունափոխությունը գործել է հին և միջին պարսկերենում/:



Ող «կոշիկ» ընիկ հայերեն բառ է` դարձյալ վկայված 5-րդ դարից. «Ոտս պնդեցեր զոտս դոցա» /ՆՀԲ/: Հետգրաբարյան [illegible] են` *սանդալ, ոտնաման, տրեխ, սոլ: Սանդալ*-ը թերևս [illegible] է եղել գրաբարում, մանավանդ որ Բուզանդը ունի *[illegible]* բառը: *Չմուշկ*-ը վկայված է մեկ անգամ` 13-րդ դարից

Խորենացին մեկ անգամ վկայել է *զգեստ ոտին* կապակցությունը. «Տայ և առնն քաջի և պատուականի Արգամայ զխոտ[illegible] գահն ... և կարմիր զգեստ միոյ ոտինն» /174/: ՆՀԲ-ը և ԱՄ-ը *զգեստ ոտին*-ը մեկնում են «կոշիկ»: Հ.Աճառյանը, հիմք ընդունելով Հացունու դիտարկումը, *զգեստ ոտին-ը* մեկնում է «կոշիկ [illegible]» /տե՛ս Արմ., *Զգենուլ* բառահոդվածը/:

Որպես կոշկի մասի անվանումներ գրաբարը վկայում է *ան[illegible], գարշապար, խրաց, կապիճ, կրուկ, ներբան, փոկ* բառերը. «Անկարուրդք կօշկաց նոցա և հողաթափք իւրեանց հնացեալք» /Յեսու, Բ, 5/: «Ոչ հատցին խրաց կօշկաց նոցա» /ՆՀԲ/: «[illegible] ներբան կոշկի նորա»: «Յորժամ զկօշիկսն ի թօյլս սեւութեան [illegible] ներկանիցէ, սրակտուցս, նեղագարշապարս և ի [illegible] սեւացեալս...» /Ոսկ., Պող., Ա, 68/:

*Կոշիկ հագնել* հասկացությունը արտահայտվում է *գոյ.+ագանել* հարադրությամբ /ագանել կօշիկ, հողաթափ, մոյկ/, *գոյ.+պնդել* /օղիւ պնդեցեր զոտ/:

*Կոշիկ հանել* հասկացությունը արտահայտվում է *գոյ.+լուծանել, գոյ.+հանել, գոյ.+զերծանել* կաղապարներով. «...և անց յայնկոյս, այնպէս զի և զկօշիկն անգամ ոչ եհան յոտիցն» /Վկ. արև., 185/: «Լոյծ զկօշիկս յոտից քոց, քանզի տեղիդ... սուրբ է» /[illegible]., պատմ./:

Հանդիպում է նաև *բոկանալ զկօշիկ* կապակցությունը. «Բոկանայր այր զկօշիկ իւր և տայր ցընկեր իւր» /Հռութ., Դ, 7/: *Կոշկակար* բառի հոմանիշային շարքի անդամներն են` *կարուակ, [illegible]*: *Դերձակ*-ը նույնպես գործածվում է այդ իմաստով:

*3. Զենոնց*

Այս ենթաբաժանմանը վերաբերող բառերը սակավաթիվ են և

հիմնականում կազմված են *ձեռք, բազուկ, դաստ, թաթ* բաղադրիչներով: Վաղ գրաբարյան վկայություններն ավելի սակավ են:

Հոմանիշներ են *բազկուրար, բազպան, ձեռնուրար* բառերը: *Բազպան*-ը ըստ ՆՀԲ-ի՝ «պահպանակ բազկանց՝ ամփոփիչ թեզանաց, սպաս եկեղեցական ազուցեալ ի բազուկս, որ երբեմն եպիսկոպոսաց էր սեպհական»:

Այս կարգի բառերը հիմնականում ուշգրաբարյան վկայություններ են: Բերենք օրինակներ. «Զայս ձեռնուրարս և բազպանս քահանայական՝ համարել ի սպասաւորութիւն սպասաւորաց քոց» /ՆՀԲ/: Վկայված է և *բազպան*-ի հունարեն համապատասխանակը՝ *եպիմանիկոս /եպիմիստիկոս/*. «Իսկ եպիմիստիկոսն /կամ եպիմանիկոսն/ զոր կոչեմք բազպանս... զի զսպեսցէ զձեռսն, և պատրաստ սպասաւորութեան արասցէ» /ՆՀԲ/: «Տացէ նմա զբազկուրարն՝ դնելով ի ձախ բազուկն» /ՆՀԲ/: «Զայս ձեռնուրարս, և բազպանս քահանայական» /ՆՀԲ/:

*Թաթպանը* վկայված է ԺԴ դարից. «Ի ձեռս իւր ազիցէ թաթպանս և քահանայապետական մատանին» /ՆՀԲ/:

*Թեզանիք*. ըստ ՆՀԲ-ի «երկար թև զգեստու, իբրև բազպան»: Վկայություն կա 5-րդ դարից:

ՆՀԲ-ը և ԱԲ-ը ունեն *ձեռէք* «ձեռնոց»: ՆՀԲ-ի եզակի վկայությունը Խորենացու պատմությունից է. «Եւ զգեցուցանողս իւր զձեռէս ի զաւակէ Քանանացւոց. և անուն կոչէ ազգին Գնթունիս» /Խոր., 110/:

Ստ. Մալխասյանցը մերժում է *ձեռէք/ձեռէս*-ի «ձեռնոց» իմաստը. *ձեռէս* համարում է հատուկ անուն և համապատասխան հատվածը թարգմանում «Իրեն զգեստներ հագցնող նշանակում է Ձեռեսին քանանացվոց սերնդից»[5]:

4. *Այլ կարգի հագուստներ*

Այս դասակարգման մեջ ընդգրկվող բառերը բազմաթիվ են, բազմաբնույթ՝ թե՛ բառակազմության, թե՛ հաճախականության, թե՛ ծագումնաբանական տեսանկյունից: Հագուստների շատ անվանումներ առկայանում են *մարմնի մաս* ցույց տվող բառ*+պան, անոց* կաղապարներով */անքանոց, թիկնանոց, լանջանոց, թիկնապահ, ունկապահ, կրծանոց, ուսանոց.../*: Քանի որ *մարմնի մաս* ցույց տվող բառերը հիմնականում հնդեվրոպական են, ապա կարելի է ենթադրել, որ վերոհիշյալ կազմությունները բնորոշ են եղել նախքան որոշ հագուստների անվանումներ փոխառելը:

Ներկայացնենք մի քանի հագուստների անվանումներ՝ ըստ հարկի որոշ դիտողություններով ու նկատառումներով:

*Աղաբողոն*. հունարեն փոխառություն է. «վերարկու, կրոնավորի կարճ զգեստ»: Վկայված է թարգմանական և ինքնուրույն գրականության մեջ: Բառը ունի նաև *անաղափ, անաբող, բողոն...* ձևերը:

*Ամղան* «պատմուճան, վերարկու». առաջին վկայությունը Աստվածաշնչից է. «Տեսի յաւարին ամղան մի նկարէն» /Յեսու., Է, 21/:

*Անակիտ* «կարճ պարեգոտ». մեկ անգամ վկայել է Բուզանդը. «Ագաւ նա պարէգօտ մի զոր անակիտս կոչեն» /152/: Համատեքստից հասկացվում է, որ բառը դիտվում է որպես օտար:

*Անամեստիոն* «քղամիդ». Դարձյալ եզակի վկայություն ունի, դարձյալ դիտվում է որպես օտար բառ /տե՛ս Արմ./:

*Առիզած* «ղենջակ, գոգնոց». «Ոչ զառիզածն ածել, ոչ քուրձ զգենուլ» /ՆՀԲ/: Բնիկ հայերեն բառ է[6]:

*Ասղնաքողոփ*. ՆՀԲ-ը մեկնում է «անշուք հանդերձ»: Վաղ գրաբարում ավանդված չէ: Հաճախական գործածություն չունի:

*Բաճկոն* «պատմուճան, վերարկու», կա և *բաճկոնակ*. «Որ հանէ զբաճկոն յաւուր ցրտոյ» /ՆՀԲ/: «Այր ողորմած պահեսցէ զգանձ իւր, իսկ որ անզգամն է զբաճկոնակս իւր դիցէ ի վերայ նորա» /Եւագր., 126/: Բառի ծագումն անհայտ է:

*Գիշտ* «աբեղայի հատուկ զգեստ». վկայված է ուշ շրջանից. ծագումը պարզ չէ:

*Գրատ* «զգեստ, վերարկու». հանդիպում են *գրատ, գրաստ, դրատ, դրաստ, դրատ* ձևերը: Ենթադրելի է իրանական ծագում:

*Գրգլի* «գնցոտի, հին զգեստ». բառի գոհացուցիչ ստուգաբանություն չկա:

*Գօտի*. հաճախական գործածություն ունի. «գօտիք ձեր ընդ մէջս և կօշիկք ձեր յոտս» /Ելք., ԺԲ, 11/: Բնիկ հայերեն բառ է[7]:

*Դիպակ* «գործվածք, հագուստ». «...զդիպակս և զճեղանակս. զեզրածիրանին և զմիջնածիրանին. զառտնին արկանելի և զերևելի լակոնացին» /Եսայ., Գ, 22-23/: Իրանական փոխառություն է:

*Դոտա*. վկայված է 11-13-րդ դդ. /Մագիստրոս, Լամբրոնացի/: Այդ վկայություններում մեջ էլ չեշտվում է օտար հագուստ լինելու հանգամանքը: Արաբերենից կատարված փոխառություն է:

*Եզրածիրանի*. /տե՛ս *Դիպակ*-ի օրինակը/:

*Եփուդ/եփուտ* «կարճ վերարկու, որ հագնում են ղևտական քահանաները». մի շարք վկայություններ կան Աստվածաշնչում: Օտար հասկացություն արտահայտող օտար բառ է:

*Ջանկապան* «ծնկները ծածկող հագուստ». «Արքն այնորիկ կապեցան պատմուճանօք և զանկապանօք» /ՆՀԲ/: Իրանական փոխառություն է:

*Ջունար* «գոտի». սեմական փոխառություն է, վկայված է մեկ անգամ. «Դնէին զդաստառակն կամ զզունարն /կամ զգօտին ի վերայ անձանց» /Արմ./:

*Թամբատեակ/թամբատոց* «ձորձ, ցնցոտի». ՆՀԲ-ը ենթադրում է «մինչև ազդրերը հասնող հագուստ»՝ նկատի ունենալով *թամբ* բառի նաև «ազդր» իմաստը: *Թամբ*-ը Արմատականում ստուգաբանված չէ: Ըստ Գ. Ջահուկյանի՝ այն հ.-ե. ծագում ունի[8]:

*Թիկնանոց, թիկնոց* «անթև վերարկու». «Թիկնանոց ամարայնի կտաւի» /ՆՀԲ/:

*Խլայ-խիլայ* «թանկարժեք զգեստ, գլխարկ, քող». «Ի բաց զերծեալ լինի հարսինն խլայն» /ՆՀԲ/: Ասորական փոխառություն է: Այս արմատն է *խլատեո* «կանանց բարակ քող», *խիլայել* «զգեստ նվիրելով պատվել» բառերում:

*Ծիրանի* «թանկարժեք զգեստ. հագնում են հիմնականում թագավորները». քանի որ բառը առնչվում է *ծիրան*-ին, ենթադրելի է կարմրավուն, դեղնավուն հագուստ, բայց գրաբարի բառարանները *ծիրանի* /ծիրանագույն/ մեկնում են նաև մանուշակագույն, կապույտ և այլն:

*Կամար* «գոտի». «Փոխանակ կամարին չուան գօտի» /Ոսկ., Պօղ., Ա, 69/: Իրանական փոխառություն է:



*Կորոր* «անթև, կարճ զգեստ». «...սիրէ ծածկել զմերկութիւն, սանձն և նորա հանդերձս անպաճոյճս... կողոպս ամարանի և թե-զանանորս ձմերանի...» /Եղիշ., Մատ., 159, ՄՀ, Ա, 931/:

*Հալաւ* «զգեստ, շապիկ». 5-րդ դ. վկայություն չկա: Գործածական է մի շարք բարբառներում:

*Մեկնոց* «վերարկու, թիկնոց»:

*Մենթան* /ուղղելի՝ նեմթան «կարճ հագուստ»/. վկայված է մեկ անգամ. «Անդ հանդերձ պաճուճեալք և ժամանակ մենթանաց» /Արմ./: Իրանական փոխառություն է:

*Նուարտան* «ծածկույթ». «Ծածկեցին զնա մազեղէն նուարտանաւ կապուտակաւ» /ՆՀԲ/: Արմատական բառարանում ստուգաբանված չէ. ակնհայտորեն իրանական փոխառություն է՝ ni-vart «ծածկոց»: Այդ արմատով առկա են այլ կազմություններ[9]:

*Շապիկ*. ըստ ՆՀԲ-ի «Ազանելի կտաւի ի վերայ մերկոյ մարմնոյն ի ներքուստ. և լայնաբար արկեալն նաև ի վերայ այլոց հանդերձից..»: Դատելով բառի ստուգաբանական իմաստից՝ [illegible] Š ab «գիշեր», պետք է ենթադրել, որ նախապես այն ունեցել է «գիշերանոց, ներքնազգեստ» իմաստը, և իմաստի լայնացումը կատարվել է հետագայում:

*Ուսանոց* «թիկնոց». վկայված է ուշ շրջանից:

*Ուրար* «եկեղեցականի ուսանոց, նաև աշխարհականի գոտի». հունական փոխառություն է. վկայությունները հիմնականում ուշ շրջանից են:

*Պատմուճան* «երկար զգեստ՝ տղամարդու և կնոջ». հաճախական կիրառություն ունի: Իրանական փոխառություն է:

*Պարեգօտ*. հաճախական կիրառություն ունի: Թեև Աճառյանը ենթադրում է իրանական ծագում /տե՛ս Արմ./, բայց այն կարող է լինել նաև հայակազմություն, մանավանդ եթե հավաստի է *գօտի* բառի հ.-ե. /բնիկ հայերեն/ ծագումը:

*Սփածանելի*. հավանորեն ներքնազգեստ է, այդ են վկայում և օրինակները. «Կարեցին տերևս թզենւոյ և արարին իւրեանց սփածանելիս» /ՆՀԲ/: «Եւ գիտացին զի մերկ էին և կարեցին իւրեանց սփածանելիս» /Ծննդ., Գ, 7/:

*Վակաս* «ուսանոց, թիկնոց, խույր, պսակ, թագ». բառիմաստի մանրամասն բացատրությունը տե՛ս Արմ.ում, ՆՀԲ-ում: Ծագումը պարզ չէ:

*Վարտիք*. ծագումնաբանորեն ենթադրում է «ծածկոց». ըստ Արմ.-ի «կէս մէջքից ցածր եղած զգեստ»:

*Վերարկու*. «արտահագուստ» ընդհանուր իմաստից զատ ունի նաև «անկողնու ծածկոց, կարպետ, գորգ, օթոց» իմաստները /ՆՀԲ/:

*Վտաւակ* «ներքնազգեստի տեսակ». «Եւ արասցես վտաւակս պճղնաւորս համակ կապուտակ» /Ելք., ԻԸ, 31/: Արմ.-ում ստուգաբանված չէ: Գ.Ջահուկյանը հնարավոր է համարում իրանական ծագումը /Ջահուկյան, 1987, էջ 558/:

*Տաբատ*. վկայված է մեկ անգամ. «Արարին զանդրաւարտիսն տաբատ ի նիւթոյ բեհեզոյ» /Ելք., ԼԹ, 27/:

*Տառատոկ* «զինվորական հագուստ». վկայված է Աստվածաշնչում. «Արար երկսայրի և եդ յաջոյ ազդեր իւրում ընդ տառատոկաւն» /Դատ., Գ, 16/:

*Տեռ* «կանացի ամառային վերնազգեստ». բնիկ հայերեն բառ է:

*Ցփսի* «այծի մորթուց հյուսված կոշտ կտոր». «Ոչ հանդերձ ասուեայ զգենոյր, այլ ցփսեայ» /Եւս., Պատմ., Բ, 25/: Ծագումը պարզ չէ:

*Փիլոն* «վերարկու, թիկնոց». հունարենից փոխառյալ բառ է:

*Քղամիդ* /ըստ Արմ.-ի «իշխանական վերարկու»/. «Դարձեալ առաջի Պիղատոսի... ագուցանէին նմա ծիրանի և արկանէին քղամիդ կարմիր» /Կոչ. ընծ., 250/: Փոխառություն է հունարենից:

*Քոթանակ* /ըստ ՆՀԲ-ի «կտաւի պատմուճան, շապիկ, բաճկոն, սփածանելի»/. Արմ.-ում ստուգաբանված չէ: Գ.Ջահուկյանը համարում է սեմական փոխառություն /Ջահուկյան, 1987, էջ 464/:

Քուրձ «կոպիտ զգեստ». բառի ծագումը ստույգ չէ:

Հագուստների անվանումների մեջ փոխառյալ շերտը ավելի ծավալուն է, քան բնիկ հայկականը: Բայց քանակական կողմը այս դեպքում չի արտացոլում բառախմբերի գործառական, որակական առանձնահատկությունները: Օրինակ՝ հունարենից անցած բառերը, որ քանակով ամենաշատն են, գործառական մի քանի տեսանկյունից տարբերվում են, ասենք, հայերեն բառերից կամ իրանական փոխառություններից: Առաջին՝ հունարենից անցած բառերի զգալի մասը մուտք է գործել թարգմանությունների միջոցով, և թարգմանիչը, չգտնելով համապատասխան հասկացության հայերեն անվանումը, այն թողնում է նույնությամբ, երկրորդ՝ հաճախ համատեքստում դրանք դիտվում են որպես օտար միավորներ, և տրվում են հայերեն համապատասխանակները, որոնք՝ գործ ունենք ոչ թե օտար բառի գործածության, այլ օտար բառարանային միավորի հետ, երրորդ՝ դրանց մի մասը վկայված է մեկ-երկու թարգմանական գործերում միայն, չորրորդ՝ հաճախական չեն, հինգերորդ՝ մի քանի բառեր վկայված են հետգրաբարյան շրջանից, հայերենի ոչ մի լեզվավիճակում այդ բառերի հաճախական կիրառություն չեն ունեցել:

Փաստորեն մի քանի տասնյակի հասնող հունարեն բառերից խոսակցական փոխառություններ կարելի է համարել միայն *աղաբողոն, միրր, սքեմ, փիլոն, քղամիդ* բառերը, սեմական փոխառություններից՝ *գուրպա, խանձարուր, տարազ:*

Ինչ վերաբերում է իրանական փոխառություններին, ապա բառերի գերակշիռ մասը արդեն գրաբարյան փուլից իսկ /հավանորեն դրանից էլ վաղ/ հայերենի բառապաշարի կայուն ու յուրացված շերտն էր:

Բառակազմական առումով առանձնանում են բնիկ հայերեն բառերը /մասամբ նաև իրանական փոխառությունները/, որոնցով ստեղծվում են նոր միավորներ:

* * *

* *

Բազմաթիվ վկայություններ կան հագուստների ձևերի, գույների և այլ առանձնահատկությունների մասին: Այդպիսիք նկատելի են վերը բերված օրինակներում:

Բերենք այլ կարգի օրինակներ /փակագծերում նշվածները մատենագրության մեջ վկայված են/:

*Աղաբողոն* /մեկնաւոր/, այծեայ /սեաւ/, *այծենի* /կրկնա-վերտ/, *արկանելի* /թիկնակերպ, սպիտակ, ճամուկ, քղանցաւոր/, *գօտի* /կտաւի, մաշկեղէն, չուան/, *զգեստ* /մազեայ, բրդեայ, ոտից, հրաշանկար/, *հանդերձ* /զձուձ, կապուտակ, ճաճանչաւոխտ, մա-զեղէն, ոսկեհուռ, պաճուճեալ/, *շապիկ* /նկարէն, դպրաց, սարկա-ւագաց/, *պատմուճան* /ներքնակ, պարսկական, ծաղկազգեստ, պայծառագոյն, մաշկեայ/:

*Հագուստ հագնել* իմաստը արտահայտվում է *ագուցանել, զգեցուցանել, զգեստաւորել, զգեստաւորեցուցանել* բառերով, նաև՝ ա/ հագուստ մատնանշող բառ + բայական վերջավորություն կա-ղապարով: Մեր նկատածներից են. *առիզածել /առիզածեալ/, զգե-նուլ, խանձարուրել, հանդերձել, շապկել, պատմուճանել, պատ-րուակել, սփածանել*...: *Գօտի* բառից կազմված **գօտել* բայական ձև չկա, կա *գօտեւորել*, նաև *պարեգօտել:*

բ/ Հագուստ մատնանշող բառ + բայ բառակապակցությամբ. *Ածել* /զառիզածն, զգօտի, զկամար, բեհեզ, վարսակալ, սփածա-նելի/, *ագանել* /կողոբ, կոշիկ, ուլենի, պատմուճան.../, *առնուլ* /թագ, ձորձ/, *զգենուլ* /քուրձ, պատմուճան, զգեստ, ձորձ, վարապանակ, ծիրանի/, *արկանել* /ծիրանի, կապիճ, ձորձ, հանդերձ, պատ-մուճան, կրկնոց, քուրձ/, *կապել* /վարտիք, պատմուճան, զան-կապան/...:

Ավելի բազմաբնույթ ու հաճախական են բառակապակցու-թյամբ արտահայտված կառույցները:

*Հագուստ հանել* իմաստը արտահայտում է *մերկանալ, լու-ծանել, հանել, թօթափել* բայերով. մերկանալ /զգեստ/, լուծանել /գօտի, կօշիկ/, հանել /բաճկոն, շապիկ/, թօթափել /արկանելի/:

* * *
* *

Բազմաթիվ բառեր հագուստի մասերի անվանումներ են:

*Ագոյց* «կապ», *ազբն* «գործելի կտավի սկզբի ծոպերը», *աստառ* «հագուստի հետևի կողմը դրած շոր» /վկայված է ուշ շրջանից/, *գրապան* «հագուստի վիզը, հագուստի եզրերը», *դրօշակ*



«զգեստի ծայրը», *դարձք* «երիզ», *թեզանի* «կտավի լայնքի թելերը», *[illegible]* «զգեստի երկար թևեր» /այս բառի հոմանիշներն են *[illegible]* և *ազդիր* բառերը, որոնք վկայված են միայն Երեմիա Մեղրեցու բառարանում /տե՛ս Արմ.//, *բլիփ* «օձիքի և գրպանի [illegible] ամրություն կամ զարդի համար կարված երիզ», *ժապաւէն* «զգեստի եզրի կարը», *ծոպ* «զգեստի ծայրի վերջի թելի փնջերը», *[illegible]* «զգեստի ծալք», որից *խորշաքաղ առնել* «շորերը ամփոփել», *[illegible]* «ծայր», *ստորոտ* «հանդերձի ներքևի կողմը», *տուտն* «հագուստի ծայրը», *քղանց* «հագուստի ծայրերը»:

Բերենք որոշ օրինակներ. «Եհատ զգոշակս հանդերձի [illegible]» /Եմես., Մեկն., 188/: «Եւ արասցես առ ստորոտով վտա-[illegible]» /Ելք., ԻԸ, 33/: «Ի վերայ չորեցունց տտնոց հանդերձից [illegible]» /ՆՀԲ/: «Իբրև զժապավէն պատմուճանի իմոյ շուրջ կալաւ [illegible]» /Յոբ., Լ, 18/: «Ունէր սա կողոբս առանց թեզանեաց» /ՆՀԲ/, «[illegible] բլիփն անկուած խիտ և հօծ» /ՆՀԲ/: «Խորշ ի գօտւոյ իջեալ՝ [illegible] և զսուրն ծածկէր» /ՆՀԲ/:

## *Ոստայնանկություն, ջուլհակագործություն*

Նպատակահարմար է այստեղ ներկայացնել ոստայնագոր-ծությանն առնչվող մի քանի անվանումներ:

Հին Հայաստանում այս բնագավառը զարգացման բարձր մակարդակ է ունեցել. այդ են վկայում պատմական տվյալները, և ինչպես նշում է Գ. Ջահուկյանը «*Հեն-ք, հենում, ոստայն, ստէծ, [illegible], շիւ, առէջ* բառերը խոսում են ոստայնանկության զար-գացած լինելու մասին» /1987, 263/: Այս բնագավառին վերաբերող որոշ բառերի անդրադարձել ենք այլ տեղերում /հագուստներ, [illegible] գործիքներ... և այլն/: Կրկնությունն այս դեպքում թերևս ներելի է, մանավանդ որ, ինչպես նշել ենք, շատ հաճախ միևնույն անվանումը կարելի է և պետք է ընդգրկել տարբեր դասա-կարգումներում՝ հաշվի առնելով հասկացությունների գործառա-կան յուրահատկությունները:

Ոստայնագործությանը վերաբերող բառերից են. *ազբն* «գոր-ծելիք կտավի ծոպերը», *ազբոց* «ջուլհակի սանր» *աղեղն* « բուրդ

կամ բամբակ զզելու գործիք», *աղեկատ/ աղէկատ* «մանելու գործիք», *անկուած* «հյուսվածք», *առէջ* «կտավի երկայնության ձգված թելերը», *ասեղն* /ասղանի/, *ղերձան, թեզան* «կտավի լայնքի թելերը», *թել, իլ, կայմ* «ոստայնի եղեգը», *կկոց* «մաքոք», *հոծիչ* «կտավի թելերը ամրացնելու գործիք», *ճախարակ, շաղամաք* «թել», *շիւ* «ջուլհակի ձեռքի փայտը» /վկայված է ուշ շրջանից/, *ոստայն, ստէծ* «ոստայնի կարճ ձող, որով գործվածքը շրջում կամ պրկում են», *ստորի* «գլան, որի վրա փաթաթվում է գործված կտավը», *վերստորի, տորգ*[10], *քող*:

Ոստայնագործությանը վերաբերող հետևյալ բառերը Արմ.-ում համարվում են բնիկ հայերեն. *ասեղն, հերիւն, հէն/ք/, հինել, ստորի* /կարելի է ավելացնել և *վերստորի*-ն/: Հ. Աճառյանը և Գ. Ջահուկյանը նշում են այս բնագավառին վերաբերող մի շարք բառեր, որոնք կարող են անցած լինել ուրարտերենից: Դրանք հիմնականում այն բառերն են, որոնց հ.-ե. ծագումը կամ այլ լեզուներից փոխառյալ լինելը ապացուցված չէ. *ազբն, առէջ, բարառ* /վկայված է ուշ շրջանից/, *գորգ, թել, իլ, ծոպ, կապերտ, կարժ* «թելի փաթեթ» /բառը ՆՀԲ-ում չկա/, *կծիկ, կկել, կար/ել/, հյուսել, մանել, շաղամար, ոստայն, ստէծ* /Ջահուկյան, 1987, 436/:

Աննպատակահարմար չենք համարում հայ թարգմանական գրականությունից բերել ոստայնանկությանը վերաբերող մի հատված. «Իսկ կանայք յորժամ ոստայն անկանիցեն և զկայմն ազբնգօքն բախիցեն և ինքեանք ևս կկոցօքն ընդհարկանիցեն և զայն չար խտիր համարին և դարձեալ յորժամ զթելն հոծչաւն հոծիցեն և ստեպ կկիցեն և ազբոցն և ստէծն ի ստեպ հեծելոյն ընդ միմեանս բախիցին և մանաւանդ ընդ կայմնն ևս և զայս առաւել խտիրս համարին» /Ոսկ., Պօղ., Ա, 806/:

## *Զարդեր*

*Հագուստ* իմաստային խմբի մեջ սովորաբար ներառվում են նաև զարդերը: Դա բնական է, քանի որ զարդերն էլ վերջին հաշվով հագուստի յուրօրինակ դրսևորումներ են: Զարդերի անվանումները մենք տալիս ենք առանձին ենթադասակարգմամբ՝ նախ բուն



հագուստներից որոշակիորեն տարբերելու, ապա զարդ ցույց տվող բառերի փոքրիշատե ամբողջական բառացանկը ներկայացնելու նպատակով:

Սակայն զարդերը, թերևս, երևան են եկել հագուստների հետ՝ կապված ոչ թե պճնանքի ու գեղագիտության, այլ սնոտիական արտահայտություն: Հետագայում արդեն հստականում է գեղեցիկի պաշտամունքը՝ դառնալով նաև դասակարգային /խավային/ տարբերակման արտահայտչամիջոց:

Գրաբար մատենագրության մեջ բազմաթիվ տեղեկություններ կան զարդերի անվանումների, դրանց օգտագործման, գույների, նպատակահարմարության մասին: Եթե բարձր խավի համար զարդերի բնույթն ու օգտագործման ձևը հասարակական դիրքորոշումը ամրագրելու յուրահատուկ ձև է, ապա քրիստոնեական ուսմունքի տեսանկյունից զարդարանքն ավելորդություն է: Ահա այսպիսի ուշագրավ մի հատված է ներկայացնում Ոսկեբերանը: Նա չափազանց պճնվելը բարոյական չի համարում. «Վասն այնորիկ յաճախագոյն իմն լինի մեղադիր Պաւղոս պաճուճանացն և կարի յարգէ զգածութիւն. զի ոչ մեծութեան ինչ նշանակ է այնչափ զարդ յանձին կապել, այլ ընդոդնելոց և պչրանաց: Եւ ոչ միայն զարդն, այլ և սնգոյրն և ծարիրն և ոտիցն ճեմելիք և կնչիւնք բարբառոյն, աչացն մեղմեղանք, արտևանացն ստէպ ստէպ քթթելիք, ամենայն ինչ հանգոյնք պոռնկաց: Նափորտունքն արձակեալք, պարեգօտքն լայնեալք, գօտիքն սեթևեթեալք, կօշիկքն պճնեալք» /Ոսկ., Պօղ.,Ա, 67/: Ըստ հեղինակի այսպիսին լինելը վայել չէ «կնոջ զարդնոյ»: Եսայու մեկնության մեջ մեկնաբանելով Եսայ.Գ. 19-20 հատվածը՝ նշում է նաև զարդերի գործառությունը. «Մահիկք՝ լուսնաձև իմն զարդ պարանոցացն են» /37/: «Քօղէք որ արմկանց վերոյ ... ապարանջան որ ի դաստակ ձեռացն» /ն.տ./:

Ոսկեբերանի մեկ այլ գործում այն միտքն է, թե ոսկի կրելը ավելի լավ է, քան երեսը շպարելը. սա նույնպես ժամանակի բարոյականության արտահայտություն է: Զարդերը նաև խորհրդանիշներ են. նկարագրելով հոգևորականի զարդերը՝ Փիլոն Եբրայեցին գրում է. «Ապա անկած լանջատեսիլ և ի վերայ սորայ, նշանակ երկնի. քանզի երկու քարինքն ի վերայ գլխոյ ուսոցն զմրխտին

պատուականագիտ են ...յերկոցունց կողմանց բոլորակք՝ ցոյցք են կիսագնդացն այնց՝ որոց է որ ընդ երկրաւ է, և որ ի վերայ երկրի» /Փիլ., Ճառ., 180/, կամ՝ «առ ստորին կողմամբ պճնաւորին կախէին ոսկի նռունք, զանգակք և ծաղկեալք, որք են նշանակ երկրի և ջրոյ. երկրի՝ ծաղկեայն...ի ջրոյ՝ ամենայն նռնաձեւքն ասացեալք...» /181-182/:

Որպես զարդեր օգտագործվել են թանկարժեք մետաղներ՝ *արծաթ, ոսկի:*

*Ոսկի* բառով գրաբարում առկա են բազմաթիվ կազմություններ, որոնք զարդի, զարդարանքի, թանկարժեք իրի իմաստով են գործածվում: Բերենք մի քանիսը. *ոսկեակն* «կարմիր հակինք, ոսկեգույն», *ոսկեբեւեռ* «ոսկեզօծ», *ոսկեգործ* «ոսկուց պատրաստած», *ոսկեզօտի, ոսկեզարդ, ոսկեզօծ, ոսկեթել* /հանդերձ/, *ոսկեկապարճ, ոսկեկմբեայ* /վահան/, *ոսկեկուռ* /զէն, խաչ/, *ոսկեհանդերձ, ոսկեհուռ, ոսկեղէն, ոսկեճամուկ* «զգեստ, նաև զարդ», *ոսկեման* /հիւս/, *ոսկենկար* /պաճուճանք, կտաւ/, *ոսկեպատեան, ոսկետուփ, ոսկի* /մանեակ, գինդ/:

*Ոսկի* բառի հաճախականությունը, բառակազմական կաղապարների ու ձևերի բազմազանությունը վկայում է, որ այն հավանորեն բնիկ հայերեն բառ է կամ էլ հայերենում գործածվել է շատ վաղուց: «Մետաղների անուններից բնիկ հնդեվրոպական է միայն *արծաթը: Ոսկի, պղինձ, արոյր, երկաթ, կապար, արճիճ, անագ* բառերը հայերենը ձեռք է բերել այլևայլ աղբյուրներից: Դրանք թերևս մասամբ /*ոսկի, երկաթ*/ եղել են նաև վաղնջահայերենում» /Ջահուկյան, 1987, 265/:

Հնում տարածված են եղել նաև զանազան թանկարժեք քարերով զարդերը՝ «*քար պատուականք*». «Քանզի առեալ ի մէնջ զառ ի փշոցն պսակ, եղ ի վերայ գլխոյ հաւատացելոց պսակ ի քարէ պատուականէ» /Աքանաս, 270/: «Մթերս ոսկւոյ և արծաթոյ և քարանց պատուականաց բազմացոյց» /Խոր., 72/:

Թանկարժեք քարերի տարբեր տեսակների անվանումների բազմաթիվ վկայություններ կան 5-րդ դարի ինքնուրույն և թարգմանական գրականության մեջ: Ահա մի քանի օրինակ. «...և ոչ *զմրուխտն և տպազիոնն* որ գայ ի հնդկաց» /Վկ. արև., 59/: «Ոչ



[illegible] զգեցեալ էիր և զմրուխտ և զտպազիովն ... և զշա[illegible] և զասպիսն և ոսկէքարն և զեղունգն և զբիւրեղեն... [illegible], Ի. 94/: Թանկարժեք քարերին վերաբերող մի տեղեկություն [illegible] Փիլոնից. «Կարգ քարանց եղիցի սարդիոն, տպազիոն, զմրուխտ... կարգն երկրորդ սուտակ և շափիղայ: Եւ շափիղայդ [illegible] ակն է և գծագրեալ է ի սուտակին Յուդա... » /Փիլ., Ճառ., [illegible]/

Ըստ ծագումնաբանության՝ զարդերի անվանումները ներկայացնում են հետևյալ պատկերը.

*ա/ Բնիկ հայերեն բառեր. ակն* «գոհար, թանկարժեք քար», *գինդ, զարդ, լանջազեղ, մատանի, եղունգն* /եղնգնաքար/, *ուլն* [illegible]/, *քար, օղ:*

*բ/ Իրանական փոխառություններ. աշխարաւանդ, ապարանջան, ապարօշ, ապիզակ, ապրիշում, բահուանդ, գորշապահանգ,* [illegible]*, կարկեհան, ճամբար* «մանյակ», *ճամուկ* «զգեստի զարդ», *ճիտակ* «մարգարտյա զարդ», *մեհեւանդ* «կանացի զարդ», *պախծաւանդ, սնգոյր* «երեսի ներկ»:

*Աշխարաւանդ* «թագավորական թագի կապը», *ապիզակ,* «կրծքի վրա կապելու իշխանական զարդ», *բահուանդ* կանացի զարդ», *պախծաւանդ* «գոտու զարդ» բառերը վկայված են մեկական անգամ. *ապարօշ* «գլխի զարդ» նույնպես հաճախական չէ, և [illegible] Արմ.-ի չորս անգամ գործածվում է միայն Աստվածաշնչում:

Ընդհանրապես, հաշվի առնելով իրանական այս փոխառությունների գործառական և համատեքստային յուրահատկությունները, կարող ենք նշել, որ իրանական ծագում ունեցող զարդանունները հաճախական չեն եղել ժողովրդախոսակցական լեզվում կամ չեն կիրառվել, կամ ունեցել են տարածքային /բարբառային/ սահմանափակություն: Այս բառերի մեծագույն մասը գրքային է՝ ավանդված հիմնականում Սուրբ Գրքում կամ թարգմանական այլ գործերում, երբ հունարենի համապատասխան բառը հայ թարգմանիչը ներկայացրել է իրեն ծանոթ իրանական համապատասխանակով:

Կարելի է կարծել նաև, որ այդ կարգի բառերը /հասկացությունները/ ծանոթ են եղել միայն բարձր խավի ներկայացուցիչներին:

գ/ *Հունական փոխառություններ. աղամանդ, ակաթ, ամեթոսխ* /սուտակ/, *բիւրեղ, էլեկտրիոն* «դեղին սաթ», *եմատիտես, կորաղիոն, հորմա, մանեակ, մարգարիտ, յակինթ, ոփիտես, որմիսկ, սարդիոն, տպազիոն:*

*Եմատիտես, կորաղիոն, հորմա, ոփիտես, որմիսկ* գործածված են մեկական անգամ:

Ըստ էության բացի *մարգարիտ, աղամանդ* բառերից, մյուս բոլորը հայերեն են մուտք գործել թարգմանական գրականության միջոցով՝ որպես օտար հասկացություններ:

*Մարգարիտ* հայերենում վկայված է նախագրային շրջանից. հիշենք Խորենացուն. «Տեղ ոսկի տեղայր ի փեսայութեանն Արտաշիսի, տեղայր մարգարիտ ի հարսնութեան Սաթինկանն» /2, Ծ/:

*Ասորական փոխառություններ* քիչ կան՝ *թարշիս, ծարիր, շափիղայ:*

Մի շարք զարդանունների ծագումը պարզ չէ. *զարգմանակ* «խույրի կամ սաղավարտի զարդ» բառը մեկ անգամ գործածել է Բուզանդը: *Գոճազմ* «ազնիվ քար», *զմրուխտ, ճեղանակ* «զգեստի զարդ», *սուտակ, փողոշուկ* «կանացի գլխազարդ», *քայռ* «մանյակ»:

## ՆՀԲ-ՈՒՄ ՉՎԿԱՅՎԱԾ ԲԱՌԵՐ

Հագուստ, զարդարանք մատնանշող բառերը հիմնականում բառարանագրված են և մասամբ ստուգաբանված: Սակայն մի շարք բառեր տեղ չեն գտել ՆՀԲ-ում: Ստորև ներկայացնենք այդ կարգի բառերը: Այն բառերը, որոնք Արմ.-ում կան, բնագրային օրինակներով չենք ներկայացնի. *աղէմ* «ներկած կաշի», *ամարանոց* «գլխազարդ», *անամեստիոն* «արքայական ծիրանի», *աշխարաւանդ* «թագավորական թագի կապը», *եռակօթ* «զարդեղենի տեսակ», *գունար* «գոտի», *կարանոն* «մակեդոնական զգեստի տեսակ», *ճամբար* «վարսակալ», *մովկ* «վարտիք», *պարեհնակ*



«[illegible]», *պոռփիւռիկոն* «ծիրանի», *սնդր* «թիկնոց», *ստիխարին* «[illegible] զգեստ», *սփենդոն* «մատանու մաս», *տռիքուն* «[illegible] հանդերձ», *փարուազ* «ժապավեն»:

*Այծազգեստ, այծեղէն* «այծի մորթուց կամ մազերից պատրաստված զգեստ». «Եւ այնպէս իւր այծազգեստ հանդերձիւն, [illegible] ի բագաւորական գահոյս» /Ն.Բիւզ./, «Սրապիոնի եպիսկոպոսի տուր զմիւս նս մաշկեակն և դուք կալջիք առ ձեզ զայծեղէն [illegible]» /Ն.Բիւզ./:

*Գայռ* «վզնոց». «Իսկ վասն արծաթսիրութեան՝ որպէս կամել և ախորժ է զայռ փափկասուն արանց» /Հիշատ., Ե-ԺԲ, 246/:

*Գզլէն* «հնամաշ հագուստ». «Եւ զգեցեալ մազեղէն խոշոր և [illegible] պատառոտունս՝ զնայր» /Օրբ., Պատմ., 242/:

*Զատափոկ* «կաշվից պատրաստված հագուստ՝ ծածկոց». «[illegible] դարձեալ զարդարեալ զստափոկով» /Թովմ., Դան., 118/:

*Խալամաճ, խլնանոց* «հագուստի մաս, որտեղ դնում են [illegible], կամ հագուստին ամրացված կտոր, որը թաշկինակի [illegible] կատարում». «Հանդերձս մեծապայծառս յարինէք և ընդ [illegible] խալամաճս և խլնանոցս արարեալ կազմել» / Փարպ., ԲՄ, 1973, 15/:

*Կորաղիոն* «թանկարժեք քար՝ բուստ». «Եւ զծովուն Մեծի [illegible] ջուրցն աղիութեան եւ զպատուական եւ զծանրագին [illegible], որ անուանեալ կոչի կորաղիոն» /Բրսղ, 242-243/:

*Կրկնոցակ* «կարճ արտահագուստ, վերարկու». «Մեկնահան[illegible] էր և կրկնոցակ մի զիւրեաւ ունէր» /Կոչ. ընծ., 258/:

Հալաւ «ներքնազգեստ». «Զքո զաւրացն զգիշահոտ հալաւն [illegible] պարհնաքաթախ հանդերձսն լուանալ տուաք և ազաք» /ՄՀ, Ե, 1091/:

*Մեկնակ* «թիկնոց». «Թէ կամին՝ մեկնակս զգենուլ մարթ է» /[illegible]., Մատ., 84/:

*Նափորտակ* «փոքր վերարկու». «Բէհեզ նափորտակ և ոսկի [illegible]» /Մխ.Այր., 115/:

*Ուսանոցակ* «ուսերը ծածկող կանացի հագուստ». «Եւ հանէր [illegible] զուսանոցակն զոր ունէր» /Ն.Բիւզ./:

*Քրձակ* «փոքրիկ քուրձ՝ այծի մորթուց պատրաստված հագուստ». «Եթէ մաշկեակ է և եթէ քրձակ, առ ի նմանէ» /Վարք հրճց, Բ, 512/:

*Օղառէջ* «բարակ մանվածք, թել». «Եւ ումեմն գործ՝ օղառէջ մանելով նիւթ նուրբ՝ զտուրեւառ շնչոյ կենցաղոյս» /Պիսիդ, 270/:

## ԾԱՆՈԹԱԳՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ


1. Տե՛ս Հ. Վարդան վ. Հացունի, Պատմութիւն հին հայ տարազին, Վենետիկ, 1923:
2. Տե՛ս Transactions of the Philological Society. London, 1945, էջ 69:
3. Քսենոփոն, Անաբասիս, Ե., 1970, էջ 53:
4. Սուրբ Գիրքը Տաթևացի, Մեկնութիւն Յովհաննու աւետարանին, աշխատասիրությամբ՝ Ղուկաս աբեղա Զաքարյանի, Մայր Աթոռ Սուրբ Էջմիածին, 2005թ., էջ 92:
5. Տե՛ս Մովսես Խորենացի, Հայոց պատմություն, աշխարհաբար թարգմ. և մեկնաբանությունները Ստ.Մալխասյանի, Ե., 1981թ., էջ 123, նաև ծան. 118/:
6. Տե՛ս Է.Աղայան, Բառաքննական և ստուգաբանական հետազոտություններ, Ե., 1974թ., էջ 48-49:
7. Տե՛ս Է.Աղայան, նշվ. աշխ., էջ 48,49:
8. Տե՛ս Գ.Ջահուկյան, Հայոց լեզվի պատմություն, Ե., 1987թ., էջ 153:
9. Տե՛ս Լ. Հովհաննիսյան, Հայերենի իրանական փոխառությունները, Ե., 1990թ., էջ 255:
10. Միակ վկայությունը ըստ Արմ.-ի Բարսեղ Կեսարացուց է և նշանակում է «սարդի ոստայնի հյուսքը»: Անառյանը իրավացիորեն գտնում է, որ նախնական իմաստը պետք է համարել «ոստայնանկի փայտեայ կազմած, ոստայն, որ յետոյ փոխաբերաբար անցել է սարդի ոստայնին» /Տե՛ս Արմ., *Sորգ* բառահոդվածը/:




## ԳԼՈՒԽ ԵՐՐՈՐԴ

## ԿԵՆՑԱՂԱՅԻՆ ԻՐԵՐ, ՍՊԱՍՔ, ԳՈՐԾԻՔՆԵՐ

Գրաբար մատենագրության մեջ ավանդված բազմաթիվ իրերի, առարկաների, գործիքների անվանումները կարելի է ներկայացնել տարբեր խմբավորումներով ու դասակարգումներով:

Սովորաբար, այս կամ այն խմբում ներառվող բառերը, բառակապակցությունները, վերջիններիս արտահայտած հասկացությունները ժամանակի ընթացքում փոխվում են, և ժամանակային տարբեր կտրվածքներում առկայանում են ձևաիմաստային, բովանդակային յուրահատկություններով: Հասկանալի է, որ գրաբարի մատենագրության մեջ ավանդված բառերն էլ /գոնե զգալի չափով/ իմաստային-բովանդակային տեսանկյունից որոշ տարբերություններ են դրսևորում արդի հայերենի համապատասխան լեզվի միավորներից:

Նպատակահարմար ենք գտնում նյութը ներկայացնել հետևյալ դասակարգումներով:

### 1. ԱՄԱՆԵՂԵՆ

Այս խմբի համար ընդհանրական անվանումներ են *աման, անօթ. ապա* բառերը:

Ի տարբերություն արդի հայերենի՝ *գոյ.+աման* կաղապարը /ջրաման, թեյաման.../ գրաբարում հաճախական չէ: Կան միայն հատուկենտ կազմություններ՝ *խնկաման, գինեման...:* Այս բառերով եզակի օրինակներ է բերում ՆՀԲ-ը: Հազվադեպ են և *աման* հասկացությունն արտահայտող *գոյ.+արան* կազմությունները. բնագրերը վկայում են *խնկարան* բառը. «Բերին... խնկարանս ոսկեղէնս» /Բ. Մնաց., ԻԴ, 14/:

Ավելի մասնակի նշանակությամբ *աման, անօթ* հասկացություններ են արտահայտում հետևյալ բառերը:

*Ազանովք.* ՆՀԲ-ը մեկնում է «աման հեղանիւթից» և բերում մեկ վկայություն Աստվածաշնչից՝ նկատելով, որ այլ տեղերում օգտագործվում է *բակոյկ, խառնելիք*: Բառը եբրայական բնագրում հոգնակիի ձևն է, որը հունարեն տառադարձությամբ գործածել է հայ թարգմանիչը:

*Ապակի.* ըստ ՆՀԲ-ի «նիւթ թափանցիկ և փայլուն... և ամենայն անօթ կամ հայելի կազմեալ»: Բառարանը նշում է և «բաժակ» իմաստը՝ բերելով մի շարք օրինակներ: Բառն իրանական փոխառություն է և գրաբարում հաճախական գործածություն ունի. այդ արմատով կազմված են մի շարք բառեր՝ *ապակագործութիւն, ապակատարագ, ապակեղէն* և այլն: Հավանորեն *ապակի* «աման» իմաստը հայերենին է անցել փոխատու լեզվից: Բացառելի չպետք է համարել, որ իմաստային որոշ նրբերանգներ ձեռք են բերվել միայն հայերենում:

*Ափսէ.* ՆՀԲ-ը մեկնում է «տաշտ, սկաւառակ, պնակ, դաշխուրան», Արմ.-ը՝ «մետաղեայ սկաւառակ»: Թեև բնագրային օրինակներում մեծ մասամբ շեշտվում է որևէ մետաղից պատրաստված լինելը, սակայն, անվերապահորեն *ափսե*-ի միայն մետաղից պատրաստված լինելը, թվում է, ճիշտ չէ, մանավանդ որ բնագրային որոշ օրինակներում նյութի անվանումը չկա. հմմտ. «Եւ ի վերայ զառաջաւորի սեղանոյն արկցեն հանդերձ համակ ծիրանի եւ զափսէսն եւ զտուփս...» /Թիւք. Դ, 7/:

*Խան* «ափսե, սինի». «Պան մի բաղարջ ի խանէն», «զմիսն եդ ի վերայ խանին» /ՆՀԲ/:

*Մաղզմայ* «սկավառակ, ափսե». բառը մասնավորապես օգտագործվում է «եկեղեցու կամ տաճարի ափսե» նշանակությամբ: Բառարանները վկայում են բազմաթիվ օրինակներ: Բառը հավանորեն ասորական փոխառություն է. այդ բառով այլ կազմություններ չկան:

*Պնակ* «կերակրի ափսե», նաև «գավաթ, բաժակ». Որպես բառակազմական բաղադրիչ առկայնում է *պնակածեւ* բառում:

*Պոյտն* «աման, կաթսա». «զարգանակն արկ ի պոյտն» /ՆՀԲ/: Այս արմատից են *պուտուկ, պիտուկ, պտեկ* նաև *պուտնարդ* «տաշտ, կաթսա»: Բնիկ հայերեն արմատ է[1]:



*Սկաւառակ* «կերակրի աման». « Սկաւառակքն խորտկացն Սպանակք էին և ճաշակքն խրախճանութեան» /ՆՀԲ/: Իրանական փոխառություն է և ունի հաճախական կիրառություն:

*Սկուտեղ* «ափսե, պնակ». հաճախական կիրառություն ունի: Համարվում է լատիներենից կատարված փոխառություն:

*Տապակ* «կաթսա». իրանական լեզուներից փոխառյալ բառ է:

*Աման, անօթ* հասկացություններն արտահայտող բառերի շարքում մեծ թիվ են կազմում *ջրի, հեղուկի աման* ցույց տվող բառերը. այդ կարգի բառերից են և վերը նշված *ազանովք, պոյտն, պնակ*...

Ստորև այբբենական կարգով ներկայացնենք այն բառերը, որոնք ունեն հիմնականում «ջրի, հեղուկի աման»-ի նշանակությունը, թեև հնում, ինչպես և այժմ, *հեղուկ* և *ոչ հեղուկ* մարմինների ամանների սահմանազատումը ինչ-որ տեղ պայմանական է:

*Ագուգայք* «ջրի փողրակ», *ապաղարէ* «մետաղյա աման», *ապողայ* «տիկ», *ամարասակովք* «ջրաման», *ապփովք* «կոնք», *բաժակ, բաժակակալ, գաւաթ, գինեման, դաշխուրան, տաշտ, դոյլ, դորակ* «հեղուկի չափ», *ըմպակ, ըմպանակ, թակոյկ* «ջրի, գինու մեծ աման», *թաս, լական* «կոնք», *լուացարան, ժամանոց* «բաժակ», *խառնարան* «բաժակ», *խառնելի* « թակույկ», *խաւեակ* «փոքր սափոր», *կահոյր* «սափոր», *կաղամար* «թանաքաման», *կամխակ* «յուղի աման», կարաս, կթղայ «բաժակ, գավաթ», *կոնք* «գոգավոր մեծ աման», *կուժ, հազաղակ* «գինու աման», *ծագար, ծաշակ* «բաժակ, աման», *մեսուր* «ջրաման», *նուագ* «բաժակ», *հոյր* «կոնք», *նուիրակ* «բաժակ», *նուիրանոց* «հեղուկի աման», *ամանուացք* «կոնք», *պատժանակ* «բաժակ», *սափոր, սիտղ* «դույլ», *սկահ /սկի, սկիհ/* «մեծ բաժակ», «բաժակ», *սրուակ* «յուղի շիշ», *սառման* «սափոր», *տակառ, տաշտ* «բաժակ, գավաթ», *տիկ, բաս* «փարչ»:

«Ջրաման, հեղուկների աման» նշանակող բառերը կարելի է տարբերակել հաճախականության, վկայության ժամանակագրության, գործառության շրջանակների ու հայերենում բառիմաստների յուրացված լինելու տեսանկյունից:

*Թաս, կթղա, կաղամար, սիտղ* վաղ գրաբարում ավանդված չեն: *Լական*-ը նույնպես հազվադեպ հանդիպող բառ է. ՆՀԲ-ը այն համարում է ռամկական:

*Նգոյր* բառի իմաստի հավաստիությունը կասկածելի է /ըստ Արմ.-ի՝ «կոնք» կամ «ման»/: *Ապուղայ, խաւեակ, կահոյր, հաղաղակ* վկայված են մեկական անգամ: *Մեսուր* թեև երեք կիրառություն ունի, բայց նույն բնագրի նույն հատվածում է: *Խաւեակ* վկայել է միայն Ոսկեբերանը: «Ուր գործիցեն տասն լուծք եզանց, եղիցի անդ խաւեակ մի» /Ոսկ., Ես., 52/: Աստվածաշնչի Մարգարէութիւն Եսայեայ գրքի համապատասխան հատվածում կարդում ենք. «Զի ուր գործիցեն տասն լուծք եզան, եղիցի անդ սափոր մի» /Եսայ., Ե, 10/: *Ապաղարէ, մեսուր* բառերը, ըստ էության, վկայել է միայն Շիրակացին:

«Հեղուկների աման» ենթախմբի բառերի ծագումնաբանական քննությունը ցույց է տալիս, որ փոխառյալ միավորները ավելի շատ են: Աճառյանը նկատում է, որ «Հնդեվրոպական շրջանից երկու բառ միայն ունինք հայերենի մեջ ամանեղենի համար, մեկը աման բառն է, երկրորդը՝ «տիկ»[2]: Հետաճառյանական ուսումնասիրություններում, հատկապես Գ.Ջահուկյանի՝ հայերենի և հնդեվրոպական մի շարք լեզուներին վերաբերող հետազոտություններում այդ թիվը փոքր-ինչ մեծ է, մանավանդ եթե հաշվի առնենք բաղադրիչների հ.-ե. բնույթը. *գինեման, ըմպանակ, լուացարան, ծագար, տիկ, ոտնալուացք, պոյտն...:*

*Ասորական փոխառություններ.* ագուգայ, ապուղայ, կթղայ, սկահ:

*Հունական փոխառություններ.* լական, կաղամար, կոնք, կամփսակ, ստոման /սիտղ-ը համարվում է լատիներենից կատարված փոխառություն, բայց բացառված չէ հունարենի միջնորդությունը/:

*Իրանական փոխառություններ.* ապակի, ապաղարէ, բաժակ, գաւաթ, դաշխուրան, դոյլ, դորակ, թակոյկ, թաս, կուժ, նուագ, սրուակ, տակառ, տաշտ, քաս:



*Երրայական ծագում* ունեն ամարասակովք, ապփովք բառերը, որոնք մեկական անգամ գործածված են Աստվածաշնչում /Երեմ., ԾԲ, 19/:

Մի շարք բառերի համար ենթադրվում է *ուրարտական ծագում.* անոթ, գուշ, խաւեակ, խուփն, խբարդեայ, խեցի, կճուճ, կուր, հաղաղակ, մեսուր.../Ջահուկյան, 1987, 436/:

Ինչպես նկատելի է, բառերի հաճախականության, գործածության ժամանակային սահմանների ընդգրկունության, իմաստային յուրացման տեսանկյունից կարևորվում են իրանական ծագում ունեցող բառերը:

«Ամանեղեն» նշանակող բառերի զգալի մասը ճաշին, ուտելիքին առնչվող անվանումներ են, որոնք կարելի է ներկայացնել հոմանիշային խմբերով: Անդրադառնանք հետևյալ հոմանիշային շարքին. *կաքսայ* - ասորական փոխառություն է: *Սան*-ը Արմատական բառարանում ստուգաբանված չէ: Թերևս հավաստի պետք է համարել ուրարտական բնույթը[3]: *Պոյտն* – ըստ Արմ.-ի «պտուկ, հողե աման» , ըստ ՆՀԲ-ի՝ «կաքսայ, սան»: «Եփէին ի պուտան», «պարգանակ արկ ի պոյտն» /ՆՀԲ/:

Նշենք նաև *գղալ, տարգալ, շերեփ* հոմանիշային շարքը: *Գղալ*-ը գրաբարյան բառարանները չեն նշում. այն, ինչպես և բարբառային այլ ձևեր հավանորեն առաջացել են *տարգալ*-ից: *Տարգալ*-ը բնիկ հայերեն բառ է, առաջին վկայությունը 5-րդ դարից. «Տարգալ ունի ոսկի և պատառաքաղ» /Խոր., 174/, հաճախական կիրառություն չունի ինչպես հինգերորդ, այնպես էլ հետագա դարերում: *Շերեփ*-ը վաղ գրաբարում վկայված չէ, բառի ծագումն էլ ստույգ չէ: *Մսահան, պատառաքաղ, շամփուր, հանելի, հրաւանդ* նույնպես ճաշին առնչվող իրեր են:

Նորագյուտ Մնացորդաց գիրքը հիշյալ բառերով մի ուշագրավ օրինակ ունի. «...զհրաւանդսն, և զհանելիսն, և զկաքսայն և զմսահանսն և զամենայն զկահ» /Բ, 16/: Զոհրապյան հրատարակության մեջ այս հատվածը մի քիչ այլ է. «...զկասկարայս, զբառնալիս, և զսանս և զմսահանսն»: Հիշյալ երկու վկայություններում ակնհայտ հոմանիշներ են՝ *հրաւանդ-կասկարայ, հանելի -բառնա-*

*լի* զույգերը: Զույգերի անդամներից մեկը թերևս բարբառային տարբերակ է:

## ԱՅԼ ԿԱՐԳԻ ԱՄԱՆԵՂԵՆ

Այս ենթադասակարգմամբ կներկայացնենք այն բառերը, որոնք *պայուսակ, արկղ, տոպրակ* և նման կարգի առարկաների անվանումներ են՝ իմաստային զանազան նրբերանգներով:

*Արգոր* «քուրձ, տոպրակ», *արկղ, բակեղք* «պարկ», *գանձանակ* «գանձարան, դրամարկղ», *զզրոց* «արկղ, տուփ», *զամբիւղ, խբարղեայ* «տուփ, խնկաման», *կայք, կեղք* «կողով», *կողոբ* «կողով, տուփ» /*կողոբ* բառը գրաբարի բառարաններում հազուադեպ տեսակ է, իսկ հետևյալ վկայության մեջ ունի «արկղ, տուփ» իմաստը. «Կողոբս արծաթիս արարեալ՝ եդին ի նմա զնշխարս սրբոյն» /Օրբ., Պատմ., 265//, *շագոյր* «պայուսակ», *շալակ* «տոպրակ», *մախաղ, շմբրոց* «պարկ», *ոճ, որք* «կողով», *սփիրդ, սփիւրիդ* «զամբյուղ», *տապան* «արկղ», *տառաղան* «կթոց, կողով», *տոպրակ, տուփ, փիւրիդ* «զամբյուղ», *քսակ, քուրձ* «մազեղենից պատրաստված արկղ»:

Այս բառերից *արգոր, բակեղք, թափուտ, խբարղեայ, շագոյր, շմբրոց* նվազ հաճախական են: *Արգոր*-ը գործածված է Աստվածաշնչի նույն հատվածում երեք անգամ. այլ գործերում այն չի հանդիպում: *Շագոյր*-ը վկայել է մեկ հեղինակ՝ երկու անգամ. ընդ որում ՆՀԲ-ում վերջինս չկա, բառը կա Արմ.-ում, վկայությունը՝ Սեբեոսից:

*Կայք*-ը վկայված է 5-րդ դարից. «Եւ առ երկերիւր նկանակ և հինգ արղու փոխնդոյ և կայք մի չամիչ եդ ի վերայ իշոց» /Ա. Թագ., ԻԵ, 18/[4]:

Այս ենթախմբի մեջ բնիկ հայերեն բառեր չկան. եթե *որք* «կողով» առնչվում է *որք* «խաղողի ճյուղ»-ին, այս դեպքում այն բնիկ հայերեն պետք է համարել: Հայակազմություններ են *զզրոց, շմբրոց* բառերը /նկատի ունենք –ոց- ձևույթը/: *Տոպրակ*-ը թաթարերենից կատարված փոխառություն է, բնականաբար վաղ գրաբարում չի կարող վկայված լինել:



*Իրանական ծագում* ունեն՝ գանձանակ, զամբիւղ, պայուսակ, [illegible], տապան, քսակ, քուրձ: Եթե *շագոյր-ը շարագոյր*-ի աղա-[illegible] է, ապա դարձյալ իրանական փոխառություն է:

*Հունարենից են* կեղք, սփիւրիդ, տառաղան, սնդուկ:

*Ասորերենից*՝ թափուտ, կողով, արգոր, բակեղք: Վերջին [illegible] հունական բնագրերից քաղված եբրայական ծագում [illegible] բառեր են: *Արկղ* համարվում է լատիներենից կատարված փոխառություն: *Խբարղեայ*-ի և *մախաղ*-ի համար ենթադրվում է ասորական ծագում[5]: *Շալակ*-ը թերևս սեմական փոխառություն [illegible] *Ոճ*-ը «ծղոտ, ցողուն» իմաստից զատ ունի նաև «ծղոտե կողով» իմաստը. «Ճռաքաղ արարէք... և անդրէն կրկնեսջիք որպէս կթող [illegible]» /Երեմ., Զ, 9/: Բառի ծագումը պարզ չէ:

«Ամանեղենի» այս ենթախմբում, ինչպես և նախորդներում, գլխավորը փոխառյալ բառերն են, հատկապես՝ իրանական ծագում ունեցողները:

## 2. ՀԱՑԱՀԱՏԻԿ ԱՂԱԼՈՒ, ՄԱՔՐԵԼՈՒ ԳՈՐԾԻՔՆԵՐ

Հնդեվրոպական նախալեզվի վերականգնված *hat - ձևը արտահայտում է *հատիկ* հասկացությունը. այդ վերականգնումը հիմնվում է h.-ե. մի շարք լեզուների, այդ թվում հայերենի տվյալների վրա[7]: Հացահատիկային բույսերից հնագույններից են *գարի*-ն, *ցորեն*-ը: Առաջինը բնիկ հայերեն բառ է, *ցորեն*-ի h.-ե. ծագումը առայժմ հիմնավորված չէ, և նման դեպքում, ինչպես շատ այլ բառերի համար, ենթադրվում է ուրարտական ծագում[8]:

Գրաբար մատենագրության մեջ ավանդված են հատիկները աղալու, մաքրելու առարկաների մի շարք անվանումներ. *աղօրի*, *[illegible]* «սանդ, հավան», *երկան* «աղաց», *ղինգ* «բրինձ մաքրելու գործիք», *խախալ* «մաղ», *խարբալ* «մաղ», մաղ, նքոյր «մաղ», *սանդ, տոռն* «սանդի կոթ»:

*Աղաց* «աղալու գործիք» իմաստով գրաբարում առանձին բառ վկայված չէ:

5-րդ դարից վկայված է *մլաղաց* «աղորիք»: Բառի երկու բաղադրիչներն էլ հայերեն են. *մուլ*-ի անկախ գործածություն վկայված չէ, այն հ.-ե. *mel «մանել, աղալ»-ի տարբերակն է:

*Ջրաղաց/ջաղաց, հողմաղաց* գրաբարում չկան: *Ջրաղաց*-ը հայ մատենագրության մեջ վկայված է ուշ շրջանից: Կա միայն *խնկաղաց* «խունկ աղալու գործիք», նաև «խունկ աղացող»: *Խնկաղաց*-ը, անշուշտ, Աստվածաշնչի թարգմանությանն առնչվող նորաբանություն է:

Այս ենթախմբի բառերի թիվը մեծ չէ, բայց էական է այն հանգամանքը, որ դրանք հիմնականում բնիկ հայերեն բառեր են. *աղօրի, երկան, ճրոյր, տռռն*:

*Մաղ*-ի համար ենթադրվում է ուրարտական ծագում[9]: Սակայն մերժելի չպետք է համարել և հ.-ե. բնույթը՝ նկատի առնելով * mel - արմատը, որից՝ *մալել* «մանրել, աղալ»:

*Դինգ*-ը Արմ.-ում համարվում է իրանական փոխառություն, վաղ գրաբարում բառը ավանդված չէ: Հ. Աճառյանը, իրավացիորեն հաշվի առնելով նշված բառի բարբառային ձևերի առանձնահատկությունները, նկատում է, որ այն կարող է փոխառված լինել վաղ շրջանում: Չի կարելի անվերապահորեն մերժել նաև բառի հայկական բնույթը:

*Խարբալ* գոյականական կիրառությամբ վկայված չէ, բայց բայական ձևով առկա են մի շարք վկայություններ. «Ահա սատանայ խնդրեաց զձեզ խարբալել իբրեւ զցորեան» /Ղուկ., ԻԲ, 31/: Կա և *խարբալումն* «մաղելը»:

*Անկան /անգան* վկայված է մեկ անգամ. «Եւ աղային յերկանի եւ լեսուին յանգանի, եւ եփէին ի պուտան և առնէին նկանակ» /Թիւք, ԺԱ, 8/:

*Կամն*-ը նույնպես կարելի է զետեղել այս ցանկում:

## 3. ԿՏՐՈՂ, ԾԱԿՈՂ ԳՈՐԾԻՔՆԵՐ

Մոտ երեք տասնյակի հասնող համապատասխան հասկացությունները դարձյալ դժվար է բաշխել ըստ կոնկրետ



մասնագիտության կամ արհեստի, ինչպես և դժվար է զանազանել նրբիմաստային յուրահատկությունը, առարկայի տարբերակիչ ձևը և այլն: Իմաստային այս ենթախմբի /ինչպես և բոլոր/ մեջ մտնող այս բառեր կարող են լինել նույնանիշներ, մանավանդ եթե հաշվի առնենք այն հանգամանքը, որ հոմանիշային խումբ կազմող բառերը ներկայացնում են ծագումնաբանական տարբեր շերտեր, գործածության տարբեր ժամանակագրություն:

ա/. *Կացին-տապար-փայտատ* հոմանիշային շարքը լրացվում է նաև այլ բառերով, որոնք ընդգծվածներից տարբերվում են գործառական հաճախականությամբ, իսկ հասկացությունն արտահայտող առարկան նաև թերևս գործածության առանձնահատկություններով:

Ներկայացնենք այդ շարքը այբբենական կարգով՝ նշելով Արմ.-ում նկատված իմաստները:

*Դալապր* «թուր կամ կացին»: Վկայված է մեկ անգամ Թրակացու քերականության մեջ, և նույն թվարկումը՝ այլ գործում. «Փա-[illegible]նուն... խաղ, դալապր, մարտացու, վաղակավոր, սուսեր.../Դիոն. բեր., 19/[10]:

*Դակու* «ուրագ կամ կացին»: Ըստ ՆՀԲ-ի «գործի հիւսանց և մշակաց տապարաձև»: Բնիկ հայերեն բառ է:

*Կացին* «տապար, փայտատ»: Ասորական փոխառություն է:

*Ճկոռ* «տապար» /տե՛ս Արմ./:

*Մարկեղ* «բրիչ, փայտատ»: Հունական փոխառություն է, ոչ հաճախական: Իմաստային տարբերակվածությունը հստակ չէ:

*Տապար* «կացին, փայտատ»: Իրանական փոխառություն է: ՆՀԲ-ը նշում է նաև մեկ այլ նրբիմաստ՝ «զինուորական գործի տապարաձև»:

*Ուրագ* «փայտը տաշելու գործիք»: Փոխառված է ասորերենից: Ըստ ՆՀԲ-ի «փոքր տապար կամ սակր հիւսանց»:

*Ցաքատ* «ճյուղ, ցախ կտրելու գործիք»: Թեև բառը հայ հին մատենագրության մեջ վկայված չէ, բայց, անշուշտ, հին կազմություն է՝ բնիկ հ.-ե. *ցաք* արմատով:

*Փայտատ* «կացին, տապար». «Միթե վերանայցէ փայտատ առանց փայտահատի» /ՆՀԲ/: Փայտը հ.-ե. ծագում ունի /Գ.Ջահուկյան, 1987, էջ 149/:

Նշված բառերի շարքում առավել գործածական են *փայտատ, կացին, տապար* հոմանիշները:

բ/.Կտրող գործիքների մեկ այլ խումբ կարելի է ներկայացնել *ածելի-դանակ* հոմանիշային շարքը կազմող բառերով: Սափրվելու գործիքներ են *ածելի, զմելի, սրբիչ*, վիրահատության՝ *նշտիր /նշտրակ/, երակահատ*: Իմաստային ավելի լայն սահմաններ ունեն *դանակ, կտրոց* բառերը, թեև նախորդներն էլ ոչ միայն վիրահատական կամ սափրվելու, այլև այլ նպատակներով գործածվող առարկաներ են. սա արձանագրում են բառարանները:

*Դանակ* «կտրոց, դանակ, փոքրիկ, սուր»: Հավանորեն բառը իրանական ծագում ունի: Ուշ շրջանից մեկ անգամ վկայված է *դան* ձևով /տե՛ս Արմ./:

*Երակահատ* «բժշկի նշտրակ»: Բաղադրության առաջին արմատը ծագումնաբանորեն իրանական է: Բերենք բնագրային մի քանի օրինակ. «Եւ ածցի ածելի ի վերայ ամենայն մարմնոց նոցա» /Թիւք, Ը, 7/: Ածելի ոչ ելցէ ի գլուխ իմ, զի ուխտաւոր Աստուծոյ եմ» /Դատ., ԺԶ, 17/: «Սրբիչ մի ածիցէ զգլխով իւրով, մինչեւ լցցին աւուրքն զորս ուխտեաց Տեառն...» /Թիւք, Զ, 5/: *Երակահատ*-ը ունի «բժիշկ, երակը կտրող» իմաստը, նաև գործիքի անվանում է. որպես գործիքի անվանում հոմանիշ է *նշտիր, նշտրակ*-ին:

*Զմելին* «փոքր կտրոց, վարսավիրի ածելի», ըստ Արմ.-ի՝ «գրիչ տաշելու փոքրիկ դանակ»: Բառը հունարենից կատարված փոխառություն է, հաճախական գործածություն չունի, իսկ փոխատու լեզվում այն բազմիմաստ է «կտրոց, արձանագործի մկրատ, նշտրակ, կոշկակարի դանակ, այգեպանի հատոց» և այլն: Քանի որ բառը գործածական չէ գրական արևելահայերենում և արևելյան խմբավորման բարբառներում, այլ առկա է միայն արևմտահայերենում, պետք է ենթադրել, որ գրաբարում այն սահմանափակ տարածքային տարբերակ էր, կամ գրական բարգմանական ուղիով մուտք գործած բառ՝ Ս. Գրքի թարգմանությամբ:



*Սայրոց* «դանակ, զմելին, մկրատ»: Բառը, ըստ էության, ոչ թե որևէ կոնկրետ գործիքի, այլ ընդհանրական անվանում է:

*Սկյուտ.* վաղ շրջանից վկայված չէ:

*Նշտիր/նշտրակ* «վիրահատական գործիք». «Վասն առողջութեան մարմնոյ թոյլ տան նշտրով փորձել զվէրս» /ՆՀԲ/: Իրանական փոխառություն է:

*Սղոց*-ը հաճախական կիրառություն ունի արդեն 5-րդ դարից: Բառարմատի իսկությունը պարզ չէ: Որպես բառահիմք՝ հանդես է գալիս մի շարք կազմություններում. *սղոցաբերան, սղոցաձև, սղոցաձուկն, սղոցեղջիւր, սղոցեմ, սղոցումն:*

Դակող գործիքների անվանումներ են.

*Բեւեռ* – սկզբնական իմաստն է «գամ, մեխ»: Ծագումը ստույգ չէ;

*Գամ* – ՆՀԲ-ը համարում է ռամկական բառ, որը միայն բարդության մեջ է առկայանում: 5-րդ դարից վկայված *երկաթագամ, պնդագամ* ձևերը խոսում են բառի գործածության հին ակունքների մասին: Ծագումը ստույգ չէ:

*Գայլիկոն.* «Զոմանս գայլիկոնով ծակէին զպճղունս նոցա» /ՆՀԲ/: Ծագումը ստույգ չէ:

*Դուր* «հյուսնի գործիք». «Դրով գործեաց և դրօշեաց զնա» /Սամ., ԽԴ, 12/: Ծագումը պարզ չէ:

*Երիթ* «սեպ». «Վարիցի առ արմատովք երիթ ուռն և մտանիցէ ի միջոյ ծառոյն» /Բրսղ, Է/: Ծագումը ըստ Արմ.-ի ստույգ չէ: Գ. Ջահուկյանը համարում է բնիկ հայերեն /1987, 156/:

*Հեղոյս* «գամ, մեխ». «Հարին հեղոյսս երկայնս»/ՆՀԲ/: Վաղ գրաբարում հաճախական չէ, բայց 5-րդ դարից վկայված *հեղուսել*-ը /տես ՆՀԲ/ հուշում է, որ այն գործածական է եղել վաղ շրջանից: Ծագումը ստույգ չէ:

*Հերիւն* «ծակելու գործիք». « Առցես զհերիւն և ծակեսցես զունկն նորա» /Օր., ԺԷ, 17, Ել., ԻԱ, 6/: ՆՀԲ-ի բոլոր վկայություններում բառը հանդես է գալիս «մարմնի մաս ծակող» գործիք նշանակությամբ: Բնիկ հայերեն բառ է:

*Մախաթ.* Է. Աղայանի բացատրական բառարանում՝ «կորածայր մեծ ու երկար ասեղ. տոպրակներ, ջվալներ են կարելու

համար»: Գրաբարում էլ թերևս այս իմաստով է գործածվում /վկայությունները ուշ շրջանից են/, բայց ունի թերևս այլ գործածություն ևս: Դա երևում է ՆՀԲ-ի վկայությունից. «մախաթով ծակեալ էի զծեփ նորա»:

*Ծաղափ* «ծակիչ»: Վկայված է ուշ շրջանից: Ոսկեբերանի Եսայու մեկնության մեջ կա նման բառ՝ անստույգ նշանակությամբ /տե՛ս Արմ./:

*Ծամփուր* «երկաթե կամ փայտյա սուր գավազան»: Հիմնական գործածությունը՝ միս խորովելու գործիք, որում անպայման առկա է ծակելու հատկանիշը: Կան նաև այլ վկայություններ, օր.՝ «Հրացեալ շամփրովք ծակոտեցին զթիկնամէջսն» /ՆՀԲ/:

*Մեպ*. ՆՀԲ-ը նախնական իմաստն է համարում «ժայռ, քարաժայռ», իսկ *երիթ*՝ «սրածայր փայտ կամ երկաթ» իմաստով գործածությունը 12-րդ դարից է:

## 4. ԳԱՆԱՀԱՐՈՒԹՅԱՆ, ԿՏՏԱՆՔԻ ԳՈՐԾԻՔՆԵՐ

Այս ենթախմբում ներառվող բառերը վկայված են ամենատարբեր սկզբնաղբյուրներում: Բառերի մի մասը այդ գործառույթը ձեռք է բերել նախնական իմաստի հենքի վրա: Օրինակ՝ *բիր*-ը նախապես նշանակել է «փորելու գործիք», իմաստային զարգացմամբ՝ «մահակ կամ հաստ գավազան»: *Գաւազան, խարազան* իրանական փոխառություններ են: *Գաւազան*-ը ըստ Արմ.-ի ունի «1.անասուն քշելու փայտ, 2. մարդ ծեծելու փայտ, 3. ծեծ, հարուած, 4. խրատ, 5. իշխանի կամ թագաւորի մական, կրօնաւորի գաւազան... » և այլ իմաստներ:

Հայ մատենագրության մեջ բազմաթիվ վկայություններ կան ծեծելու, պատժելու, կտտանքի ենթարկելու մասին, որոնցում, բնականաբար, առկայանում են ծեծը, պատիժը իրականացնելու միջոցների մի շարք անվանումներ: Բերենք որոշ վկայություններ, որոնք նաև հետաքրքիր են հների՝ պատժելուն և պատժամիջոցներին ծանոթանալու առումով:



*Բուզանդից.* «Ըստ պարսկի օրինակին հրամայէր զմորթն ի բաց հանել և խոտով լնուլ...» /3, ԻԱ/: «Ապա տայր հրաման Շապուհ արքայ պարսից, բերել շղթայս և արկանել ի պարանոցն Արշակայ և յոտս և ի ձեռս նորա երկաթս» /4, ԾԴ/: «Իսկ զպատանեակն Գնել առնուին... և կառափէին ի սարակ լերինն» /4, ԺԵ/:

*Ագաթանգեղոսից.* «Եւ յետ այսորիկ հրամայեաց կախել զնա գլխիվայր զմիոյ ոտանէն. զի մինչ դեռ կայցէ գլխիվայր՝ ծխեցեն ի [illegible] նորա աղբ և արբցէ զան սաստիկ բրօք դալարովք» /1983թ., 80/: «Եւ ետ հրաման բերել կոճեղս փայտից, և առնել ըստ ոլոքի [illegible]ցաց ոտից նորա և դնել և պնդել ուժգին առատկօք...» /1983թ., 68/: «Եւ ետ հրաման բերել աղ և բորակ և բարկ քացախ և ընկենուլ [illegible] յորսայս և դնել զլուխ նորա ի հիւսանց մամուլս և դնել փող [illegible] ի քիթս նորա...» /70/: «Եւ ետ հրաման քերել զկողս նորա [illegible] բերչօք» /72/: «Եւ ետ հրաման արկանել կապիճս երկաթիս ի [illegible] նորա և վարել ուռունս ստուարս և բառնալ ի կախաղան» /74/: Ագաթանգեղոսը այս կարգի վկայություններ շատ ունի /110, 118, 120/:

*Խորենացուց.* «...առ ի կորուստ ամբարշտին զոմանս խո[illegible] հուր լուցեալ և շամփուր երկաթի՝ միս խորովելոյ. զոր [illegible]ցեալ, կրկնեաց բոլորեալ որպէս պսակ և ասէ... Պսակեմ զքեզ, Անդրուժան...» /3, ԼԷ/, «...և տիկտեսակ գործեալ ուռուցմամբ՝ հրամայեաց դնել յանդիման Խոսրովայ հանապազ» /3, Ծ/:

*Թարգմանական գրականությունից.* « Զկիսոցն զբազուկսն [illegible] չափ քարշէին, զկիսոց զկողսն խոցէին, կիսոց զորովայնսն [illegible]կանէին և թափ ի մանկունսն հանէին զսուսերսն: Զկէսսն քարամբք ծեծէին, կիսոցն զաչսն փորէին, զկիսոցն զունչս և ականջսն և [illegible]թունսն հատանէին և անղէն ի բերանն բռնաբար ատամնա[illegible] հարուածովք ամանային» /Վկ. արև., 80/: «Ազգի ազգի չարչարանք եկեալ էին ի վերայ նորա... կոփանք և ապտակք, քանզի [illegible]ցեցին զնա յառաջագոյն մտրակօք... և աստի անտի հարկանէին զկզակս նորա և եղեգամբ զգլուխ նորա ծեծէին» /Խսիւք., 485-486/:

«Ծեծ, տանջանք, պատիժ» իմաստներն են արտահայտում հետևյալ բառերը. *գան, ծեծ, կտուտ, կտտանք, հարուած, հարանք, հարումն, չարչարանք, պատիժ, տանջանք...*

Ծեծի, պատժելու գործիքները անվանում են *անօթ պատժոց, գործիք տանջանաց*: Ի մասնավորի՝ դրանք են[11].

*Առատուկ կամ առատիկ*. «առասան կամ չուան՝ որով յան-ցաւորի ոտքերն ու գլուխը պրկում էին գելարանի մէջ» /օրինակը տե՛ս Ագաթանգեղոսից բերված վկայության մեջ/:

*Բաղանտ*. «Կարիճն գործի ինչ տանջանաց է, նուրբ և երկայն իբրեւ զբաղանտն, զոր հայերէն բուբն ասեն» /Արմ./:

*Բիր*. «մահակ կամ հաստ գավազան». «Արբցէ գան սաստիկ բրովք» /Ագաթ., ՆՀԲ/. /այս արմատով ունենք *բրածեծ գան, բրածեծ առնել, լինել*/:

*Գաւազան*. /ունի բազմաթիվ իմաստներ/: Կա և *գաւազանել* «գավազանով ծեծել»:

*Գելարան, գելոց* «պրկիչ գործիք». «Արկանէր... ծանրագոյն պատուհասիւք ի գելարանս» /Կոր., 68/: *Գել* արմատն է *գելուլ, գելումն* բառերում:

*Թակ* «ծայրը կունտ գլխով փայտ՝ ցից զարնելու համար»: Բառարանների մեկնություններում և վկայված օրինակներում «ծե-ծելու, տանջելու գործիք» իմաստը չի արձանագրվում կամ բացա-հայտվում: Հնարավոր է՝ այդ իմաստը չի վկայվել կամ չի նկատվել: Ղարաբաղի բարբառում *թակել* «ծեծել» բառը հաճախական է:

*Թոպոլոց* «ծեծի գավազան»: *Թոպ* արմատն առկայանում է *թոպամահ, թոպեմ* «ծեծել», *թոպիւն, թոպումն* բառերում:

*Խարազան* «մտրակ»: Կա և *խարազանել, խարազանա-հալած առնել:*

*Խեղդան* «խեղդելու պարան» /ՆՀԲ-ի վկայությունները նաև 5-րդ դարից են/:

*Խոտոց* «ոտքերին ամրացնելու տանջանքի գործիք»:

*Կարիճ* «փշոտ կամ խայթոցաւոր գաւազան» /տե՛ս *Բա-ղանտ*-ի օրինակը/:

*Կեղ* «ծեծելու փայտ, գաւազան». «Կեղիւ ջարդեցին զսրունսն» /Վարք և վկ.,Ա, 40/:



*[illegible]* բազմաթիվ այլ իմաստների հետ ՆՀԲ-ը նշում է նաև «[illegible] զոտս պատժաւորաց»: Ահա մի վկայություն. «Եւ [illegible] զոտս նոցա ի կոճեղ զհինգ ծակով և այլովք տանջանօք [illegible] էին» /Եւ., Պատմ., 331/:

*[illegible]* «մահապարտի վզին կամ ոտքին կապելու կոճղ»: [illegible] է ուշ շրջանից:

*[illegible]* «գաւազան, ծեծ, գանակոծութիւն». «Ի ձեռանէ թափ-[illegible] հարաւ և մեռաւ» /Եւ., Պատմ., ՆՀԲ/: Կա և *ճաղկել, [illegible]:*

*Մազ* «ծեծ, խարազան, գաւազան»: Մեկ անգամ վկայել է [illegible]: Ըստ երևույթին որևէ կենդանու մազից պատրաստված [illegible] է:

*Մական* «գաւազան, ցուպ», *մահակ* «բիր, ծեծի գաւազան» *[illegible]* «խարազան, խթան»: Բազմաթիվ վկայություններ 5-րդ [illegible] են:

*Ողոր* «ճիւղ, ճիպոտ»: Ըստ բառարանային տվյալների՝ ան-[illegible] վկայված է հետգրաբարյան փուլում: Բառի հ.-ե. ծա-[illegible] և Ագաթանգեղոսի գրքում վկայված *ողորածեծ առնել*-ը հու-[illegible] է բառի՝ 5-րդ դ. /և ավելի վաղ/ անկախ գործածության մասին:

*Պրկոց* ՆՀԲ-ը մեկնում է «մեքենայ կամ փայտ՝ յորոյ վերայ [illegible] յանցաւորք առ ի տանջել»:

*Ջալոտի* «բիր, գաւազան».«հրամայեաց ջալոտիւք հարկա-[illegible]» /Խոր., 272/:

*Ջին* «գաւազան, ծեծի բիր մահակ»: Կա և *ջնել* «ծեծել»:

*Վարզ* «գավազան, վարոց»:

*Վարոց* «վարելու, քշելու գործիք»:

*Տաճկինակ* «ծեծի գաւազան կամ մտրակ»:

*Ցուպ* «ձեռքի գաւազան»:

*Քերանք, քերիչ* «...զի կրկին նս տանջանօք զքերանս եր-[illegible]թոյն մինչև ի ներքին անդամսն հասուցեն» /Վկ. արև., 208/:

*Քուր* «հանցաւորներին ծեծելու փշոտ գաւազան» /տե՛ս *Բա-[illegible]*-ի օրինակը/:

Ենթախմբի մեջ մտնող բառերի /արմատների/ գերակշիռ մասը բնիկ հայերեն են: Դրանք են. *բիր, գան «ծեծ»*[12], *գելարան, թակ, թոպոլոց, ծեծ, ոզոր, ջին, ջզալուծ, ցուպ*[13], *քերանք, քուք*[14]*:*

Իրանական փոխառություններ են. *գաւազան, խարազան, կարիճ*[15], *կուռ, մահակ*[16], *վարոց*[17], *տաճկինակ:*

Հունարենից կատարված փոխառություններ են. *բաղանտ*, ասորերենից է *մտրակ*-ը, վրացերենից՝ *կեռ*-ը: Մի քանի բառերի ծագումը ստույգ չէ. *խեղղան, խոտոցոց, կոճղ, մազ, մական, պրկոց...*

*Արջառաջիլ*-ի *արջառ* բաղադրիչի ծագումը պարզ չէ, իսկ *ջիլ*-ը բնիկ հայերեն է: Նման դեպքերում բառը փոխառություն համարելու հիմք չկա: Օտար կամ անստույգ բառ+հայերեն ձևույթ /արմատ կամ ածանց/ ունեցող բառերը համարում ենք հայակազմություններ:

## 5. ՈՐՍՈՐԴԱԿԱՆ ԻՐԵՐ, ԳՈՐԾԻՔՆԵՐ

Գրաբարում *որսորդ* ընդհանրական իմաստը արտահայտվում է *որսորդ, որսական/որսկան, որսող* բառերով: Գործում է նաև *կենդանու, թռչունի անուն+որս* կաղապարը. *հաւորս, ձկնորս:* Որևէ առանձին կենդանու կամ թռչունի անուն /արջ, գայլ, կաքաւ, բազէ/+որս կաղապարը սպասելի է: *Ձկնորս*-ին հոմանիշ է *ձկնահան*-ը. հմմտ. «Ոչ հաւորսք անդր ոչ ձկնահանք», «ձկնահան ի ձկնահանաց էր, այլովք ձկնահանօք հանդերձ» /ՆՀԲ/: Հոմանիշային խմբի մեջ կարող ենք ընդգրկել և *ասպականի* բառը, ըստ ՆՀԲ-ի՝ «որսորդ, որ գնայ յորս երիվարաւ և շամբք»: «Ասպականին ընդ շունս և ընդ գազանս առնէ զիւր դեգերումն վարուց» /ՆՀԲ/:

Հոմանիշներ են *ձկնորս, ցանցորդ, ուռկանաւոր* բառերը:

Գրաբար մատենագրությունից /և՛ ինքնուրույն, և՛ թարգմանական/ վկայվել են բազմաթիվ բառեր, որոնք որսորդական գործիքների անվանումներ են: Փաստորեն հին զինատեսակների զգալի մասը նաև որսորդական առարկաներ են: Այստեղ կանդրադառնանք զուտ կամ հիմնականում որսորդություն բնագավառը ներկայացնող բառերին՝ անտեսելով զինատեսակները, որոնք առանձին մեծ իմաստային խումբ են կազմում:

Նկատելիորեն շատ են *ուռկան, թակարդ* հասկացությունները արտահայտող բառերը:

*Ականատ* «թռչուն կամ կենդանի բռնելու գործիք, թակարդ», գրվում է նաև *ակնատ*. «Կեցցես որպես զայծեամն ի յակնատէ», «շինեաց ականատս բազումս...խաբեցից զբազում կաքաւս» /ՆՀԲ/:

*Արազազ/երազազ* «կենդանի բռնելու ցանց». «Երազազն անօթ ինչ է հիւսկէն» /ՆՀԲ/: «Երազազիւքն և գահողովքն ելեալ ի յորս զունդք նախարարացն...» /Փարպ., 10/:

*Արկ* «թակարդ, որսի ցանց». բառարաններում՝ *յարկ* ձևով է ներկայացված: ՆՀԲ-ում եզակի վկայություն է:

*Արձոյլ* «ուռկան». «որպէս զձկնորսն սփռէ զարձոյլ. արկանէ զուռկանն» /ՆՀԲ/:

*Գահող* «թակարդի տեսակ». /տե՛ս *Երազազ*-ի օրինակը, նաև՝ ՆՀԲ/:

*Գառազեղ/գառազիղ* «վանդակ». «Մինչև ի գառազեղն էր գազանն» /ՆՀԲ/: Բառը, ինչպես և հունարենում, ունի նաև «բանտ» իմաստը. «Եւ իբրեւ փակեաց զնոսա յամուր և յանել գառազիղն... ստիպէր ուրանալ զճշմարիտն աստուած» /Եղիշէ, 19/:

*Թակարդ* «որոգայթ, ցանց». հաճախական կիրառություն ունի: Բառակազմական հիմք է և բաղադրիչ. հմմտ. *թակարդաղիր, թակարդապատ, թակարդափակեմ, թակարդեմ:*

*Թարփ* «ուռկան». ՆՀԲ-ը չունի այդ բառը: Արմ.-ի տվյալներով առաջին վկայությունը 7-րդ դարից է: Գրվում է նաև *թարբ:*

*Լար*. բազմիմաստ այս բառը *«պարան, որմնադիրի ուղղալար, մղոն»* իմաստներից զատ նշանակում է «որոգայթ, թակարդ». հմմտ. «Զլարն չէ արժան թողուլ, զի բազում ինչ այն է, որ լարիւ թակարդի» /ՆՀԲ/:

*Ծուղակ* «որոգայթ, թակարդ». «Հաւահար առնել կամ ի ծուղակ ըմբռնել» /ՆՀԲ/: «Զի ապրեսցիս որպէս զայծեամն ի հաղբից և իբրև զհաւ ի ծուղակաց» /Առակ, Զ, 5/:

*Կարթ*. 5-րդ դարից հաճախական կիրառություն ունի: «Պատեցից զքեզ թակարդօք իմօք... և հանից զքեզ կարթիւ իմով»

/Եզեկ., ԼԲ, 3/: *Կարթել* նշանակում է «կարթով կամ թակարդով որսալ», *կարթընկեց*՝ «որսորդ»:

*Հաղբք* «թակարդ, որոգայթ». «...ապրեցիս որպէս զայծեամն ի հաղբից» /Առակ, Զ, 5/:

*Որոգայթ* «թակարդ, ծուղակ». «Եւ որոգայթս իբրեւ զվարմս հաւորսաց կանգնեցին ապականել զմարդիկ» /Երեմ., Ե, 26/:

Հաճախական են և *որոգայթադիր, որոգայթել* բառերը. «Անըմբռնելիք որոգայթադիր որսողաց» /ՆՀԲ/: «Որսորդք են դեւք, որք զանձինս որոգայթեն» /ՆՀԲ/: Հավանական է համարվում քարթվելական ծագումը, ինչպես և *երազագ* բառի դեպքում /Ջահուկյան, 1987, 593/:

*Ուռկան*. հաճախական կիրառություն ունի 5-րդ դարից: «Արկեալ ուռկան ի ծով, քանզի ձկնորսք էին» /ՆՀԲ/: 5-րդ դարից են վկայված նաև *ուռկանաւոր, ուռկանեմ* կազմությունները: Հաճախական չէ *ուռեակ* «թակարդ» բառը:

*Վանդակ*. գրաբարի բառարանները բազմիմաստ այդ բառի հիմնական իմաստը համարում են «ցանց, վարմ, ուռկան, թակարդ»:

*Վարմ* «ցանց, թակարդ, ծուղակ». «Իբրև զվարմ ձգեալ ի գլուխ գահաւանդի, զոր որսորդք յորս հաստատեցին» /ՆՀԲ/: Իրանական փոխառություն է /Ջահուկյան, 1987, 546/:

*Ցանց* «ուռկան, այլ կենդանիներ բռնելու գործիք». «Իբրև զձկունս ծովու ձգեաց զնա ցանցիւ իւրով» /ՆՀԲ/:

Հետգրաբարյան փուլից են ավանդված *ապո, կարթ* /առաջին և եզակի վկայությունը՝ 14-րդ դարից/, *դամ* «ուռկան». *որսանք* բառի համար ՆՀԲ-ը նշում է և «որս» և «գործիք» իմաստները:

Այս ենթախմբում բնիկ հայերեն են *թակարդ, թարբ /թարփ/, լար, կարթ, որս* բառերը: Իրանական փոխառություններ են՝ *վանդակ, վարմ*, հունարենից են՝ *յարկ, գառագիղ*, ասորերենից՝ *հաղբք*: Մյուս բառերի ծագումը պարզ չէ:



# 6. ԶԵՆՔ, ՊԱՏԵՐԱԶՄԱԿԱՆ ԳՈՐԾԻՔՆԵՐ

Ռազմական կյանքին վերաբերող բառապաշարում ակընհայտ գերակշռություն ունի իրանական տարրը. սա բացատրվում է դարեր շարունակ Իրանի ռազմական գերիշխանությամբ, ապա նաև այդ բնագավառի սերտ հարաբերություններով: Արդեն մ.թ.ա. 6-5-րդ դարերում լինելով արևելքի հզորագույն պետություններից մեկը՝ Իրանը մեծ ազդեցություն է թողել հարևան երկրների ռազմական-տնտեսական վարչական կյանքում, նաև այդ ոլորտին վերաբերող փոխառությունների տեսանկյունից: Օրինակ՝ հին հնդկերենում գործառող իրանական ռազմավարչական բնույթի բառերի մուտքը ենթադրվում է մ.թ.ա. առաջին հազարամյակի կեսերից, երբ Աքեմենյան իշխանությունը հասավ Ինդոսի ավազանը[18]:

Հայ-իրանական փոխադարձ ազդեցությունները սկզբնավորվել են այդ երկու ժողովուրդների կազմավորման շրջանից, և դրանք եղել են անընդհատ:

Հայ մատենագրությունից կարելի է առանձնացնել ռազմական կյանքին վերաբերող հատվածներ, որոնցում գերակշռում են իրանական փոխառությունները: Բերենք Եղիշեից մեկ հատված՝ ընդգծելով փոխառությունները /կամ փոխառյալ արմատները/. «Եւ իբրև լուաւ զթիւ *համարոյ բազմութեանն,* առաւել ևս փութացաւ ուսանել, թե քանիք իցեն պարագլուխք քաջ *նահատակացն...* այլ և *դրօշից անգամ* իւրաքանչիւր տեղեկանայր... թէ քանի *գունդ զզօրսն բաժանիցեն* և որ ոք ի նոցանէ *սաղարք* լինիցին և որ *զորագլուխ* յորմէ կողմանէ *յռազմ* մտանիցէ և զինչ անուանք իւրաքանչիւր *համհարզացն* իցեն և քանի փողահարք ի մէջ *գնդին* ձայնիցեն:

*Ղակի՞շ* գործիցեն արդեօք, եթէ *արձակ բանակեսցեն: Ճակատ առ ճակատ* գործիցեն, եթէ՞ *համագունդ,* ընդ մի տեղի դրդիցեն» /96/:

Ներկայացնենք մեզ հետաքրքրող բառաշերտերը ըստ ծագումնաբանության:

*Հնդեվրոպական շերտ.* աղեղն, բիր «մահակ», գեղարդն, թուր, կմբեայ, նետ, սլաք «նետ», սուր, փքին «նետ»:

Բերենք բնագրային մի քանի օրինակ. «Խոցոտեսցէ զնա աղեղն պղնձի, անցցէ ընդ մարմին նորա նետ» /Իսիւք., ԻԴ, 570/: «Սուր ինչ երկսայրի պողովատիկ որչափ ճակատել եւս հասանիցէ՝ անխնայ և անարգել և դիւրաւ կոտորէ» /Ոսկ., Պօղ., Ա, 403/: «Եւ ես երեքկնեցից փքնօք յորս՝ ածել և ձգել յամատտարայն» /Ա. Թագ., Ի, 20/: «Փքնօք մարտնչէին ընդ թշնամիսն» /ՆՀԲ/: «...և համակ սրով և սուսերօք ի սլաքս և ի տէգս նիզակաց զքրտունս երեսաց մերոց ջնջեցաք» /Բուզ., 137/:

*Հունական փոխառություններ.* ասպիս, բաղիստր, գայիսոն «նիզակ», կորբան, մանգղիոն, մեքենայ, ստոմ «սուսեր, սայր»: «Իսկ ասպիսն չորեքանկիւնի վահան է»/ՆՀԲ/: «Կանգնէիր մանգղիոնս և մենքենայս և բալիստր և նետաձիգ աշտարակս» /Ա. Մկբ., Զ, 51/: «Որպէս զերկաթի ստոմ, կամ որ ի պողավատիկ զտիցի և մխեսցի ևս կարծրագոյն և հատու լինիցի» /Սեբեր., 75/: *Կորբան* «սաղավարտ» վկայված է ուշ շրջանից:

*Հունական փոխառությունները* հաճախական չեն:

*Սեմական փոխառություններ.* սակ/ուր/, խարբ «սուր, զենք», սուսեր. «Ի շահատակելն իւրում հարկանի յումեմնէ սակերբ զգլուխն» /Խոր., 236/: «Հրաման տայր զօրացն սուսերօք զասպարսն բախել միաբան ի միոջէ հրամանէ» /Եւս., Քր. /, 390/: «Խարբիւ քով կեցցես» /ՆՀԲ/:

*Իրանական փոխառություններ.* աշտեայ, ասպար, դաշնակ, դաստապան, զէնք, զրահ, լախտ, խիշտ, կապիրճ, նիզակ, պատկան, պատկանդարան, պարս, սաղաւարտ, վահան, վարզ, վարապան, վիրգ, տապար, տէգ:

Ամենայն հավանականությամբ, հետևյալ բառերը /սրանց ծագումը ստույգ ու հավաստի չէ/ նույնպես իրանական լեզուներից կատարված փոխառություններ են՝ *դաշոյն, կապարճ, սուին, վաղր, վաղակ/աւոր/:*

*Մկունդ* «մեծ գեղարդ» բառի գոնե արտաքին-հնչյունական տեսքը իրանական փոխառություններից տարբերվում է, և բառի ծագման մասին դժվար է որևէ ենթադրություն անել:



*Ատրճանակ*-ը թեև վկայված է 18-րդ դարից, բայց, ամենայն հավանականությամբ, հին փոխառություն է՝ *ատր* «կրակ» և *ճան* «նետել» արմատներից:

*Ապաստան* «ասպար, վահան» իմաստը թերևս ձեռք է բերվել հայերենում:

Զենքի տեսակների իրանական անվանումները գործուն են եղել լեզվի բոլոր փուլերում:

* * *

* *

Պատերազմական սարքավորումների /տեսակների/ անվանումներից են *բաբան, մանգղիոն, բաղիստր, նետակալ, փիլիկոն* «բաբան»:

*Բաբան*-ը ուշ շրջանից /թաթարերենից/ կատարված փոխառություն է: ՆՀԲ-ը բառը մեկնում է «պատերազմական մեքենայ նախնեաց՝ իբր պարսատիկ մեծ փայտակերտ, ի ձգել քարինս մեծամեծս, զնետս և զնիզակս»:

*Բաղիստր/բալիստր.* ըստ էության հոմանիշ է *բաբան*-ին. «Կանգնէին մանգղիոնս և մենքենայս և բալիստր և նետաձիգ աշտարակս» /Ա. Մկբ., Զ, 51/: «Պատնէշս եւ *նետակալս* շինեսցէ՝ սատակել զանձինս բազմաց» /Եզեկ., ԺԷ, 17/: *Նետակալ*-ին հոմանիշ է *նետաձիգ աշտարակ*-ը: *Պարսատիկ*-ը նաև *բաբան*-ի մաս է, որի մեջ հսկայական քարեր են դնում. «Վաքսուն լիտր քար եդեալ ի պարսատիկսն՝ ի քաղաքն ձգէին» /ՆՀԲ/:

Այս հասկացությունները արտահայտող որոշ բառեր կենդանանուններից են. հմմտ. «Եւ այս մեքենայ, որ կոչէր խոյ, է սաստիկ մեծ և յաղթող գործի, զի երեք հարիւր զինուորն ապա կարեն մղել զնա և յետսկոյս քաշեն զպարանսն և նա յառաջ երթալով փլուցանէ զամուր պարիսպն» /Պատմ. Աղեք., 392/: «Եւ Յունացն մատուցեալ մեծաւ բռնութեամբ յեցուցին ի պարիսպն զկոչեցեալ էշսն: Եւ է այս գործի մեքենայից անուաւոր, յերից երից արանց մղելով տարեալ և ի ներքուստ կացնովք և սակրօք երկբերանովք և կտցաւոր մրճովք՝ փորել զհիմունսն» /Խոր., 3, ԻԸ/:

Մատենագրությունը որոշ տեղեկություններ է հաղորդում զենքի մասերի անվանումներից. *բուն գեղարդան* «գեղարդի կոթ» /Ոսկ., Մտթ., Գ, 66/, *դաստապան* «սրի կոթ», *երախակալ* «զենքի բռնակ, կոթ», *շեղբ* «սրի, թրի սուր ծայրը», *տիգաբուն* «տեգի կոթ», *լիճ* «աղեղի գոգավոր մասը»:

Ահա բնագրային որոշ օրինակներ. «Զի զաղեղանն լիճս բազուկս կոչէ, որպէս Յակոբ ասէր զՅովսեփայ՝ թէ «Սպառնացան նմա արք աղեղանց եւ լուծան ջիլք բազկաց նոցա» /Եմես., Մեկն., 203/: «Այրեսցեն զզէնս, զնիզակաբեկս, զասպարաբեկս, զտիգաբունս» /Եզեկ., ԼԹ, 9/: «Էարկ և զերախակալն ևս զհետ վիրին» /Դատ., Գ, 22/:

Տեղեկություններ կան նաև զենքերի ձևերի, զինանյութի մասին. «Տեսեալ զուսերն, տեսեալ *միողնին»* /Ոսկ., ՆՀԲ/: «*Աղեղն պղնձի»* /Խսիւք., ԻԴ, 570/, «*Սուր երկսայրի պողովատիկ»* /Ոսկ., Պօղ., Ա, 403/, *սուր, տէգ* /երեքսայրի/...*լիալիճ աղեղն*» /Կղնկտ., 287/, «*վահան ոսկեխնձոր»* /Կղնկտ., 222/:

Բացի զենքերի ու պատերազմական գործիքների այն անվանումներից, որոնք ներկայացվում են ըստ ծագումնաբանական շերտերի, խմբավորման շարքում, կան նաև այլ բաղադրյալ՝ հիմնականում երկարմատ կազմություններ: Ի դեպ, նկատենք, որ իրանական փոխառությունների շարքում որոշ բառեր կազմությամբ երկարմատ են՝ փոխատու լեզվում բարդ բառեր. *սաղաւարտ*՝ բառացի՝ սար «գլուխ» և *վար/տ/* «ծածկոց», *դաստապան* «դաստ» ձեռք, *պան* «պահել-ի արմատը», *պատկանդարան*՝ *պատկան* «նետ» *դարան* «պահարան», *վարապան*՝*վար* «կուրծք»:

Գրաբարյան կազմություններից են՝ *աղեղնակապարճ, ասպարաբեկ* «փոքր վահան կամ վահանի բեկոր», *լանջապանակ* «վահան», *վիրգահան* «քաբան», *նիզակատէգ, զինապատեանք, գալարափող, նետակալ, պարսատիկ*. «Եկն Եհաս գալարափող գոչմամբ.../Կղնկտ., 21/: «Զգեղարդունս կանգնեսցեն և զբնիցն գեղարդեանցն զաղեղնակապարճս կախիցեն...» /Ոսկ., Մտթ., 3, 66/:



# 7. ԶԻՈՒ ՍՊԱՍՔ

Հայ մատենագրության մեջ գործածվող *ձիու սպասք* արտահայտող մոտ երկու տասնյակ բառերի գերակշիռ մասը իրանական փոխառություն է: Սա պետք է բացատրել ոչ թե Հայաստանում ձիաբուծության ավելի ուշ կամ թույլ զարգացման հանգամանքով, այլ նրանով, որ *ձի* և *ձիու սպասք* արտահայտող հասկացությունները հիմնականում վերաբերում են ռազմական ոլորտն ընդգրկող բառապաշարին, որում, ինչպես տեսանք, իրանական շերտը ընդգրկուն է: *Ձիու սպասք* մատնանշող բառերից իրանական ծագում ունեն հետևյալները.

*Աճառ*. «Զի վարիցէ ոսկւովք զինուք և ականակապ աճառօք երիվարօք» /Ոսկ., ՆՀԲ/: Բառը գրաբարում բազմիմաստ է:

*Ապրդում* «ձիու սարքի մաս». «Բազում նժոյգս զարքունական ձիոյ՝ արքունի օճառովք ոսկիվարաւանդ ապրդմովն տայր նմա» /Բուզ., 9/:

*Ասպազէն* «երիվարի զենք, զարդ». «Յասպազինէ երիւարին ի վայր արկեալ զինքն» /ՆՀԲ/:

*Ասպանդակ*. վաղ գրաբարում վկայված չէ:

*Դանդանաւանդ* «սանձ». Կազմված է dandan «ատամ» և band/vand «կապ» բաղադրիչներից, բառացի՝ «ատամնակապ»: Հաճախական գործածություն ունի: Ս. Գրքում, օրինակ, օգտագործված է վեց անգամ:

*Երասան/երասանակ* «սանձ». այս արմատից ունենք և *առասան* «չվան, պարան», որը, ինչպես նկատում է Աճառյանը, «ունեցած պիտի լինի «սանձ» նշանակութիւնը, որը սակայն չէ աւանդուած» /տե՛ս Արմ., *Առասան* բառահոդվածը/:

Ժամանակագրորեն *երասան*-ը ավելի հին փոխառություն է /նկատի ունենք *ր*-ի առկայությունը/:

*Երախճան* «սանձ, բերանակալ». «Երախճանաց և ի սանձաց» /ՆՀԲ/: Երկու բաղադրիչներն էլ իրանական են:

*Պախուրց* /գրվում է և *պախուց*/ «սանձ»:

*Վարապան* «սանձ, երասանակ». Աճառյանը տարբերակում է *վարապան* «սանձ» և *վարապան* «կուրծքը պահող զրահ»՝ առա-

ջինը համարելով անստույգ, երկրորդին վերագրելով իրանական ծագում: Թերևս պետք է համարել մեկ բառ՝ իմաստային նրբերանգներով:

*Վարաւանդ*. ըստ Արմ.-ի «ձիու մի զարդ, թամբ կամ սա՞նձ»: Բառը վկայված է միայն բաղադրության մեջ. *վարաւանդապաս, ոսկիվարաւանդ:* /տե՛ս *Ապրդում*-ի օրինակը/:

*Ձիու սպասք* արտահայտող մյուս բառերի ծագումը հավաստի չէ: Այստեղ էլ կարելի է առանձնացնել հոմանիշային խմբեր:

*Սանձ-պախուրց-ցռկակապ-շրուշակ-շռնչապահ. շռնչապահ*-ի *շռինչ*-ը Արմ.-ը համարում է բնաձայնություն: Ըստ Ջահուկյանի *ցռուկ* «քիթ, դունչ» արմատը հ.-ե. ծագում ունի /1987, 148/:

*Թամբ-կորդին-համետ*. ոչ մեկի ծագումը պարզ չէ: Առաջինի վկայությունը 5-րդ դարից է «...զձին սանձաւ թամբաւ առ և գնաց» /ՆՀԲ/: *Համետ*-ը ըստ ՆՀԲ-ի «կազմած իշոյ կամ գրաստու»: Կարելի է ենթադրել, որ բեռներ տեղափոխելու դեպքում ձին համետում էին, իսկ *համետ*-ը իր կառուցվածքով տարբերվում է *թամբ*-ից: *Կորդին*-ի առաջին վկայության ժամանակը ստույգ չէ: Գ. Ջահուկյանը դնում է *թամբ-համետ* հոմանիշային շարքում /1987, 398/:

## 8. ԵՐԿՐԱԳՈՐԾԱԿԱՆ ԱՌԱՐԿԱՆԵՐ

*Երկրագործ* հասկացությունը գրաբարում արտահայտվում է *մշակ, երկրագործ, հողագործ, հերկահար, այգեգործ, մաճկալ, արօրաձիգ... պարտիզպան...* բառերով:

Երկրագործական առարկաների անվանումները հասնում են մոտ երկու տասնյակի, որոնք ըստ ծագումնաբանական շերտերի ներկայացնում են հետևյալ պատկերը:

Բնիկ հայերեն. *արօր* «վարելու գործիք». «Արօր կազմել և լուծս յօրինել» /ՆՀԲ/: Այս արմատից կազմված են *արօրադիր առնել* «հերկել», *արօրել* «հերկել», *արօրաձիգ* «արօր ձգողը, քաշողը»:

*Բահ* «հող փորելու գործիք». «Վասն բահի յոյժ տրտմէր, որպէս բրեսցէ զերկիր» /ՆՀԲ/: Որպես բառակազմական բաղադրիչ՝ վաղ գրաբարում գործուն չէ: Ուշ շրջանից են *բահել, բահաւոր* ձևերը:

*Բիր*-ը *բահ*-ի /bher/ արմատի մեկ այլ տարբերակն է: Արմ.-ը նշում է «գավազան, մահակ» իմաստները՝ իրավացիորեն նկատելով, որ «նախապես էր նաև փորելու գործիք», և այս իմաստներից են բխում *բրել* «փորել», *բրած* «փորած տեղ», *բրածոյ* «փորելով շինված, ամուր», *բրիչ* «փորիչ»: Բառարանները վկայում են նաև *գետնաբիր, հողաբիր:*

*Գերանդի* «խոտ հնձելու նաև խաղող քաղելու գործիք». «Առաքեա զգերանդիդ քո և հնձեա, զի եկն ժամանակ հնձոց» /Յայտ., ԺԴ, 15/: «...Եւ արկ հրեշտակն զգերանդի իւր յերկիր և կթէր զխաղող նորա» /Յայտ., ԺԴ, 19/:

*Եղան*. բառարանները նշում են մեկ վկայություն՝ 17-րդ դարից: Արմ.-ում բառը ստուգաբանված չէ: Ջահուկյանը հնարավոր է համարում հ.-ե. ծագումը /Ջահուկյան, 1987թ., էջ 212/:

*Գութայ* «գութան»[19]. բառը գրաբարում հաճախական չէ:

*Երկմատնի*. գրվում է և *երկմատենի*: Բառի երկու բաղադրիչներն էլ հ.-ե. ծագում ունեն. «Արարեալ փայտատ երկմատենի...յուզեն զթանձրահող հովտացն» /ՆՀԲ/:

*Թի* «բահ, գործիք նաև թիավարելու համար». դժվար է որոշել նախնական իմաստը: Այդ արմատից կազմված *թիակ*-ը ՆՀԲ-ում վկայված օրինակներում նավ վարելու գործիք է:

*Լուծ*. «Եւ էին խաշինք նորա՝ եւթն հազար ոչխար, լուծք եզանց հինգ հարիւր» /Յոբ.,Ա, 3/: Այս արմատից են *լծեմ, լծակ, լծակից, լծակռութիւն, լծակցութիւն, լծարձակ, լծընկէց, լծորդ....*

*Կամն, կամնասայլ* «ցորեն կալսելու գործիք». «Որպէս կամն զի ի վերայ ցորենոյ անցանէ, այնպէս հրեշտակն, որ առակեալ է ի կամն, կասու» /ՆՀԲ/: Արմատական բառարանում ծագումը ճշգրտված չէ: Գ. Ջահուկյանը համարում է բնիկ հայերեն բառ[20]:

*Հեծանոց* «ատամնավոր թիաձև գործիք՝ կալում ցորենը մաքրելու համար». «...որոյ հեծանոցն ի ձեռին իւրում, եւ սրբեսցէ զկալ իւր և ժողովեսցէ զցորեանն ի շտեմարանս» /Մտթ., Գ, 12/:

*Սամի* «լուծի մաս». «Եթէ սամիքն են արծաթի, լուծն էր ոսկի» /ՆՀԲ/: Այս արմատից է *սամետի* «սամիները կապելու փոկ»: «Կապիցես սամետիւք լուծ նմա» /ՆՀԲ/:

*Յաքան.* գրաբարում վկայված չէ: Բայց գործածական է մի շարք բարբառներում: Բառի հ.-ե. ծագումը /Ջահուկյան, 1987թ., էջ 130/ թույլ է տալիս ենթադրելու, որ այն գործածական է եղել վաղուց, բայց գրաբար մատենագրության մեջ չի վկայված:

*Փայտատ.* բացի «կացին» իմաստից, նաև «բրիչ, բահ»: Ըստ ՆՀԲ-ի « երկաթի բրիչ, որ միանգամայն հատանէ և փորէ զհող». «Վաստակել եզամբք և բրել ձեռամբ՝ փայտատօք և բահիւք» /ՆՀԲ/: Վկայված օրինակներից անվերապահորեն երկաթից պատրաստված լինելը չի գիտակցվում:

*Իրանական փոխառություններ* են *մաճ* «արորի մաս», *ճամբարակ:* Առաջինը վկայված է 5-րդ դարից և բավական հաճախական է. «Սամեգար եհար յայլազգեացն վեց հարիւր այր մաճով արօրոյ» /Դատ., Գ, 31/: *Ճամբարակ*-ը ՆՀԲ-ում և ԱԲ-ում վկայված չէ: Արմատական բառարանը հղում է Երեմիա Մեղրեցուն՝ նկատելով, որ գործածական է մի շարք բարբառներում. հմմտ. Ղրբ.՝ «գութանի շղթա»: Թեպետ գրաբար մատենագրության մեջ բառն ավանդված չէ կամ մեզ չի հասել, կարելի է կարծել, որ այն վաղ շրջանից կատարված փոխառություն է՝ նկատի առնելով բառի միջինիրանական լեզուներին բնորոշ ձևը:

*Սեմական ծագում* ունի *մանգաղ*-ը «ցորեն կամ խոտ քաղելու գործիք». «Առաքի մանգաղ, զի հասեալ են հունձք» /ՆՀԲ/: Կա և *մանգաղակ* «փոքր մանգաղ». «Ջայնչափ բանջարովք, զորովք պարտիզպանն արկանէր զմանգաղակն» /ՆՀԲ/:

*Ակուր/ակիր*-ի վկայության սկզբնաղբյուրն ու ծագումը հստակ չեն /տե՛ս Արմ./. «Ի ներքուստ ակրովք և կտցաւոր մրճովք փորելով, փորէ բահիւ կամ ակրով» /Արմ./:

*Տափան* «տափանելու՝ հողը հարթեցնելու գործիք, ցաքան». ՆՀԲ-ում վկայված է մեկ օրինակ, որի բուն սկզբնաղբյուրը հստակ չէ. «Կոշտք տափանօք փխրին և մարմինն ճգամբ»: *Տափան*-ը Արմ.-ում ստուգաբանված չէ: Ըստ Է. Աղայանի *տափ, տափել, տոփել* ծագում են հ.-ե.*deph /*doph/ «խփել, բախել» արմատից[21]:



Կովկասյան լեզուներից է փոխառվել *խոփ*-ը:

*Հոսիչ* «կալսելու գործիք». բառի արմատի բնույթը պարզ չէ:

Ինչպես նկատելի է, երկրագործական առարկաներ մատնանշող բառերի շարքում առանձնանում է հ.-ե. բառաշերտը, որը հաստատումն է այն բանի, որ հնուց ի վեր հայերը հնտացած էին հողամշակության ասպարեզում: Այս հարցում այլ է մեծավաստակ Հ. Աճառյանի կարծիքը. «...հակառակ մեր երևակայածին,-գրում է Աճառյանը,- նախահայերը հարուստ չեն այս կարգի բառերով: Երկրագործական գործիքներից շատերի անունները, ինչպես *մաճ, խոփ, մանգաղ, գերանդի, տափան, ցաքան, հեծանոց, հոսելի* և այլն, հնդեվրոպական ծագում չունեն»[22]:

Նշենք, որ նորագույն՝ հետաճառյանական ուսումնասիրություններում նշված բառերից մի քանիսը՝ *գերանդի, տափան, ցաքան, հեծանոց* բառերը համարվում են բնիկ հայերեն: Նկատենք նաև, որ այդ կարգի համարյա բոլոր բառերը գործածական են հայերենի բոլոր լեզվավիճակներում:

## 9. ՊԱՐԱՆ, ՇՂԹԱ

Այս ենթախումբն են ներկայացնում հետևյալ բառերը.

*Ապաւանդակ* «պարան, չվան». վկայված օրինակներից երևում է, որ ավելի հաճախ կիրառվում է «վրանի պարան» իմաստով. «Մի շարժեսցին ցիցք խորանի նորա և մի խզեսցին ապաւանդակք նորա» /Ես., ԼԳ,20/: Իրանական փոխառություն է: Վկայված է 5-րդ դարից, թերևս միայն Աստվածաշնչում:

*Առասան* «պարան, լար, թել». «Առասան երեքկին ոչ վաղվաղակի խզեսցի»» /Ժող.,Դ, 12/: «Արկանել առասանս ի կապս կրծից գելարանացն» /Ագաթ., 39/: Կա և *առասանակ* «բարակ շղթա, լար»:

*Առատուկ.* ըստ Արմ.-ի «առասան կամ չուան, որով յանցաւորի ոտքերն ու գլուխը պրկում էին գելարանի մէջ». «Բերել կոճեղս փայտից և պնդել ուժգին առատկօք, մինչև իջանէր արիւն

ընդ եզերս ոտից» /Ազաթ., 61/: Հանդիպում է և *առատիկ* ձևով: Ծագումը պարզ չէ:

*Երկաթ.* ունի նաև «երկաթից պատրաստված շղթա» իմաստը:

*Լար.* հաճախական կիրառություն ունի, բնիկ հայերեն բառ է:

*Կառան* «պարան». վկայված է ուշ շրջանից, համարվում է արաբական փոխառություն. «Հատեալ զկառանս նաւին ետուն տանել ալեացն զնա» /Վարք հրնց, Բ, 150/:

*Կար* «լար, պարան». «Կապեցին զնա երիւք կարովք նորովք և հանին զնա ի վիմէն» /Դատ., ԺԵ, 13/: Բառի ծագումը ստույգ չէ:

*Կեմ* «խոտե չվան». «Մոյգս անգամ ոչ ագանէր այլ ամառն հեսկով պատէր և զձմեռն կեմով» /Բուզ., 225/: Բառը այժմ էլ գործածական է Ղարաբաղի բարբառում՝ «խոտի, հասկի ցողունից կապ, որով կապում են խուրձը»: Աճառյանը համարում է հունական փոխառություն: Գ.Ջահուկյանը հունարենից փոխառյալ լինելը կասկածելի է համարում /1987թ., էջ 617/:

*Հեսկ* «առագաստի պարան». «Ուսան գործել զկողմանակի հեսկս առագաստից» /Վարք հրնց, Բ, 353-354/: Բառն ունի նաև այլ գործառույթ /տե՛ս *Կեմ*/:

*Ձգարան* «լար». վկայել է Նարեկացին, ըստ երևույթին հեղինակի ստեղծած բառն է. «Եթէ յուսոյն ձգարան սուսերբն յանցանաց հատեալ կարեցի» /ՆՀԲ/:

*Ճամբարակ* «ճոպան կամ երկաթյա փոկ». ՆՀԲ-ը չի վկայում: Արմ.-ը վկայակոչում է Երեմիա Մեղրեցու բառարանը:

*Ճոպան* «պարան». «Ճոպան ի փողս եղեալ խեղդամահ արարին զնա» /Բուզ., 36/: Ծագումը պարզ չէ:

*Մալուխ* «հաստ պարան». հաճախական է և վկայված է 5-րդ դարից: «Դիւրին է մալխոյ մտանել ընդ ծակ ասղան, քան մեծատան յարքայութիւն աստծոյ մտանել» /ՆՀԲ/: Ասորական փոխառություն է:

*Շարաւանդ* «ոտքի կապ, չվան». ՆՀԲ-ը վկայում է երկու օրինակ: Վկայության ժամանակագրությունը ստույգ չէ: Անշուշտ իրանական ծագում ունի:

*Շղթա.* ասորական փոխառություն է՝ վկայված 5-րդ դարից:



*Չուան* «պարան, թոկ». « Կախեաց զնոսա չուանաւ ընդ պատուհանն» /ՆՀԲ/: Ծագումը ստույգ չէ:

*Պարան.* վկայված է 5-րդ դարից: Կա և անգիր շրջանից վկայված հատված. «...հանեալ զոսկեօղ շիկափոկ պարանն...» /Խոր./: Ծագումը ստույգ չէ:

*Պարաւանդ* «ձեռքի կամ ոտքի կապ». «Հրամայէ լուծանել նոցա զպարաւանդս ոտիցն» /ՆՀԲ/: Իրանական փոխառություն է: Կա և *պարաւանդել* «կապել, շղթայել»:

*Սարիք* «շղթա, կապանք». «Արձակեաց ... պարանոցէն շղթայիցն սարեաց» /Բուզ.,174/: «Եւ զաւետարանն սուրբ...կապէր պատէր երկաթի սարեօք» /Բուզ.,107/: Բնիկ հայերեն բառ է:

*Սիրայ* «պարան, լար, շղթա». «Նստէր և հիւսէր սիրայն» /ՆՀԲ/: Վաղ գրաբարում վկայված չէ: Հունարենից կատարված փոխառություն է:

*Տոռն* «թոկ». «Տոռն արկեալ ի պարանոցն Մեհրուժանայ...» /ՆՀԲ/: «Գնացի զկնի նորա... իբրև զշուն տոռամբ» /ՆՀԲ/: Արմատական բառարանում ստուգաբանված չէ: Ըստ Գ. Ջահուկյանի բառը բնիկ հայերեն է:

*Փոկ* «կաշվի նեղ և երկար շերտ». «Պրկեցին զնա փոկովք», «Լուծ և փոկ զպարանոց ամբարտաւանից խոնարհեցուցանեն» /ՆՀԲ/:

## 10. ՃՐԱԳ, ԼՈՒՍԱՏՈՒ ԱՌԱՐԿԱՆԵՐ

Գրաբարում *լույս* նախադաս բաղադրիչներով կան տասնյակ կազմություններ, որոնցից մի քանիսն են միայն, որ ունեն «ճրագ, ճրագարան» իմաստը: *Լուսակալ*-ը ՆՀԲ-ը մեկնում է «որպես ճրագարան, աշտանակ...կանթեղ»: Որոշ վերապահումներով այդ կարգի բառերից կարելի է համարել *լուսաբեր, լուսանցոյց, լուսանցք, լուսարան* բառերը /տե՛ս ՆՀԲ-ի բացատրությունները և օրինակները/:

*Պատուհան և երդ* բառերն էլ կարելի է ներառել այս ենթախմբում: Մյուս բառերն են. *աշտանակ* «ճրագակալ, ճրագարան».

«Եղեն ճրագունք լուցեալք իբրև ի վերայ աշտանակի» /Ագաթ., 353/, *բազմակ* «ճրագ, ճրագարան». «Բազմակացն արծարծիչ լուսոյն՝ ձէթ ի վերայ արկանել» /Փիլ., ՆՀԲ/, *բազմակալ* «ճրագ». «Եւ ճրագարանք իւրեանց եւ բազմակալք իւրեանց եւ տաշտքն և խնկամանքն...» /Բ.Մնաց., Դ, 21/, *բուծին* «պատրույգ». եզակի վկայությամբ հանդիպում է «Վեցօրեայում» /տե՛ս Արմ./, *լամբար*. «Ի բերանոյ նորա ղամբարք բորբոքեալք, եւ հատանին անկանին շանթք հրոյ» /Յովբ., ԽԱ, 10/, *լապտեր*. « Առին և ձէթ ամանօք ի լապտերս իւրեանց» /ՆՀԲ/, *կանթեղ* «ճրագ, ջահ». «Եւ լոյս... կանթեղացն բորբոքեալ տոչորէր» /Փարպ., 28/, *ճրագ, ճրագարան:*

*Մոմ*. բառարաններում հիմնական իմաստը համարվում է «մեղրամոմը», թեև ՆՀԲ-ը գրում է «...և լինի ազնիւ նիւթ ճրագի»: *Մոմ* արմատից կազմված *մոմեղէն*-ը ունի «ճրագ, ջահ» իմաստը. «Կանթեղօք և մոմեղինօք զմեռեալսն յուղարկէին» /Բուզ., 193/: Կա և *մոմակալ, մոմեղինակալ* «աշտանակ»:

*Ճրագ*. ըստ ՆՀԲ-ի «լոյս վառեալ յիւղոյ և ի պատրուգէ, լայնաբար՝ ջահ, լոյս, մոմ, լապտեր, կանթեղ, ճրագարան»: Այս արմատով են կազմված *ճրագաբերան, ճրագալոյց, ճրագակալ, ճրագակիր, ճրագաձեւ, ճրագարան* բառերը:

*Պատրոյկ, պատրոյգ* հաճախական կիրառություն ունի:

*Ջահ* «բոցավառ մարխէ ձող, վառած լոյս, կանթեղներով կախովի մեծ ճրագ» /Արմ./: Բառի ծագումը պարզ չէ: Այդ բառով կան մեծ թվով կազմություններ. *ջահաբորբոք, ջահագործութիւն, ջահազարդել, ջահազգեստ, ջահալից, ջահալուցութիւն, ջահակիր, ջահակից, ջահանալ, ջահանման, ջահապայծառ, ջահավառ, ջահավառել, ջահավառութիւն, ջահատու «լուսատու», ջահաւոր...*

Այս ենթախմբում դարձյալ գերակշիռ են իրանական փոխառությունները՝ *աշտանակ, բազմակ, ճրագ, մոմ, պատրոյգ:*

*Լամբար, կանթեղ*՝ հունարենից կատարված փոխառություններ են:

*Բուծին*-ը համարվում է ասորական փոխառություն:

*Լոյս* բաղադրիչով կազմությունները բնիկ հայերեն են: Հայակազմություններ են *կալ*-ով կազմությունները /մոմակալ, բազմակալ/:



# 11. ՆՍՏԱՐԱՆ, ԱԹՈՌ

Այս ենթախմբի բառերը շատ չեն, սակայն ուշագրավ են իմաստային նրբերանգների, փոխառյալ և բնիկ բառերի հարաբերակցության տեսանկյունից:

*Նիստ* արմատով *նստարան, նստելի, նստոց* «աթոռ, նստարան» հիմնականում ուշգրաբարյան վկայություններ են[23]:

Ներկայացնենք այս ենթախմբի բառերը:

*Աթոռ* «նստարան», նաև «գահ». առկայանում է մի շարք կազմություններում. *աթոռակ, աթոռակից, աթոռակալ, զուգաթոռ, նախաթոռ*: Հաճախական կիրառություն ունի 5-րդ դարից. ծագումը պարզ չէ:

*Բաղրոն/բաքրոն* «սանդուղքի աստիճան» իմաստից զատ ունի նաև «նստարան» նշանակությունը. «Եկեալ մերձ ի բաղրոնն՝ յորոյ վերայ անկեալ դնէր» /ՆՀԲ/: Բառը հունարենից կատարված փոխառություն է:

*Բազմել* «նստել». բայահիմքից առկայանում են *բազմական, բազմոց* բառերը: Երկրորդը վկայված է ուշ շրջանից:

*Բազմական*-ի հիմնական նշանակությունն է «սեղան նստածները». հմմտ. «Լցան հարսանիքն բազմականօք» /ՆՀԲ/: Երկրորդաբար կիրառվում է նաև «աթոռ, նստարան» իմաստով. «Արկ նմա բազմական ի գետնի զակումբն մաշկեայ» /ՆՀԲ/: Բառի արմատը իրանական է. *բազմական, բազմոց* հայակազմություններ են /բացառելի չէ *բազմականի* ամբողջապես փոխառյալ լինելը/:

*Բազրի* բառը ՆՀԲ-ը բերում է անեզական ձևով՝ նշելով «հենարան» իմաստը: Հ.Աճառյանը Ոսկեբերանի՝ «Գահոյս արծաթապատս մի՛ առնիցես, այլ այնպիսի մահճակս... մի՛ փղոսկրեայ գահոյս, մի՛ երիզապատ բազրիս» օրինակում նկատում է «պառկելու կամ նստելու տեղ «բազմոց» իմաստը, որից և *բազրոտն*՝ « գահույքի աստիճանները, ոտքերը»[24]: *Բազրի* բառի ծագումը անհայտ է:

*Բաստեռն* «դեսպակ, գահավորակ». վկայված է 5-րդ դարից: Փոխառություն է հունարենից:

*Բարձ*. հիմնական նշանակությունն է «գլխի տակ դնելու բարձ», որից ածանցյալ են «նստարան», «գահ» իմաստները. «Սպաս առնել տաճարին բարձիցն պատրաստութեան, զայր այր յիւրաքանչիւր գահ հրամայէր մատուցանել» /ՆՀԲ/: Իրանական փոխառություն է: Իմաստային նրբերանգները կարող են անցած լինել փոխատու լեզվից:

*Տախտ* «բազմոց, նստարան». իրանական փոխառություն է:

Հիշյալ ենթախմբում, ինչպես նկատելի է, գերակշիռ են դարձյալ իրանական փոխառությունները: Ստորև բերվող հոմանիշային շարքի բոլոր անդամներն էլ իրանական ծագում ունեցող բառեր են՝ իմաստային ընդհանրություններով ու նրբերանգներով:

*Գահ-գահաւորակ, դարգին-դեսպակ-ժանուար*. ընդհանրական են «նստարան, նստելատեղի, պատգարակ» իմաստներով: *Գահ* և *գահաւորակ* առանձնանում են նաև «թագավորի կամ իշխանավորի աթոռ» նշանակությամբ: Վերջինիս առնչվող *գահ*-ը ձեռք է բերել «պատիվ, իշխանական աստիճան» իմաստները:

*Դարգին*-ը թերևս «երկաթյա նստարան կամ մահճակալ»-ն է: *Տախտ*-ը նույնպես ունի «մահճակալ, անկողին» իմաստը. «Եղեւ տախտս փղոսկրեայս և արկին ի նմա անկողինս» /ՆՀԲ/: Սակայն բառը հիմնականում կիրառվում է «գահ, աթոռ, թագավորական գահույք» իմաստով. «Օրէնք էին, զի թագաւորն պարսից և թագաւորն Հայոց ի միում տախտի բազմէին ի միում գահոյս» /Բուզ., 142/:

*Դեսպակ և ժանուար* համախական չեն: *Ժանուար*-ը վկայել է Բուզանդը. «խնամոտ գթով ժանուարօք արձակեաց զնոսա զհետ Շապհոյ» /199/, «...որ արձակեաց զկանայս թագաւորին Պարսից Շապհոյ հանդերձ ժանուարօք» /163/: Ըստ երևույթին *ժանուար*-ը փոխադրամիջոց է, պատգարակ՝ բարձր խավի կանանց համար. այդ են հավաստում ինչպես վկայված երկու օրինակները, այնպես էլ բառի ստուգաբանությունը: *Ժանուար*-ը օգտագործել է նաև 17-րդ դարի հեղինակ Զաքարիա Քանաքեռցին, որը, հավանորեն Բուզանդի գործածած բառը օտար ու անհասկանալի գիտակցելով, թարգմանել է նոր պարսկերեն. «Եւ ի մտանել ի ժանուարն, որ քաւաճայ, հարկանէին զնա անողորմ»[25]:



Իրանական ծագում ունեցող *տապաստ* արմատով վկայված է և *տապաստակ*, ըստ ՆՀԲ-ի «բազմական. սփռեալ նստարան հանգչելոյ և ուտելոյ»:

«Գահաւորակ, դեսպակ» նշանակությամբ է և *լկտի* բառը, որն ըստ գրաբարի բառարանների հանդիպում է Ոսկեբերանի գործերում և հունարենից կատարված փոխառություն է:

* * *
*

Շարադրանքի տարբեր հատվածներում մասամբ անդրադարձել ենք բառակազմության առանձնահատկություններին: Նշենք այն վերջահար ձևույթները, որոնցով համեմատաբար մեծ թվով բառեր են կազմվում:

Ակ/անակ/- աշտանակ, բաժակ, գահաւորակ, գանձանակ, դանակ, երասանակ, ըմպանակ, ըմպակ, թիակ, ծուղակ, ճամբարակ, մահակ, նուիրակ, սկաւառակ, սրուակ:

*Ան* - գաւազան, դերձան, խարազան, խթան, կռան, հեծան, ճոպան, մական, չուան, պարան, ջնջան, ցաքան, տափան, փական:

*Ատ/հատ/*-ականատ, երակահատ, ցաքատ, փայտատ:

*Արան* - գելարան, լուացարան, խնկարան, կրակարան, ձգարան, ճրագարան, նստարան, պատկանդարան:

*Ի* - ածելի, աղօրի, բազրի, բառնալի, գերանդի, երկմտնի, լկտի, խառնելի, հանելի, սարի/ք/, ստորի:

*Իչ* - բրիչ, գանիչ, գրիչ, թափիչ, հոծիչ, հոսիչ, սրբիչ, վարիչ, քերիչ:

*Ոյր* – կահոյր, նքոյր, շագոյր, շարագոյր:

*Ոց/անոց/* - ազբոց, բազմոց, գզրոց, գելոց, թոպոլոց, ժամանոց, խարտոց, կթոց, կկոց, կտրոց, հեծանոց, նուիրանոց, շմբրոց, պրկոց, ջնջոց, սղոց, վարոց:

*Խանդ* - դանդանաւանդ, հրաւանդ, շարաւանդ, պարաւանդ, վարաւանդ:

## ՆՀԲ-ՈՒՄ ՉՎԿԱՅՎԱԾ ԲԱՌԵՐ

Այս խմբի տարբեր ենթաբաժինների վերաբերող բառեր կան, որոնք ՆՀԲ-ում արձանագրված չեն: Այբբենական կարգով ներկայացնենք դրանք՝ համապատասխան վկայություններով: /Չեն ներկայացվում այն բնագրային օրինակները, որոնք բերում է Արմ.-ը. կնշվի միայն բառը/:

*Ազրոց* «ջուլհակի սանր». «Իսկ կանայք յորժամ ոստայն անկանիցեն և զկայմսն ազրոցօքն բախիցեն» /Ոսկ., Պօղ., Ա, 806/:

*Ակնճափող* «փողովա՞կ». «...կացեալ ի մէջ պատուածովք ակնճափողացն, զոյգ ըմպակցացն բաժանէ» /Բրսղ, Պահ., 105/:

*Բահլիկ* «պատերազմական զրահ»:

*Գանիչ* «ծեծելու, հարվածելու գործիք». «Հրամայեաց... հարկանել զնա քբով, որ է աւազակուռ գանիչ» /Անկ. գիրք առաք., 364/:

*Գելան* «գելարան, տանջանքի գործիք». «...կապեալ երկաթի շղթայիւք և գելանիւ» /Դրասխ., 279/:

*Ըմբոց* «բաժակ». «...ընդ նմին և զըմբոցս եղջիւրեղէնս» /Կղնկտ., Շինզ., 272/:

*Ըմպարան* «բաժակ». «Այս է ըմպարան, որ կտակ է յարեան իմում» /Տիմ.Կուզ, 227/:

*Թաբուտ* «արկղ». «Երբեմն դնէր ի թաբուտ և ծովասույզ առնէր» /Օրբ., Պատմ., 421, փոխառություն է պարսկերենից/:

*Թարբ* «քակարդ». «Այլ թարբ կապեալ է փայտեայ...» /Կղնկտ., Շինզ., 421/:

*Խաղ* «թուր»:

*Խարազի* «մտրակ». «Այլուստ կողմանէ իբր խարազեաւ... զկողսն ծեծելով» /Փիլ., Բանք, 152/:

*Խիշտ* «նիզակ»:

*Կայծակալ* «դարբնի ունելի». «Նոցա գործիք արուեստին են ուռն և սալ և կայծակալք» /Ոսկ., Ճառք, 482/:



*Կայմ* «ջուլհակի գործիք». «...եւ ազբոցն և ստէծն ի ստեպ... ընդ միմեանս բախիցին և մանուանդ ընդ կայմսն» /Ոսկ., Պօղ., Ա, 806/:

*Կատինար* «փականք»:

*Կուղք* «մետաղե աման»:

*Հանելի* «պատառաքաղ, մսահան»:

*Հրաւանդ* «կասկարա». «Եւ զհրաւանդսն և զհանելիսն եւ զկաթսայսն» /ՆԳ.Բ.Մնաց., Դ, 16/:

*Հոոմափակ* «հունական փականք, կողպեք». «Կողոփս երկուս արծաթեղէնս՝ կապարեայ կնիք ի վերայ պնդեալ հոոմափակ» /Կղնկտ., 210/:

*Մեսուր* «մետաղյա ջրաման»:

*Միզաւառ* «անոթ միզելու համար». «...ամաչեմ ասել...որք միզաւառս արծաթիս գործեն ձեզ» /Ոսկ., Պօղ., Ա, 603/:

*Նիզակիկ* «Եւ ընկենոյր զոսկենկար վահանն ի թիկունս և զճաւճ նիզակիկն յահեակ բազուկն» /Օրբ., 275/:

*Նիւանդակ* «տեգ կամ վահան». «Վերեկակ երիվարաց... միջապինդ, չորս նիւանդակօք» /Ն.Բիւզ./:

*Շագոյր* «պայուսակ»:

*Ողոզ* «ուռկանի ծայրերը»:

*Ջղալուծ* «ջղերը հանելու տանջանքի գործիք». «Եւ... տանջանարանքն այնոքիկ... սուր երկսայրիք... և ջղալուծք» /Ն. Բիւզ./:

*Վերստորի* «ջուլհակի գլանը, որի վրա փաթաթվում է գործված կտավը». «Իբրեւ զվերստորի ոստայնանկաց» /ՆԳ.Ա.Մնաց., ԺԱ, 23/:

*Քաս* «փարչ»:

## ԾԱՆՈԹԱԳՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

1. Տե՛ս *Գ.Ջահուկյան*, Հայոց լեզվի պատմություն. նախագրային ժամանակաշրջան, Ե., 1987թ., էջ 115:
2. Տե՛ս *Հ. Աճառյան*, Հայոց լեզվի պատմություն, հտ. 1, Ե., 1940թ., էջ 183:
3. Տե՛ս *Գ.Ջահուկյան*, Հայոց լեզվի պատմություն, Ե., 1987թ., էջ 432:
4. *Կայթ*-ը Արմ.-ում ստուգաբանված չէ: Վ. Համբարձումյանը ենթադրում է հ.-ե. ծահում /տե՛ս «Լեզու և լեզվաբանություն», N1, 2006թ./:
5. Տե՛ս *Գ.Ջահուկյան*, նշվ. աշխ., էջ 436, 440:
6. Ն.տ., էջ 459:
7. Т. Гамкрелидзе, Вяч. Иванов, Индоевропейский язык и индоевропейцы, Тбилиси, 1984, стр. 655.
8. Տե՛ս *Գ.Ջահուկյան*, նշվ. աշխ., էջ 436:
9. Տե՛ս *Գ.Ջահուկյան*, նշվ. աշխ., էջ 440:
10. Տե՛ս Արմ., *Դալապր* բառահոդվածը:
11. Իմաստները նշում ենք ըստ Արմ.-ի:
12. *Գան* և *ծեծ* արմատներով կազմություններ կան. *գանալի, գանալից, գանահար, գանահարել/վինել/, գան հարկանել, գան ըմպել, բրածեծ, գանածեծ, ծեծել, ողորածեծ...*
13. *Յուպ*-ը Արմ.-ում ստուգաբանված չէ: Գ.Ջահուկյանը բառը համարում է բնիկ հայերեն /Ջահուկյան, 1987թ., էջ 48/:
14. *Քուր* բառի ծագումը պարզ չէ: Կարծում ենք՝ հնարավոր է *բուր* «ողբ, հառաչանք» - *բուր* «ծեծ, ծեծի գավազան» իմաստային անցումը: Այս դեպքում այն նույնպես պետք է համարել բնիկ հայերեն:
15. Այժմ կարելի է հավաստի համարել *կարիճ*-ի իրանական ծագումը /տե՛ս Լ. Հովհաննիսյան, 1990թ., էջ 242-243/: *Կարիճ* «փշոտ գավազան» իմաստը, անշուշտ, ձեռք է բերվել հայերենում, ուստի փոխառության համարելը պայմանական է:
16. *Մահակ*-ի իրանական ծագման մասին տե՛ս Լ. Հովհաննիսյան, 1990թ., էջ 251:



17. *Վարոց*-ի *վար* արմատն իրանական է. բառը հայակազմություն է:
18. Генетические, ареальные и типологические связи языков Азии, М., 1983, с. 140.
19. *Գուրան* ձևով օգտագործված է բարբառներում: Բառի մասին մանրամասն տե՛ս Արմ., *Գուրայ* բառահոդվածը:
20. Տե՛ս *Գ.Ջահուկյան*, 1987թ., էջ 125: Գ.Ջահուկյանը բնիկ հայերեն է համարում և *հեծանոց*-ը:
21. *Է.Աղայան*, Բառաքննական և ստուգաբանական հետազոտություններ, Ե., 1974թ., էջ 143-146:
22. *Հ.Աճառյան*, Հայոց լեզվի պատմություն, մաս Ա, 1940թ., էջ 124:
23. Տե՛ս ՆՀԲ-ի հիշյալ բառահոդվածները: ՆՀԲ-ն ունի *նստիք* «գահաւորակ», որը Արմ.-ը սխալ է համարում և ուղղում՝ *նստի* «նստում է» /տե՛ս Արմ., *Նիստ* բառահոդվածը/:
24. Տե՛ս Արմ., *Բազրի* բառահոդվածը:
25. *Զաքարեայ Սարկաւագի* պատմութիւն, Վաղարշապատ, 1870թ., էջ 199:

## ԳԼՈՒԽ ՉՈՐՐՈՐԴ

## ԿԵՆԴԱՆԱԿԱՆ ԱՇԽԱՐՀ

Մարդկային նախնական մտածողությամբ կենսաշխարհը կամ կենդանի աշխարհը ներառում էր և՛ կենդանական, և՛ բուսական աշխարհը, որը հ.-ե. նախալեզվում արտահայտվում էր k'i-k'ei-արմատով՝ թողնելով հետքեր ժառանգ լեզուներում[1]: *Կենդանի աշխարհ* ընդհանուր այս հասկացությունը տրոհվում է նաև «շնչավոր» և «անշունչ»-ի:

Մարդկային հասարակության և մտածողության զարգացման, իրական աշխարհի հետ մարդու հարաբերության փոփոխության հետ փոխվում է նաև մարդու կողմից կենդանական աշխարհի ընկալումն ու գնահատումը:

Հնագույն միֆական ընկալմամբ աշխարհը ներկայանում է ծառի տեսքով, որի տարբեր մասերում՝ ճյուղեր, բուն, արմատ, տեղավորվում էր ողջ կենսաշխարհը: Սրանից բխող և ավելի իրական դասակարգում էր *վերին աշխարհի* կենդանիներ, այսինքն՝ թռչուններ, *միջին աշխարհի*՝ երկրի վրա ապրող կենդանիներ, և *ներքին աշխարհ*՝ սողուններ, զեռուններ: Բնականաբար, նախնական այս մտածողությամբ *միջին աշխարհի.* կենդանիների շարքում միայն վայրի կենդանիներն են, քանի որ *աշխարհների* բաժանման և *համաշխարհային ծառի* ըմբռնումը նախորդել է վայրի կենդանիների ընտանեցման գործընթացին: Հայերը, *վերին աշխարհի* ներկայացուցիչներին անվանում են թռչունք, օդագնաց, օդախաց, թևաւոր, օդային, օդապարիկ, *միջին աշխարհ*՝ ցամաքային, ցամաքական, գետնագնաց, *ներքինը*՝ սողունք, *ճճի, որդ, զեռուն* /վերջինս բազմիմաստ է/:

Կենդանիների ընտանեցման գործընթացին զուգահեռ՝ սկսում են տարբերակվել *ընտանի կենդանի, վայրի կենդանի* հասկացությունները՝ հաճախ միևնույն կենդանուն՝ վայրի և ընտանեցվածին տալով տարբեր անվանումներ. առն «վայրի արու ոչխար» - *ոչխար, վարազ* «վայրի խոզ» - *խոզ, այծեամն* «վայրի այծի տեսակ» - *այծ*... և այլն:



*Կենդանական աշխարհը* նաև արտացոլվում է մարդկանց հավատալիքների, ծիսական արարողությունների մեջ՝ կենդանիների պաշտամունքից մինչև զոհաբերություն: Ուշագրավ է, որ հին հնդեվրոպական ավանդույթներում առանձնանում են «աստվածային կենդանիներ», որը խեթերենում այդպես էլ արձանագրվում է՝ šinnaš huitar[2]: Հետաքրքրական է այն, որ այդ կարգի կենդանիները վայրի կենդանիներն են /ուժի, ճարպկության խորհրդանիշներ/:

*Կենդանական աշխարհի* ներկայացուցիչները նաև այլ կարգի խորհրդանիշներ են՝ չարի, բարու, վախկոտության, խորամանկության...: Իհարկե, այս կամ այն կենդանու «խորհրդանշացումը» պայմանավորված է տվյալ հանրության ուրույն մտածելակերպով, վերջինս էլ՝ աշխարհագրական միջավայրով, բնակլիմայական պայմաններով, կենդանական և բուսական աշխարհի առանձնահատկություններով և մի շարք այլ գործոններով: Օրինակ, եթե Հին Եգիպտոսում *կատուն* համարվում էր սուրբ կենդանի, ապա հնդեվրոպական միջավայրում այդպես չէր: Կամ նույն հ.-ե. ծագում ունեցող ժողովուրդների շրջանում՝ իրենց բնակության նոր վայրերում, աշխարհագրական, պատմական նոր միջավայրում ի հայտ են գալիս *կենդանական աշխարհի* «գնահատման» նոր չափանիշներ:

Հայ մատենագրության մեջ վկայված են բազմաթիվ կենդանանուններ: Ինքնուրույն գրականության մեջ, բնականաբար, վկայվում են մեր լեռնաշխարհին բնորոշ կենդանիները /եթե մանավանդ այդ լեռնաշխարհի նկարագրությունն է, իսկ օտար աշխարհների նկարագրության դեպքում նաև բերվում են տվյալ միջավայրին բնորոշ ու զոնե հեղինակին ծանոթ կենդանանուններ: Զանազան առասպելների կամ առասպելապատում շարադրանքներում ու հատվածներում բերվում են նաև առասպելական, ոչ իրական կենդանանուններ/: Թարգմանական գրականության մեջ շատ և բազմազան են կենդանանունները, քանզի այդ գրականությունը ավելի բազնաժանր է, վերաբերում է տարբեր ժողովուրդների ու երկրների:

Եթե փորձենք ամենաընդհանուր ձևով ներկայացնել *կենդանական աշխարհի* վերաբերյալ գրաբար մատենագրության մեջ ավանդված ըմբռնումները, ապա կարող են առանձնացվել.

ա/ *Իրական և առասպելական կենդանիներ:* Առասպելական կենդանիները աշխարհընկալման ուրույն արտացոլումներ են: Ինքնուրույն գրականության մեջ դրանք այնքան էլ բազմաթիվ չեն. *պայ, նհանգ, վիշապ, ծովացուլ...* «եթէ ոչ նհանգ անձնաւոր, ոչ երբեմն ի կնոջ կերպարանս երևէր և երբեմն փոկ լինէր» /Եզն., 106/: «Իբրև զծովացուլն, զոր ի կովէ ելեալ ասեն» /Եզն., 98/: «Ոչ երբէք ի մարդկանէ ելեալ պայն, եթէ առ երես արարած իցէ» /Եզն., 99/:

Այս կարգի կենդանանունները ավելի շատ են թարգմանական գրականության մեջ, ու հայ թարգմանիչը դրանք կա՛մ թողնում է նույնությամբ, կա՛մ էլ փորձում է թարգմանել կամ նկարագրել. *բասիլիկոն, բոնաժանի, դրակոնտես, եգնախոյ, զուարակափիղ, ընգղայ, լեւիաթան* «ծովային վիշապ», *ձիացուլ.* «Եւ այլոց` յետոյ կուսէ ձիոց կերպարանք և առաջոյ` մարդկան, որ ձիացլուց յուշկապարիկ կերպարանս ունիցին» /Եւս., Քր., 1, 22/:

Թարգմանական գրականությունից բերենք մի փոքրիկ հատված. «Որչափ ինչ զճառս առանցելոցն յանձին նկարեն, առաւել աւելի քան զայնպիսեացն, որք զձիացուլսն ի քմաց ստեղծանեն և զքիմառսն, այսինքն որ զվիշապառիծ քաղսն համբաւեն և զայլսն նոյնպիսիս վիշապոտունս և զոր սկիւղսն անուանեն, որ թարգմանի ապուռք. որպէս և հայք ծովացուլս իմն և վիշապս մարդակերպս և պայս և առլեզս համբաւեն: Եւ այսու յայտ առնեն թէ առասպելս իմն ի քմաց կարկատեն...» /Ոսկ., Պօղ., Ա, 602/:

Հաճախ հայ թարգմանիչը, նույնությամբ ներկայացնելով օտար անվանումները, ավելացնում է *որ կոչի, որ թարգմանի*՝ հուշելով, որ բառը իրոք օտար է, օտար է և հասկացությունը. «Եւ առ նովաւ ... դարձեալ ի կարմիր ծովէ այլում ումեմն` նման ձկան և մարդկան, որում անուն կոչէր ովդակոն» /Եւս., Քր., 13/:

բ/ *Ընտանի և վայրի կենդանիներ:* Առաջին խումբը բնորոշվում է *տնասուն, ձեռնասուն, ընտանի, ձեռնընդել,* երկրորդը՝ *վայրի, վայրենի* ածականներով. «Տնասուն կենդանեացն մարդիկ խնամողք են, իսկ վայրենեացն` աստուած» /ՆՀԲ/: «Կենդանիսմանք ձեռնընդելք են» /ՆՀԲ/: «Զվայրենի անասունս, զոր ձեռնասուն արարեալ էր» /ՆՀԲ/: «Որպէս ի մեղուսն և ի խորդսն և ի ճահուկս վայրենի ոչխարացն» /Ոսկ., Պօղ., Բ, 329/: «Ուստի՞ կերակրին թռչունք և կամ վայրենի երէք» /Ոսկ., Պօղ., Բ, 393/: *Վայրենի* ածականը գործածվում է նաև թռչունների, բույսերի, առանձին կենդանանունների հետ. *ցլուց վայրենեաց, հաւուց վայրենեաց, ձիթենի վայրենի...* և այլն:

Երբեմն տրվում են «ընտանի», «վայրենի» բնութագրումները. «Զի ոչխար ոչ կարէ երբէք լինել վայրենի, քանզի բնութեամբ ընտանի է, և գայլ ոչ լինել ընտանի, քանզի բնութեամբ վայրենի է» /Ոսկ., Ճառք, 554/:

Գ/ *Պիղծ և ոչ պիղծ կենդանիներ:* Այս առանձնացման հիմքում ընկած է տվյալ կենդանու միսը ուտելի կամ ոչ ուտելի լինելու, սրա հետ կապված զոհաբերելու կամ չզոհաբերելու հանգամանքը /սուրբ կամ անսուրբ անասուն/: Այս կարգի կենդանիների տարբերակման բազմաթիվ հատկանիշներ կան: Բերենք մի քանի վկայություններ. «Քանզի յաւանակ ընդ պիղծ անասունս է համարեալ. զի զամենայն որ ոչ կճղակաhերձ իցէ և ոչ որոճիցէ, ընդ պիղծ անասունս զատեալ որոշեաց Մովսէս. եւ էշ քանզի ոչ կճղակահերձ է և ոչ որոճայ, ընդ անսուրբ անասունս է համարեալ» /Եմես., Ճառ., ԺԳ/[3]:

Պիղծ և ոչ պիղծ կենդանիների մասին առաջին վկայությունները Աստվածաշնչից են: Ահա Մովսեսի մի պատգամը. «Խոսեցարուք ընդ որդիսդ Իսրայելի եւ ասացէք: Այս անասունք են զոր ուտիցէք յամենայն անասնոց որ են ի վերայ երկրի: Զամենայն անասուն թաթահերձ և կճղակաւոր, որոյ յերկուս բաժանեալ իցեն թաթքն եւ որոճիցէ, յանասնոց` զայն կերիջիք: Բայց յանցանէ մի՛ ուտիցէք, որք որոճիցեն և կճղակահերձ ոչ իցեն. ուղտ զի որոճայ եւ կճղակն ոչ բաժանի, պիղծ իցէ նա ձեզ: Եւ նապաստակ զի որոճայ եւ թաթն ոչ բաժանի պիղծ իցէ նա ձեզ...» /Ղեւտ., ԺԱ, 2-8/:

Նշվում են նաև ջրային կենդանիները և թռչունները. «Եւ այս իցեն ի թռչնոց յորոց զարշիջիք... արծուի եւ պասկուճ եւ գետարծուի, եւ անգղ, ցին, ...ագռաւ, ...ջայլեամ, բու, ...բազէ...» /Ն.տ., 13-22/:

Սողունները կամ գետնի տակ բնակվող կենդանիները նույնպես պիղծ են համարվում /Ղ.տ.,ԺԱ, 29-31/:

Ինչպես նշել ենք, ոչ պիղծ կենդանիները նաև զոհաբերության կենդանիներ են: Դրանց ընտրությունը տարբեր ժողովուրդների շրջանում տարբեր սկզբունքներով է եղել: Օրինակ՝ Հերոդոտոսի վկայությամբ, եթե եզան վրա թեկուզ մի հատիկ սև մազ նկատվի, ապա հին եգիպտացիներն այն համարում է ոչ սուրբ[4]:

Զանազան կարգի տեղեկություններ կան նաև կենդանապաշտության վերաբերյալ: Այս պաշտամունքը պայմանավորված է մի շարք գործոններով՝ հավատալիքներ, աշխարհագրական տարածք, բնակլիմայական պայմաններ, տնտեսության մեջ տվյալ կենդանու օգտակարություն: Երբեմն հաշվի է առնվում ուժը, գեղեցկությունը, ձայնը, նաև այդ կենդանիների հանդեպ ունեցած վախը, սարսափը: Պավլիկյան շարժման ժամանակաշրջանի որոշ աղանդների ներկայացուցիչներ ունեին կատվի պաշտամունք, որովհետև կատուները ոչնչացնում էին մկներին:

դ/ *Գազան-ոչ գազան:* Սա կենդանիների տարբերակումն է «գիշատիչ-ոչ գիշատիչ» հատկությամբ: *Գիշատիչ* բառը գրաբարում գործածական չէր: Այդ իմաստով գործառում էին *գիշախանձ, գիշակեր* բառերը. «Առիւծ կամ արջ գիշախանձ»: «Իբրև շունք գիշախանձք» /ՆՀԲ/: «Ոմանք գիշակերք, ոմանք կտակերք» /ՆՀԲ/:

Եմեսացին «գազան-ոչ գազան» տարբերակման մի ուրույն հատկանիշ է առաջադրում. «Եւ զգազանսն այնու զատանէ, զի առաջին ոտքն չեն իբրև զայլ չորքոտանեաց, այլ մանաւանդ թէ ձեռք իսկ, որպէս շուն և ինձ և նոյնպէս այլ ևս նոյնպիսիքն: Իսկ այլ չորքոտանիքն որ ոչ իցեն գազանք, յորժամ ի գուճ հարկանիցեն, զառաջին ոտսն պորտիւն ամփոփեն իբրև զգազանս և զառաջին թաթսն ոչ նոյնպէս, քանզի արմկունս իբրև զմեզ ունին, որպէս ի մաւտաւոր գազանս է իմանալ, յարջոյ, ի շանէ, և յառեւծէ և որ այլ ինչ նոյնպիսի իցէ» /Եմես., Մեկն., 126-127/:

Նկատենք, որ *գազան*-ը գրաբարում բազմիմաստ է, և ՆՀԲ-ը մեկնում է «Կենդանի վայրենի և պատառօղ, որ և *էրէ,* որպիսի են չորքոտանիք առանձնակեացք՝ դժնեայք, ճիրանաւորք, ժանևորք և



կատաղիք յերէ վայրիս»: Գազան է անվանվում և փիղը: Երբեմն գազաններ են դիտվում օձերը, վիշապները, ծովային կենդանիները. «Գազանք ծովու ուտեն զմարմինս...գազանք ցամաքի զմարմինս պատռեն և զոգին ապականեն» /Վկ. արև., 53/:

Անշուշտ, կարելի է նաև այլ դասակարգումներ կատարել, ինչպես՝ «կաթնասուն-ոչ կաթնասուն», «եղջերավոր-ոչ եղջերավոր», ... «խոտակեր-ոչ խոտակեր» և այլն:

Ընտանի կենդանիների դասակարգման հիմքում կարելի է դնել այլ հատկանիշներ՝ «բեռնակիր-ոչ բեռնակիր», «լծկան-ոչ լծկան». հմմտ. «Որ տեսուչք են եզանց հողագործաց և գրաստուց բեռնակրաց» /ՆՀԲ/: «Էշ բեռնակիր» /ՆՀԲ/: Եվսեբիոսի «Մեկնութեան» մեջ *էշ*-ը բոլորովին պիտանի չէ արտ վարելու գործում. «Քանզի ոչ իսկ իշոյ գործ է արտ վարել այլ զի յոյժ զաւրագոյն է եզն՝ աշխատի և նա զի չունի իւր զուգան... եւ էշն տկար է և տխմար գործոյն» /Եւս., Մեկն., 147/:

Հ. Որոտնեցին տալիս է այլ բնույթի դասակարգում. *արիւնաւոր- անարիւն, հազագասփիւռ-ոչ հազագասփիւռ*. «Եւ զցամաքայինն յարիւնաւոր...որպէս մարդ, ձի, ոչխար, իսկ անարիւն՝ որպէս մարախ, մրջիւն և մեղու...և դարձեալ բաժանէ ի հազագասփիւռս...որպէս մարդ, եզն, ուղտ և ոչ հազագասփիւռ՝ ճանճ և մրջիւն» /ԲՄ, 3, 373/:

*Կենդանանունների ծագումնաբանական շերտերը*

Հայերենում վկայված ընտանի և վայրի կենդանիների անվանումները պատկանում են ծագումնաբանական տարբեր շերտերի:

ա/ Բնիկ հայերեն բառեր

Կենդանական աշխարհին վերաբերող հիմնական անվանումները հ.-ե. ծագումով բնիկ հայերեն բառեր են:

*Ընտանի կենդանիներ* - ամիկ «մի տարեկան ուլ», այծ, անդի/եայ «արջառ, նախիր», աւդի «ոչխար», բուծ «կաթնակեր գառնուկ», գառն, եզն, երինջ, էշ, ընջուղ «երինջ», կով, կորիւն, ձի,

ձուկն, մաքի, մոզի, շուն, որոջ «գառնուկ», սկունդ «շուն», որթ, ուլ, ցուլ, տուար, քաղ «արու այծ»:

*Վայրի կենդանիներ* -աղուէս, առիւծ, առն, արջ, բորենի, գայլ, գորտ, եղն «էգ եղջերու», երէ, իննձ, լուսան, խոյթ «կոկորդիլոս», կրայ /կրիայ/, կոր «կարիճ», կորիւն, մուկն, ոզնի:

*Միջատ, սողուն, զեռուն* - անիծ, բոռ, բրէտ, թիթեռն, իժ, լու, թրթուր, կէտ, մեղու, մլուկ, կոյաղնդիռ /կոյ «աղբ»/, մուն, մրջիւն, սարդ, տիզ, ուտիճ, քարբ, օձ:

Կարող ենք նշել բարբառային ձևերը՝ *բորեկ* «թուխ կով», *գիշերի* «կզաքիս», *մղմող* «ցեց», *կռհաքի* «կարիճ»:

*Տուար* «արջառ» հին մատենագրության մեջ անկախաբար չի կիրառվել /կամ մեզ չի հասել/, բայց այդ արմատից ունենք *տուարած, տուարածական* «հովիվ», *տուարածատափ* և այլն: Բարբառներում *տավար* «խոշոր եղջերավոր», «անասուն» հաճախական է:

Նկատելի է, որ հայերենում քիչ են ջրային կենդանիների հ.-ե. անվանումները, թերևս միայն *ձուկն*, իսկ *խոյթ, խիթ /խութ/* «կոկորդիլոս» վկայված է ուշ շրջանից՝ «Վարք Հարանցում» /տե՛ս ՆՀԲ/. խիթ/խութ-ը բազմիմաստ է /տե՛ս ՆՀԲ, Արմ./, նշանակում է նաև «ծովի մեջ գտնվող ժայռ, խութ»: Ինչպես նշում է Արմ.-ը, «կոկորդիլոս» նշանակութիւնը ածանցւում է «քար, ժայռ» գաղափարից. հմմտ. 1. *խեցի* «թրծած կաւ», 2. խեցեմորթի պատեան, 3. «կոկորդիլոս», *խոյթ* «կոկորդիլոս», կոկորդիլոս հունարեն բառը «բուն նշանակում է «քարերի որթ» /Տե՛ս Արմ., *Խիթ* բառահոդվածը/:

Հայերենը չի պահպանել *խոզ*-ի հնդեվրոպական անվանումը / sus/: *Խոզ* Արմատական բառարանում ստուգաբանված չէ: Գ. Ջահուկյանը հնարավոր է համարում նաև ակկադական ծագումը /1987, էջ 472/: Մեր համոզմամբ բառը իրանական ծագում ունի /տե՛ս Ծան., 11/:

*Ամիկ* «մի տարեկան արու ուլ». բարբառային *ամլիկ* ձևի /Ղարաբաղի բարբառ/ համար Աճառյանը հավանական է համարում թրք. emlik «կաթնակեր գառնուկ»: Մեր կարծիքով բարբառային ձևն էլ հ.-ե. *ամ*-իկ-ից է, իսկ Ղարաբաղի բարբառում –*լ*-ի հավելման այլ օրինակներ կան. հմմտ. *կարճ-կարճլիկ:*



*Կրայ/կրիայ* բառի հ.-ե. ծագումը փաստարկում է Է. Աղայանը՝ հ.-ե. *geu արմատից՝ հայ. «տաշտ, նավակ»: Ուշադրության է արժանի այն հանգամանքը, որ «Մեղրու բարբառում, ինչպես և ամբողջ Մեղրու շրջանում կրիային կոչում են «*տաշտակ»*[5]:

*Կոր* «կարիճ» բառը գրաբարի բառարանները դիտում են որպես հետին վկայություն, ռամկական ձև: Ըստ Արմ.-ի հայերեն կոր «ծուռ» բառից է և իրավացիորեն համեմատվում է թրք. *կըռըհաքի* /կեռ ագի/ «կարիճ»-ի հետ: Արմատական բառարանում *կոր*-ը ստուգաբանված չէ: Այժմ ակնհայտ է այդ բառի հ.-ե. ծագումը: Ըստ Ջահուկյանի՝ այն հ.-ե. goųoro–ից է /1987, էջ 176/, ըստ Աղայանի՝ հ.-ե. *ger արմատից /1974, էջ 102-108/: Ուրեմն՝ անկախ վկայության ժամանակաշրջանից, բառը հին է, որը, սակայն, հնուց գրավոր չի ավանդվել:

*Թիթեռն.* վաղ գրաբարում վկայված չէ:

*Լուսան.* հին մատենագրության մեջ գործածված է մեկ անգամ /Արմ./: Ղարաբաղի բարբառի *լիւսեմն*-ը ծագում է հին *լուսեմն, *լուսամն ձևից:

*Քաղ* «այծ, նոխազ». հ.-ե. ծագումը ընդունում է Ջահուկյանը /1987, էջ 130, 208/: Ինչպես նկատում է Գ. Ջահուկյանը՝ «Հայերենը հարուստ է ինչպես վայրի, այնպես էլ ընտանի կենդանիների բնիկ հնդեվրոպական անուններով: *Որս, երէ, թակարդ, թարբ* բառերը ցույց են տալիս որսորդության և ձկնորսության տարածվածությունը, սակայն ձկնորսությունը կապված է եղել ավելի շատ գետերի ու լճերի հետ, և ձկնատեսակների բնիկ հնդեվրոպական անվանումներն շատ քիչ են: Զարգացած անասնապահության մասին են խոսում ոչ միայն *կով, եզն *հովի* «ոչխար» /*հովիւ* բառում/, *այծ* բառերի և նրանց տարբեր հասակների անվանումների առատությունը՝ *հորթ, մոզի, երինջ, որոջ, գառն, ուլ* և այլն, այլև այնպիսի անասնապահական տերմիններ, ինչպիսիք են՝ *հաւրան* «հոտ», *արածեմ, հովիւ, ստերջ, տուար,* թերևս նաև *գոմ:* Հայերին հայտնի են *շունը, ձին* /բայց ոչ տարածված հնդեվրոպական անվանումներով/, *էշը*: Վայրի կենդանիների անուններից սովորական են՝ *գայլ, արջ, աղուէս, իննձ, լուսան, ոզնի: Առիւծ* և *կորիւն* անվանումները կազմված կամ մասնավորված են ավելի

ուշ՝ հնդեվրոպական համապատասխան հիմքերի վրա» /Ջահուկյան, 1987, էջ 260/:

Ջահուկյանի այս նկատառումները վերաբերում են վաղնջահայերենին, իսկ գրաբարում ավելի շատ են կենդանանուններին ու կենդանական աշխարհին, այդ թվում և ձկնորսությանը վերաբերող հ.-ե. անվանումները:

Անդրադառնանք տարածված մի քանի հնդեվրոպական անվանումների իմաստագործառական յուրահատկություններին՝ որոշ դեպքերում զուգահեռներ անցկացնելով հ.-ե. այլ լեզուների տվյալների հետ:

*Կով.* այս բառի ընդհանուր հ.-ե. հիմքը վկայված է հիմնական հ.-ե. հին բարբառներում, ընդ որում առանց սեռի տարբերակման /Гамкрелидзе, Иванов, 565/: Այսինքն՝ սկզբնապես տարբերակված չեն եղել *կով, եզ, ցուլ* հասկացությունները. հմմտ. հ. հնդկ. gauh «եզ, կով», ավեստ. gaoš «ցուլ, կով», լատ. bos, սեռ. bouis «եզ, կով» և այլն: Իրանական լեզուներում մի շարք այլ կենդանանունների կազմության մեջ առկայանում է դարձյալ այդ արմատը. գոմեշ, /պրս.gāvmeš, միջ. պրս. gau-maeša, բառացի՝ արջառախոյ/: Այս արմատն է և պրս. gusfand «ոչխար» բառում:

Հայերենի գրավոր շրջանից արդեն *կով*-ը, ի տարբերություն հ.-ե. համապատասխան արմատի, դրսևորում է սեռային տարբերակվածություն: Հմմտ. նաև նույն արմատից *կոզի* «կարագ» բառը: Հավանորեն նախագրային ինչ-որ շրջանում հայերենը նույնպես այդ տարբերակումը չի ունեցել:

*Ոչխար* հասկացության ընդհանուր հնդեվրոպական հիմքը վերականգնվում է *hoẉi ձևով /Гамкрелидзе, Иванов, 577/: Հայերենը այս արմատը պահել է *հով-իւ* և *աւդի* բառերում: *Աւդի* «ոչխար» վկայված է 5-րդ դարից: Թեկուզ բառը այնքան էլ հաճախական չէ, սակայն նրանից կազմված *օդիկ /աւդիկ/*-ը «ոչխարի մորթի, մորթուց պատրաստած հագուստ», որը նույնպես վկայված է 5-րդ դարից, հաստատում է, որ գրաբարյան փուլից առաջ բառը լայն կիրառություն ուներ:



Հայերենը չի պահպանել *ձի*-ու հնդեվրոպական տարածված անվանումը նույն իմաստով /*eḱṷo-ի *eikuo տարբերակը տվել է *էշ* /Ջահուկյան, 1987, էջ 260/:

Ինչպես նկատում է Գ. Ջահուկյանը՝ «էշ բառի հատկացումը հ.-ե. *eḱṷo* «ձի» հիմքին կասկածներ է հարուցում և՛ իմաստով, և՛ հնչյունապես: Սակայն իմաստային նման անցումը անհնար չէ, իսկ ինչ վերաբերում է հնչյունական կողմին, ապա կարելի է ասել հետևյալը. էշ-ոյ ձևը ենթադրում է **eiḱṷo*-ի կողմնակի ձև, որի առկայությունը հաստատվում է նույնպես անբացատրելի համարվող հուն. *իպպոս* «ձի» բառի առկայությամբ» /Ջահուկյան, 1987, էջ 163/:

Համենայն դեպս հայերենում *ձի-էշ* հասկացությունների անցումը ընդունելի է համարվում: Այդ և այլ հարակից հարցերի մասին ուշագրավ դիտողություններ ունի Ռասելը:[6]

Թե այդ անցումը երբ է կատարվել, դժվար է ասել, բայց Ռասելը նկատում է, որ հին հայերը սովորություն ունեին մարդկանց անուններ տալ կենդանիների անուններով, բայց «ձի» և «էշ»-ով անձնանուններ չկան: Հայերին հարևան իրանցիները «ձի» aspa բառով անձնանուններ ունեն, որից էլ հայերին անցած Շավասպ, որն իրավամբ համարվում է նախապարթևական անձնանուն: Ռասելը ուշադրության արժանի է համարում Է. Հեմպի մի դիտարկումը, թե «ձի»-ով հատուկ անունները հավանաբար կորել են, երբ բառը սկսել է կիրառվել «էշ» իմաստով: Նկատված է, որ արդեն մեր մատենագրության սկզբնավորման շրջանից, *էշ*-ը նաև ի տարբերություն *ձի*-ու արդեն նվաստացուցիչ երանգ ուներ:

Անդրադառնալով *իշայր* տեղանվանը, և որ *այր*-ը տեղանուններում հաճախ նշանակել է «քարանձավ», ոչ թե «մարդ» /հմմտ. բազնայր/, Ռասելը հավանական է համարում, որ նկատի է առնվել *վայրի էշ*-ը /*գիռ*/, որը ազնիվ կենդանու համբավ ունի: Նա նշում է նաև, որ *վայրի էշ*-ի /միջ. իրան. gur , հայ. իշավայրի/ արքայական որսի կենդանի էր, որի անունը իբրև մակդիր է վերցրել սասանյան Բահրամ Գուռը /ն.տ., էջ 50/:

Ինչևէ, փաստը մնում է փաստ, որ *ձի* հասկացությունն արտահայտող հ.-ե. արմատով հայերենում ի հայտ չեն գալիս այդ հասկացությանն առնչվող զանազան անվանումներ:

Դրանք փոխարինված են իրանական aspa «ձի» բառով: Մեկ այլ տեղ կնշենք *ձի*-ու հոմանիշները և իրոք կհամոզվենք, որ այդ հասկացությունն արտահայտող բառերի գերակշիռ մասը իրանական ծագում ունի: Ի՞նչն է պատճառը: Կարծել, թե ձիաբուծությունը Հայաստանում ավելի ուշ է սկսել զարգանալ քան հարևան Իրանում, ճիշտ չէ: Ձիաբուծությունը աշխարհագրական այդ տարածքներում երևի թե սկսել է զարգանալ միաժամանակ: Ավելին, Հայաստանը աքեմենյան շրջանից որպես հարկ հազարավոր ձիեր էր մատակարարում իրանական բանակին: Հայերենում այդ բնագավառի բնիկ բառերի բացակայությունը մենք հակված ենք բացատրելու իրանական փոխառությունների ազդեցությամբ: Իսկ լեզուների փոխառնչություններ այդպիսի դեպքերում լինում են: Օրինակ՝ միամտություն կլինի կարծել, թե հայերենը չի ունեցել գույների բնիկ հ.-ե. անվանումներ, որովհետև գունանունները աշխարհընկալման յուրօրինակ դրսևորումներ են, էթնիկական մտածողության առանձնահատկություն, բայց 5-րդ դարի տվյալներով փաստորեն միայն *դեղին*-ն է, որ բնիկ հայերեն է: Մյուսները, որ անշուշտ եղել են, փոխարինվել են իրանական ծագում ունեցող բառերով. կարմիր, սեաւ, կապոյտ, սպիտակ, ճերմակ[7]:

Այդպես են դուրս մղել և *ձի*-ուն առնչվող զանազան հասկացությունները:

Ինչպես նշված է Գամկրելիձեի և Իվանովի գրքում, ընդհանուր հնդեվրոպական փուլում *գայլ* նշանակող մի քանի ձևույթների առկայությունը վկայում է այդ գիշատչի էկոլոգիական տարածվածությունը հ.-ե. ցեղերի բնակության տարածքում, ինչպես նաև նրա պաշտամունքային և ծիսական նշանակությունը, որը հստակ արտահայտված է հնագույն հնդեվրոպական ավանդույթներում /492, 493/: Հեղինակները այս միտքը հաստատում են բազմաթիվ օրինակներով:

Այս հնագույն երևույթը արտացոլվում է նաև հայերենում: Նկատենք մի քանիսը: Խեթական և սլավոնական ավանդություններում նշմարվում են մարդու՝ գայլ դառնալու՝ ասել է թե «ուժեղ, սարսափելի» դառնալու մասին զանազան արտացոլումներ /493, 494/:

Հայերի *մարդագայլ* հասկացությունը՝ «ուժեղ, սարսափելի մարդու և գայլի հատկություններ ունեցող» հնագույն ավանդույթի հայկական արտացոլում պետք է դիտել[8]:

*Գայլ*. նաև ժողովրդական մտածողության մեջ «խելոքի, շատ լավ իմացողի» վերապրուկային իրողությունն է պահել, որ դարձյալ վաղնջական մտածողության արգասիք է: Այլ դեպքերում այն չարության խորհրդանիշ է. հմմտ. հայ. գայլաբարոյ, գայլանալ ... և այլն:

*Գայլ*. անունը հաճախ տարբեր ժողովուրդների շրջանում դրսևորվել է ջրանուններում և տեղանուններում, մեզանում՝ *Գայլ* գետ, *Գայլաձոր*... և այլն:

*Ինձ*. որոշակի հետաքրքրություն է ներկայացնում և այս բառը: Ծագած լինելով հ.-ե. *simgh–ից /Ջահուկյան, 1987, էջ 147/՝ այն իր զուգահեռն ունի սանսկրիտում: Ուսումնասիրողները նկատել են, որ հ.-ե. ավանդություններում *վագր* իմաստույթը /семантема/ ի հայտ է եկել հետագայում՝ առանձին բարբառներում /Гамкрелидзе, Иванов, 560/: Հայերենում *վագր*-ը ավելի նոր հասկացություն է, քան *ինձ*-ը, և փոխառություն է իրանական լեզուներից:

Քննելով Խորենացու «Պատմության» այն հատվածը, որտեղ պատմահայրը պատմում է Մարաց թագավոր Աժդահակի՝ Կյուրոսի և Տիգրանի միաբանության մասին տեսած երազը, երբ Հայաստան երկրի լեռներից մեկի գագաթին երկունքի ցավով բռնված «ծնաւ յանկարծ կինն երիս կատարեալս ի դիցազանց հասակաւ և բնութեամբ: Առաջինն զերանսն ածեալ ի վերայ առիւծու՝ սլանայր յարևմուտս, և երկրորդն ի վերայ ընձու՝ ի հիւսիսի հայելով, իսկ զերրորդն զվիշապ անարի սանձեալ ի մերոյս վերայ շահատակեալ յարձակէր տէրութեանս» /Խոր., Ա, ԻԶ/, Վ. Իվանովը եզրակացնում է, «որ չնայած *Աժդահակ* անվան իրանական ստուգաբանությունը և կապը Մեդիայի /Մարաստանի/ հետ, լեգենդում ակնհայտորեն երևում են հնագույն միֆոլոգիական մոտիվներ»[9]: Հեղինակը նկա-

տում է նաև հայկական վերոհիշյալ լեգենդի և Հոմերոսի «Ոդիսականի» մի հատվածի աղերսը նշված երեք կենդանիների առկայությամբ */առիւծ-իռձ-վիշապ/:*

*բ/ Իրանական փախառություններ*

Հայ-իրանական լեզվական առնչությունները իրենց արտացոլումն են գտնում նաև կենդանանունների համակարգում: Իրանական ծագում ունեցող կենդանանուններն են՝ *աշդահակ* «վիշապաձուկ», *ասպ* «ձի», *բարակ* «որսի շուն», *բզաք* «այծ», *բէշկ մշկոյ, գազան, գոմէշ, գրաստ, խարբուզ* «իշայծեամ», *կապիկ, կինճ* «վարազ», *կնգում* «աքիս», *խոզ, կարիճ, կուզ* «կատու», *մատեան* «էգ ձի», *մարախ, մողէս, մուշկ, յաւանակ, յովատակ, յովազ, նապաստակ, նհանգ, նոխազ, պաճար* «խոշոր եղջերավոր անասուն», *շտրպաղանգ* «ընձուղտ», *պատրուճակ, սամոյր, վագր, վարազ, վիշապ, տզրուկ, փալանիկ* «կառքի ձի, ջորի», *փիղ, քուռակ:*

Այս բառերից մի քանիսը վկայված են մեկական անգամ, այսինքն՝ լայն գործածություն չեն ունեցել. պարզապես դրանք նշում ենք որպես վկայություն: *Աշդահակ, բզաք, փալանիկ* վկայված է ուշ շրջանից՝ Գրիգոր Մագիստրոսի գործերում, և օրինակներից էլ զգացվում է, որ հեղինակը նշում է որպես օտար անուն. «Ելեալ ձկան երևել նմա, աշդահակ կոչեցեալ...» /Արմ./, «Այծից արական քաղ, նոխազ, բզաք»: «/Ձիոց/ չեզոքն, որպիսի քուռակ բաշահատ, անղրավար, փալանիկ»:

*Խարբուզ* «իշայծյամ». Արմ.-ի հավաստմամբ վկայված է մեկ անգամ Աստվածաշնչում:

*Մուշկ, բէշկ մշկոյ, շտրպաղանգ* վկայված են «Աշխարհացույցում» որպես օտար անվանումներ. «Լինի և ի հնդիկս մուշկ երէ» /ՆՀԲ/: «Լինի և ի հնդիկս և մրջմնառիւծք և մկունք, բէշկ մշկոյ և կոկորդիլ գազան...» /ն.տ./: «Լինի անդ ընձուղտք ... պարսիկք կոչեն շտրպաղանգ»:

*Քաւթար* «բորենի» գրաբարում ավանդված չէ, կա միայն բարբառներում:

*Կնգում* «սպիտակ աքիս» գրաբարում չի հանդիպում, սակայն Բուզանդի գրքում հանդիպող *կնգմենի* «կնգումի մորթ» բառը հուշում է, որ *կնգում* գրաբարում գործածական է եղել:



*Ասպ.* այս բառն էլ զարմանալիորեն գրաբարում անկախաբար չի գործածվում, սակայն այդ արմատով բավական մեծ թվով բառերի առկայությունը /եթե դրանք համարենք նաև ամբողջական փոխառություններ՝ *ասպազան, ասպազէն, ասպականի, ասպաճարական, ասպաստան, ասպատակ*/ հուշում է, որ գրաբարում *ասպ* «ձի» իմաստը գիտակցվել է:

Մի շարք կենդանանունների իրանական ծագումը Արմատական բառարանը չի նշում: Դրանց իրանական բնույթը փաստարկված է նորագույն հետազոտություններում:

*Բարակ* «որսի շուն» /Աղայան, 1974, էջ 36-41/, *գազան* /Հովհաննիսյան, 1991, էջ 235-236/, *գրաստ* /ն.տ./, *կարիճ* /ն.տ., էջ 242-243/, *յովատակ* /ն.տ., 252/, *նապաստակ* /ն.տ., 253/:

Ամենայն հավանականությամբ իրանական ծագում ունեն *երիվար, անդրուար* «կառքի ձի», նժույգ բառերը[10]: *Խոզ*-ը նույնպես կարելի է համարել իրանական փոխառություն[11]:

Իրանական փոխառությունների զգալի մասը գործածական է և միջին հայերենում, ժամանակակից հայերենում, ինչպես նաև մի շարք բարբառներում:

*գ/ Սեմական փոխառություններ*

Սեմական լեզուներից կատարված փոխառությունները մեծաթիվ չեն, և դրանց զգալի մասը կա՛մ ուշ շրջանից է վկայված, կա՛մ ոչ հաճախական կիրառություն ունի: Սեմական լեզուներից գրաբարում գործառող կենդանանուններ են՝ *ամարու* «գառ», *առնէտ, բոտոտ* «ճիճու», *գլոս* «կապիկ», *խարազուլ* «մորեխ», *խարամանի* «դև, օձ», *խլուրդ, կատու, կոզռն* «ուղտ», *կուղբ, մնինա* «միջատ», *մուղ* «էշ», *յամոյր* «վայրի այծ», *շերամ, շաւառն* «ուղտ», *պախրէ* «արջառ», *ցեց, քօշ* «արու այծ»:

*Ամարու.* վկայության կոնկրետ ժամանակաշրջանը հստակ չէ: Արմ.-ի վկայած աղբյուրի՝ Ե դարի համապատասխան թարգմանության մեջ *ամարու*-ի համապատասխանակը *որոջ*-ն է:

*Գլոս.* վկայված է Վարդան Այգեկցու առակներում և դիտվում է որպես օտար անուն. «Է կենդանի մի, որ կոչի գլոս... հրամանաւ Աստուծոյ միս ոչ ուտէ, այլ հանապազ քնի և յոյժ գիրանայ» /Արմ./:

*Խարազուլ.* վկայված է միայն մեկ անգամ /Ղեւտ., ԺԱ, 22/:

*Կուղբ.* վկայված է դարձյալ ուշ շրջանից:

*Մուղ* «էշ». վկայված է մեկ անգամ՝ Նորագյուտ Մնացորդաց գրքում. «Եւ կրէին իշովք, ուղտովք և ջորովք և մղաւք զկերակուրս» /Ն.Գ.Մնաց., Ա, ԺԲ, 40/:

*Կոզոն* «ուղտի ձագ». 5-րդ դարում վկայված է մեկ անգամ /Ծնն.,ԼԲ,15/: «Ուղտս ծնեալս կոզոամբ հանդերձ»: *Կոզեոն* մականունը և Ղարաբաղի բարբառում *գոզոակ* «ուղտի ձագ» առկայությունը նկատել են տալիս, որ բառը հասկանալի և գործածական է եղել ժողովրդախոսակցական լեզվում կամ տարածքային մի շարք տարբերակներում:

*Շաւառն* «ուղտ». վկայված է մեկ անգամ /Արմ./:

*դ/ Հունարենից կատարված փոխառություններ*

Հր. Աճառյանը, քննելով հունարենից հայերենին անցած փոխառությունները, կենդանիներ ենթադասակարգման մեջ ներկայացնում է 93 բառ /ՀԼՊ, Բ, 36/: Դրանցից մի քանիսը թռչուններ են /*պեղական, կիկնոս, պիպոս, տրոքիլոս, փալկոն, փիւնիկ*/: Ինչպես նկատելի է, վկայված կենդանանունների շարքերում քանակով դրանք բոլորից շատ են, ավելացնենք, որ բազմաթիվ բառեր էլ Արմատականը չի վկայում:

Հայտնի է, որ 5-րդ դարի հայ թարգմանական գրականության գերակշիռ մասի բնագիրը եղել է հունարենը: Հայ թարգմանիչը, հանդիպելով բազմաթիվ օտար կենդանանունների, այդ ձևով էլ դրանք ներկայացրել է: Այսինքն՝ ներկայացվել են որպես օտար բառեր՝ հաճախ ավելացնելով *որ կոչի* այսինչ...

Նշենք նաև, որ հայ մատենագրության մեջ ավանդված հունարեն կենդանանուններից շատերը եզակի վկայություններ են, հանդիպում են միայն տվյալ բնագրում: Այդ բառերի գերակշիռ մասի արտաքին-հնչյունական կողմն էլ մնացել է անփոփոխ՝ բնագրին հարազատ, առանց հայերեն որևէ մասնիկավորման, որն իր հերթին հուշում է, որ գործ ունենք օտար բառի և ոչ թե փոխառության հետ: Հունարենից անցած կենդանանունների դասակարգումից պարզվում է, որ առավել շատ են ջրային կենդանիների անունները /ձկնանուններ, առասպելական կենդանիներ, խեցեմորթներ... և այլն/:



Մի շարք բառեր էլ նշվում են միայն այս կամ այն բառարանում՝ առանց որևէ վկայության. այսինքն՝ դրանց իսկությունը և վկայության ժամանակը ստույգ չէ /*ամնոս, ասպիդ, բոբողոն, եփենէս, լէոնտոֆոնոս, միգալիս...*/:

Ներկայացնենք հունարեն կենդանանունները որոշ դասակարգումներով՝ ըստ հարկի փակագծերում նշելով գործածության թիվը /հաճախականությունը/.

ա/ *Կենդանիներ - ափինգ* /1/ վկայված է Աշխարհացույցում, Աճառյանը ուղղում է՝ *սփինգ: Բոնոսոս* «վայրի ցուլ» /Ն.տ./, եղոփին /1/ «եղջերու», *կատովղէպս* /1/, *մելաւ* «ոչխար» /1/, *որիքս* /1/ «վիթ», *սկիլայ* «առասպելական գազան»:

բ/ *Սողուններ - ասպիդ, բասիլիկոս, բոմբիլոս* /1/ «շերամի որդ», *սաղամանդր, սերաստէս, վասիլիսկոյ...*

Այս բառերից *ասպիդ, սերաստէս* վկայված են միայն բառարաններում՝ առանց բնագրային օրինակների: *Վասիլիսկոյ*-ը *բասիլիսկոսի* տարբերակն է և վկայված է ուշ շրջանից:

գ/ *Ձկներ, ջրային կենդանիներ - անքիլոս, աստակոս* /1/ «խեցգետին», *գիտնիովն* /1/ «գորտ», *դելփին, դռակոն* /1/, *դռակոնառ* /2/ «վիշապաձուկ», *դրակոնտէս* /1/, *ենքեղէս* «օձաձուկ», *եքինէս, ընգղայ* /ծովային հրեշ/, *կառաբոս* «խեցգետին», *կասդրիոս* /1/ «ջրաշուն», *կարբ* «խեցգետին», *կարիտոս* /1/ «խեցեմորթ», *կեփաղ* /1/ /ձկան տեսակ/, *կէտ, կոկորդիլոս, կոնք* «խեցեմորթ», *կոտորոս* /1/ «ջրշուն», *կոքղի* /1/ «խեցեմորթ», *կտին* /1/ /խեցեմորթի տեսակ/, *հիդրա* «ջրային օձ», *հիպոս, մենիդոս* /ձկան տեսակ/, *միտրինէս* /ձկան տեսակ/, *յուղիդաս* /1/ /ձկան տեսակ/, *նարկա* «թմրաձուկ», *ոսմիդայ* /1/, *ոստրէոս* /ծովային խեցեմորթ/, *ովան* /ծովային կենդանի/, *պին* /ծովային խեցեմորթ/, *պողիպոդ* /ծովային բազմոտանի կենդանի/, *պոմպիլոս* /1/ /ձկան տեսակ/, *պրիոնէ* /1/ «սղոցաձուկ», *սեղակ* /1/ /ձկան տեսակ/, *սեպեան* «մելանաձուկ», *սկարոս* /որոճող ձուկ/, *ստրոմ* /խեցեմորթի տեսակ/, *տառեխ* /ուշ շրջանից է վկայված/, *տեւթիէղէս* «մելանաձուկ», *տրիգոն* /վահանաձև ձուկ/, *փագրոս* /ձկան տեսակ/, *փոկ, քսիփէ* /1/ «թրաձուկ»:

Ինչպես նկատելի է, բազմաթիվ բառեր մեկական կիրառություն ունեն: Նշված և այս կարգի այլ բառերից փաստորեն հայերենում այս կամ այն չափով լայն կիրառություն ունեն *դելփին, կէտ, կոկորդիլոս, տառեխ, փող* բառերը:

Նշենք, որ ձկների, ծովային զանազան կենդանիների անվանումների զգալի մասը /հատկապես եզակի վկայությունները/ հանդիպում է Բարսեղ Կեսարացու «Վեցօրեայ»-ում:

Այլևս չփաստարկելով, որ հունարեն կենդանանունների գերակշիռ մասը մեր մատենագրության մեջ դիտվել է որպես օտար անվանումներ՝ օտար հասկացություններ արտահայտելու համար, և դրանք փոխառությունների շարքում զետեղելը ճիշտ չէ, բերենք մի քանի բնագրային օրինակ. «Իբրեւ զդեւս հալածականս և իբրեւ զընգղայս ծովու վնասակարս» /Ոսկ., Մտթ., Բ, 596/: «Ի նորա աւուրս երեւեալ գազան ինչ՝ զոր կոչեն *իդրվտիոն*, ի կարմիր ծովէ, որոյ մարդկան և ձկան կերպարանք ունի»: «Եւ յառաջնումն ամին յայտնել ի կարմիր ծովէ անդէն իսկ ի մէջ սահմանացն բաբեղացւոց ահագին ինչ գազանի, որոյ անուն կոչիցի ովան» /Եւս., Քր., Ա, 20/: «...նման ձկան և մարդկան, որում անուն կոչէր ովդակոն» /Եւս., Քր., 13/: «Փոկ և դըլփինք և ներկէսք, որ անուանեալ կոչին սեղակք /Բրսղ/:

*Իդրվտոն, ովդական, ովան* բառերը, որ Եվսեբիոսի «Քրոնիկոնից» են, չկան ՆՀԲ-ում, իսկ Արմ.-ը նշում է միայն *ովան*-ը:

*ե/ Կովկասյան լեզուներից կատարված փոխառություններ*

Սրանք բավական փոքրաթիվ են, և փոխառության աղբյուրը հիմնականում քարթվելական լեզուներն են:

*Ճանճ, ճանճիւռն, ճճի, ճակ* «էգ ձի», մոծակ, ոչխար: *Լակոտ*-ը ուշ շրջանից կատարված փոխառություն է:

*զ/ Կենդանանուններ, որոնց ծագումը ստույգ չէ*

*Ալոջ* «էգ ուլ», *անալութ* «ընձուղտ», *արտեկ* «վայրի ոչխար», *բիտոն* «ձուկ», *երիվար, զուարակ* «մեծ հորթ», *թոժիւն* «արջի ձագ», *եղջերու, խեշակ* «ձի», *լորտու, խխունջն, խոյ, կառաժուղ* «մրջյուն», *ճագար, մորուկ* «քուռակ», *նժոյգ, որոջ* «գառնուկ», *պիծակ, ջորի*:



*Կենդանանունների բառակազմական յուրահատկությունները*

Գրաբարում ավանդված կենդանանունների կազմության մեջ առանձնանում են մի քանի տիպեր:

ա/ Արմատական կազմություններ - *այծ, բուծ, էշ, կով, շուն, ուլ, որթ...գառն, եզն, ձուկն*: Այս կարգի բառերի դեպքում *–ն*-ն ածանց դիտելը խիստ պայմանական է:

բ/ Որոշակի վերջահար ձևույթներով կազմություններ

*Ի*- աւդի, կենդանի, մաքի, մոզի, ոզնի,ճճի, ջորի. նշենք, որ -*ի*-ն ածանց դիտելը նույնպես պայմանական է, քանի որ տվյալ հիմքերով *մաք, մոզ, ոզ/ն/...* այլ ածանցավոր կազմություններ չկան:

*Իկ*- ամիկ, այծեմնիկ, կապիկ, ոչխարիկ, փալանիկ:

*Իւն*- մրջիւն /իմն/, կորիւն, թոժիւն: /*Թոժիւն*-վկայված է մեկ անգամ և *թոժ*- հիմքի այլ գործածություն չի ավանդվել/:

*Ակ*-յաւանակ, քուռակ, պիծակ, մատակ, հետեւակ, զուարակ, որոջակ, վիշապակ:

*Ան*- լուսան, գազան:

*Իճ*-ուտիճ, կարիճ, լուիճ:

*Ու*- եղջերու, լորտու:

*Ուկ*- տզրուկ, խոզուկ:

*Ոջ*-որոջ, ալոջ:

*Ենի*- բորենի:

*Եամն* - այծեամն:

*Ակ* և *ան* ածանցները ծագմամբ կարող են լինել իրանական /*մատակ, գազան, քուռակ*/ և հայկական:

*Ակ, իկ*-ը մի դեպքում փոքրացուցիչ-փաղաքշական իմաստ ունեն */ամիկ, որոջակ/*, այլ դեպքում՝ ոչ /*կապիկ, փալանիկ, մատակ, յաւանակ*/:

*գ/ Բարդ բառեր*

Զգալի թվով կենդանանուններ երկարմատ կազմություններ են: Ակնհայտորեն նկատելի է, որ կենդանանուն+կենդանանուն=կեն-

դանանուն տարածված կաղապարների դեպքում բարդության մեկ անդամը /երբեմն էլ երկուսը/ հ.-ե. ծագում ունեցող կենդանանուններ են, ասել է թե՝ նոր բառերի կազմության ժամանակ հայերենը օգտվել է բնիկ բառաշերտից:

Կենդանանունների շարքը ըստ հնարավորին ամբողջական ներկայացնելու միտումով այբբենական կարգով ներկայացնենք համապատասխան հ.-ե. արմատը /բառը/, այնուհետև նոր կազմությունները.

ա/ Հ.-ե. բառերից կազմված ձևեր

*Այծ*- այծաքաղ, էշայծ, քարայծ /նոր/, այծամարդ /կապկի տեսակ՝ նման մարդու և այծի/:

*Առիւծ*- առիւծակորիւն, առիւծակապիկ, առիւծաշուն /վերջին երկուսը վկայված են «Աշխարհացույցում»/, մրջնառիւծ, գետնառիւծ:

*Արջ*- մկնարջ, արջամուկն /ուշ շրջանից/:

*Գայլ*- գայլակորիւն, մարդագայլ:

*Եզն* -եզնախոյ:

*Եղն*- եղնորթ:

*Էշ*- իշայծեամն, իշակես, կիսէշ /ջորի/, իշամտրուկ, իշացուլ, իշամեղու, իշավայր/ի/ /վայրի էշ/: Բերենք մի քանի բնագրային օրինակ. «Ո՞ր հեշտութիւն է, աղէ, ասա ինձ, ընդ կանա՞յս խառնակել եթէ ընդ արուս, ընդ կանա՞յս թէ ընդ իշակեսս, որ լսին ջորիք» /Ոսկ., Պօղ., Բ, 78/: «Վասն այլ իրիք նստաւ յիշամտրուկ» /Եմես., Ճառ., ԺԳ, 324/: «Խոզ վայրենի եղեր և իշավայր անապատի» /Ոսկ., Մտթ., Ա, 234/:

*Իժ*- իժակորիւն, փաղիժ:

*Ինձ*-ընձառիւծ, ընձուղտ /հաճախական չեն/, կա և ուղտինձ, որը թերևս պատճենում է:

*Կով*- կովածուծ, կովաղիաց:

*Կորիւն*- առիւծակորիւն, գայլակորիւն, իժակորիւն:

*Ձի*- ձիացուլ, ձիաստաց «ձիու պիծակ», ձիապիծակ, կիսաձի, ձիագետի, ձիակապիկ, գետաձի, ջրաձի, վագերաձի:

*Ձուկն*- ձկնաքաղ, սղոցաձուկն, կարթաձուկն, վիշապաձուկն, օձաձուկն:



*Մուկն*- մկնաքիս, մկնարջ /ուշ/, արջամուկն /վկայում է ԱԲ-ը/:

*Մրջիւն*- մրջնառիւծ:

*Շուն*- շանաճանճ, շնկնճիթ, շնջրի:

*Ոզնի*- նետոզնի:

*Ուղտ*-ընձուղտ, ուղտաքաղ, ուղտինձ:

*Ցուլ*- ծովացուլ, ձիացուլ, իշացուլ, ցլափիղ:

*Քաղ*- այծքաղ, եղջերուաքաղ, վարդապաքաղ, փղաքաղ, վիշապաքաղ, ուղտաքաղ:

Ինչպես նկատվում է, վերոգրյալ օրինակներից օտար կենդանանուններից կազմությունները բավականին քիչ են:

*Կապիկ, վագր, վիշապ, փիղ* իրանական փոխառությունները առկայանում են *ձիակապիկ, վագերաձի, վիշապաքաղ, վիշապաձուկն, փղաքաղ* բառերում:

Կան նաև մի շարք կենդանանուններ, որոնց բաղադրիչները /կամ բաղադրիչներից մեկը/ կենդանանուն չեն՝ *բռնաժանի, կարճագի, ռնգեղջիւր, սղոցեղջիւր, վերջասպետ*. «Եւ ի մէջ գիշերին եւ յանկարծակի գազան մի մեծ...և ջանայր գալ ի վերայ մեր և կոչէին նմա բռնաժանի» /Պատմ. Աղեքս., 423/[13]:

Մի շարք կենդանանուններ չեզոքություն են դրսևորում տվյալ կենդանատեսակի սեռի կամ տարիքի վերաբերյալ՝ արտահայտելով հասկացությունն ընդհանրապես՝ առանց մասնավորման՝ *այծ, ոչխար, արջ, արջառ, էշ, ձի, խոզ, փիղ, իժ, շուն, կուզ, կատու, կապիկ, ուղտ*...և այլն:

*Արջառ*-ը գրաբարում նշանակում է «կով, եզ, ցուլ»՝ առանց տարիքային և սեռային տարբերակման: Հմմտ. «Եթե արջառոց մատուցանիցէ և եթէ արու իցէ և եթէ էգ» /ՆՀԲ/: Բառն այժմ իմաստափոխված է:

*Ձագ, կորիւն, որթ* բառերն ընդհանրական ձևով մատնանշում են փոքր տարիքի կենդանիներ:

*Կորիւն*. ըստ բառարանների վկայության վերաբերում է գազաններին, սողուններին, նաև ջրային կենդանիներին /կետեր/. «Ո՛չ իբրև առ կորիւն առիւծու, այլ՝ առ կորիւն շան հանդերձել մարտնչել» /Փիլ., Մնաց., 564/: «Վիշապք դիեցուցին զկորիւնս

իրեանց« /ՆՀԲ/: «Ոմն զգայլոյ կորիւն սնուցանէ և իբրև զշան կորիւնս՝ առ ընտելութեան ընդ անձն անկանին» /Եզն., 68-69/:

Հայկազյան բառարանում և Արմ.-ում *կորիւն* «երեխա, մանուկ, սերունդ» իմաստը արձանագրված չէ: Բուզանդից քաղված ներքոհիշյալ օրինակում, անշուշտ, այդ իմաստն է. «Հարկանէր վանէր զազգսն երկոսեան և ոչ թողոյր զերկոցունց տոհմացն զորձ կորիւն և ոչ զմի» /Բուզ.,9/:

*Որթ*. հիմնականում նշանակում է կովի և եղնիկի ձագ. «Ուլս ի հօտից և որթս դիեցիկս յանդւոց» /ՆՀԲ/: «Որթուց եղանց ի վերայ լերանց» / Երգ, Բ, 9/:

*Ձագ*-ը վաղ գրաբարում վերաբերել է միայն թռչուններին, *ձագ-փոքր կենդանի* անցումը հավանորեն հետագա երևույթ է:

*Թոժիւն* «արջի ձագ» բառը մեկ անգամ վկայել է Եզնիկը. «Եւ այլ ոք զարջոյ թոժիւն սնուցեալ...» /69/:

Մի շարք բառեր նշում են տվյալ կենդանու փոքր տարիքը:

/*Ոչխար*/-*գառն-որոջ-բուծ*. «Ի գառանց և ուլոց» /ՆՀԲ/: «Յոթն որոջ ոչխարաց» /ՆՀԲ/: «Եւ բուծ մի տարեւոր անարատ արասցէ յողջակէզ տեառն» /ՆՀԲ/:

/Այծ/ուլ, *ամիկ-բուծ*. «Զենին ուլ այծեաց» /ՆՀԲ/: *Ուլ*-ը նաև եղնիկի, այծյամի ձագն է: *Բուծ*-ը ըստ երևույթին և՛ այծի, և՛ ոչխարի ձագն է:

/*Արջ*/ –թոժիւն:

/*Կով, եզն*/- *երինջ-որթ-ընջուղ-զուարակ-մոզի*. «Երինջ մի յարջառոյ» /ՆՀԲ/: «Խայտային իբրև զուարակս ի վերայ դալարս» /ՆՀԲ/: *Զուարակ* ՆՀԲ-ը մեկնում է՝ «արջառ, եզն փոքր, հորթ մեծ»:

*Մոզի* «հորթ»: Առաջին և միակ վկայությունը ուշ շրջանից է՝ 13-րդ դարից: Սակայն բառի հ.-ե. ծագումը հուշում է վաղ շրջանում գործածությունը:

/*Խոզ*/- խոճկոր:

/*Էշ*/- *մտրուկ-տրմուղ-քուռակ*: Վերջինը վաղ գրաբարում ավանդված չէ: *Մտրուկ*-ը Արմ.-ը մեկնում է «քուռակ իշոյ»: ՆՀԲ-ում ավանդված բոլոր օրինակներում բառն ունի «էշի քուռակ» իմաստը. «Էշս քսան և մտրուկ տասն» /Ծննդ., ԼԲ,15, ռուս. /ослиц/: «Ահա թագաւոր քո գայ՝ հեզ և հեծեալ էշ և ի նոր մտրկի»: «Միտ



դիր զգօնութեան մտրկին զի կրմուղ էր և տրմուղ»: Այդպես է և այլ օրինակներում: «Նստաւ յիշամտրուկ» /Եմես., Ճառ., ԺԳ, 322/: «Զի եթէ ոք առ աղքատութեան ընչից և չքաւորութեանն երիւարաց, հեծանիցի յիշամտրուկն յովանակին» /ն.տ., 325/:

/Ուղտ/-կոզռն:

*Փոքրացուցիչ, փաղաքշական ածանցներով կազմություններ*

*Ակ*- եզն-ակ, որոջ-ակ:

*Իկ*- ամ-իկ, ոչխար-իկ, ցլ-իկ, շն-իկ, եզն-իկ, որոջ-իկ:

*Ուկ* -իշ-ուկ /ուշ շրջանից/, աղուէս-ուկ /ուշ շրջանից/:

Կենդանիների սեռային տարբերակվածությունը արտահայտվում է.

ա/. *Մատակ, էգ/արու, որձ* բառերով. ահա մի քանի օրինակ. «Կայցէ ի խաշինս նորս որձ» /ՆՀԲ/: «Եւ ծնեալ էգն ապրեցուցանէին և զորձն սպանանէին» /ՆՀԲ/: «Յամենայն անասնոց՝ արու և էգ լինիցի»:

*Մատակ* բառահոդվածում ՆՀԲ-ը ունի *էշք մատակք, մատակ ձիք, մատակ առիւծ*:

բ/ Միևնույն կենդանատեսակներին տրվող առանձին անվանումներով

| Անվանումը առանց սեռային տարբերակման | իգական | արական |
|---|---|---|
| այծ | ---- | նոխազ, քաղ, քօշ, բզաք |
| աւդի, ոչխար, մելաւ | մաքի | խոյ, առն |
| տուար, որթ | կով, երինջ | ցուլ, եզն |
| խոզ | ---- | կինճ, վարազ |
| ձի, երիւար, գրաստ, | մատակ, մատեան | յովատակ, նժոյգ |
| | զամբիկ, ճակ | |

*Եղն*-ըստ ՆՀԲ-ի «երէ գեղեցիկ, երագոտն,...յորմէ կոչի և եղջերու», իսկ *եղջերու*՝ «արուն եղին կամ նոյն ընդ եղն». Արմ.-ը *եղն* մեկնում է «էգ եղջերու»:

Վկայված օրինակներից չի զգացվում *եղջերու*-ի արու լինելը միայն, իսկ *եղն*-ի դեպքում գոնե որոշ օրինակներում նկատելի է *եղջերու*-ի էգ տեսակ լինելը:

*Արտիկ*-ը ըստ ՆՀԲ-ի՝ «ոչխար արտի, այսինքն՝ վայրի»: Վկայված միակ օրինակում «էգ» իմաստով է. «Արտիկ բազում անգամ երկաւորեակս ծնանին» /ՆՀԲ/:

*Այծ* բառը ըստ Արմ.-ի «սովորաբար էգի համար է գործածված»: Վկայված օրինակներում այդ հաճախ զգացվում է, մանավանդ երբ հանդես է գալիս *քաղ* բառի հետ նույն համատեքստում: «Քաղք ելանէին ի վերայ այծից»: «Ձատոյց զքաղս կապոյտս և զպիսակս և զամենայն այծս կապոյտս» /ՆՀԲ/:

*Ընջուղ*. թեև Արմ.-ը մեկնում է «երինջ, մեծ հորթ», բայց վկայված օրինակից զգացվում է, որ սեռը արական է. «Ընդէ՞ր երկնչիս ի լծոյ իբրև ընջուղ տրմուղ» /ՆՀԲ/: /Սովորաբար լծկան են արուները/: «Եւ ոչ ուսայ իբրեւ զընջուղ տրմուղ» /Երեմ., ԼԱ, 18/: Ռուսերենում մեզ հետաքրքրող բառի համապատասխանակն է телец-ը:

*Նժույգ*. թեև բառարանները բացատրում են «փարթամ ձի»՝ առանց սեռային տարբերակման, սակայն վկայված օրինակներից /որպես հեծելազորի ձի/ կարելի է ենթադրել, որ նշանակում է «արու ձի»: Դրա օգտին է խոսում բառի նոր ստուգաբանությունը, եթե այն հավաստի է: Նախ՝ օրինակներ. «Հինգ հազար հեծեալ վառեալ նժոյգ ի ձեռն պաշտպան գնդիցն»: «Բազում նժոյգս զարքունական ձիոյ»: «Եւ տանել ընդ առաջ նորա նժոյգս մեծազարդս և երևելիս» /ՆՀԲ/:

*Նժույգ*. Արմատական բառարանում ստուգաբանված չէ: Գ. Ջահուկյանը ենթադրում է, որ *ժ* ունեցող բառերի զգալի մասը իրանական ծագում ունի. *ժանի-ք, ժապաւէն, ժառանգ, ապառաժ... նժոյգ* /1987, 559/: Ա. Փերիխանյանը առաջարկում է նոր ստուգաբանություն՝ հավաստելով իրանական բնույթը, միաժամանակ արական սեռը: Իրան. nižauga-ից «սերմ թափող, արու, երիտասարդ ձի»[14]:

*Մատակ* նշանակում է «էգ» և գործածվում է տարբեր կենդանանունների հետ:



## *Կենդանանուններին ու կենդանական աշխարհին առնչվող այլ անվանումներ*

*1. Կենդանիներ պահող, խնամող*

*Հովիվ* ընդհանրական իմաստը գրաբարում արտահայտվում է հետևյալ բառերով ու բառակազմական կաղապարներով:

ա/. *Պարզ /արմատական/ կազմություններ*. Նկատի ունենք նաև այն կազմությունները, որոնցում ածանցը չի գիտակցվում որպես այդպիսին, այլ այն ի հայտ է գալիս ստուգաբանորեն:

Այդ կարգի բառերից են՝ *հովիւ, շպետ, նեկաթ*: Առաջինը հ.-ե. ծագում ունի և ավելի հաճախական է, քան մյուսները: Արդեն 5-րդ դարից բացի «ոչխար արածեցնող»-ից ունի նաև «առաջնորդ, վարիչ, եպիսկոպոս, կրոնավոր» իմաստները: Օրինակ. «Իբրև զոչխարս, որոց ոչ իցէ հովիւ» /ՆՀԲ/: «Ջհօտ հանդերձ հովուօք յափշտակեցին» /ՆՀԲ/: «Հովիւքն որ էին յայլ եկեղեցիս» /ՆՀԲ/:

*Շպետ*-ը իրանական ծագում ունի և այնքան էլ հաճախական չէ. «Արքայն մովաբացւոց իբրև մի շպետ տայր զհարկս խաշանց՝ Իսրայելի»: ՆՀԲ-ը *շպետ*-ը մեկնում է «տեսուչ, իշխան, դատաւոր ... հովիւ», իսկ Արմ.-ը՝ «հովիւ»: Բառի ստուգաբանությունը իր. fšupati /fšu «ոչխար», pati «պետ, տեր» հիմք է տալիս եզրակացնելու, որ հայերենում էլ նախապես գործածվել է «ոչխարներ պահող, հսկող» իմաստով:

*Նեկաթ*-ը եբրայական բառ է և վկայված է մեկ անգամ Աստվածաշնչում. «Մովսա արքայ Մովաբայ էր նեկաթ և տայր արքային Իսրայելի հարկս՝ հարեւր հազար մաքեաց և հարեւր հազար խոյոց» /Դ. Թագ., Գ, 4/: Աճառյանը գրում է, որ «խաշնադարման բառն է, որ գործածվում է բնագրի համապատասխան տեղը» /Արմ./:

*բ/. Բաղադրյալ կազմություններ*

Սրանք դրսևորվում են կենդանանուն, կենդանիների խմբի անվանում+որևէ այլ ձևույթ /արմատ, ածանց, ածանցակերպ/ կազմություններով:

*Արած*- այծարած, խաշնարած, խոզարած, հոտարած, տուարած. «Զուղեգնացս խափանէր, զտուարածս լերանց հալածէր» /ՆՀԲ/: Տուարած «հովիվ, խաշնարած» նշանակությամբ հանդես է գալիս նաև *տուարածական* ձևով. «Եթող զոչխարսն ի տուարածականսն» /Երեմ., ԼԱ,10/:

*Պան, պահ, պետ* - մատակապան, փղապան, հոտապետ, ախոռապան/պետ /ուշ շրջանից/, վտառապահ, երամապետ /ուշ շրջանից/...

«Ի վերայ վտառապահացն արքունի /այսինքն՝ ձիոց/» /ՆՀԲ/: «Եւ զփղապանն ի վերայ գլխոյն նստուցին» /Ա. Մկբ., Զ. 37/: «Զայս հրաման տայր փղապետին» /ՆՀԲ/:

*Խաշն*- արմատի հետ *բոյծ, տես, դարման* /խաշնաբոյծ, խաշնատես, խաշնադարման/ բառերը ունեն դարձյալ «հովիվ» նշանակությունը. «Հովիւս և խաշնաբոյծս, որոց ոչինչ փոյթ է զուամանց» /ՆՀԲ/: «Արք խաշնադարմանք» /ՆՀԲ/: «Զերկրագործ մշակս և զխաշնարածս» /ՆՀԲ/:

*Երէց-հոտերէց*:

*Որդ* ձևույթով առկա է *անդէորդ* «հովիվ». «Հովիւ և անդէորդ յարմարեցուցանեն փողս»: «Զորդի հովուաց և զանդէորդաց» /ՆՀԲ/:

*Բոյծ*- երիվարաբոյծ /ՆՀԲ-ը չունի/, պաճարաբոյծ:

Թ.Արծրունու «Պատմության » մեջ հանդիպում ենք *նժոյգածիգ* բառին. «և նժոյգածիգն իւր մատոյց նմա զընտիր երիվարն» /228/: Ընդգծվածը կարելի է թարգմանել «ձիապան, ձիավարժ»:

*2. Կենդանիների խմբեր*

Գրաբարում մոտ երկու տասնյակ բառեր նշում են այս կամ այն կենդանիների խմբեր: Թվարկենք դրանք այբբենական կարգով՝ ըստ անհրաժեշտության բերելով նաև բնագրային օրինակները:

*Անդեայ*. ունի նաև «նախիր» իմաստը:

*Բոյլ* «խումբ» /մարդկանց, երեների, եղջերուների, ցուլերի, Արմ./. «Զբոյլս վայրենի երէոց»: «Զհետ բուլից եղջերուացն և եղանց ձիարձակ եղեալ» /Փրպ., 5/: ՆՀԲ-ում կա և վկայություն «մարդկանց խումբ» նշանակությամբ: Կարելի է ենթադրել, որ նախապես «բոյլ»-ը վերաբերել է վայրի կենդանիների խմբին: Արմ.-ում բառը ստուգաբանված չէ, ըստ Ջահուկյանի հ.-ե. ծագում ունի /Ջահուկյան, 1987, 114/:

*Գունդ* «խումբ, կազմություն». ՆՀԲ-ում վկայված է միայն «Գունդ մեղուաց» /ՆՀԲ/: Հաճախակի է «մարդկանց խումբ» նշանակությամբ: Բառն իրանական ծագում ունի:

*Դաս(ակ)* «խումբ». «Ի դասս երնջուց, այծուց» /ՆՀԲ/: «Ընդ դասակս այծեաց», «Իբրև զդասակս դոյզն հօտից» /ՆՀԲ/: «Արջառոցն դասակք և հօրանք այծարածաց...» /Փիլ., Բանք, 145/: Հավանորեն վերաբերում է ընտանի կենդանիներին: Բառն իրանական ծագում ունի:

*Երամ/երամակ*. Եթե արդի հայերենում *երամ*-ը թռչունների խումբն է, իսկ *երամակ*-ը՝ հիմնականում ձիերի, ապա գրաբարում ավելի ընդհանրական է. «խումբ» /մարդկանց, կենդանիների/: «Ներքուստ ի վեր դողացոյց, փախոյց... իբրև զվատ երամն աղուէսոց» /Եղիշ., Մատ., 177/: «Անբաւ երամոց լուղակաց»: «Երամոյ զառնածին հօտից» /ՆՀԲ/: «Երամս վարազացն» /Փրպ., 5/: «Բազում երամակս փղաց յղէր ընդ նմա» /ՆՀԲ/: «Եւ ընդ նոսին ... անհամար բազմութիւն ուղտերամակաց և այլոց խաշանց» /Գիրք պիտ., 450/: «Երամակ խոզից» /Ագաթ., Է, 30/: «Երամակ շանց» /Սեբ., 10, Արծր., 1985,40/: Բառն իրանական ծագում ունի:

*Ժողով* «բազմություն, խումբ»: *Ժողով+կենդանանուն* կաղապարը հաճախական չէ: ՆՀԲ-ը վկայում է միայն մեկ օրինակ. «Ի ժողովս զուարակաց և ի դասս երնջոց» /Սաղմ., ԿԷ,31/: Բառի ծագումը անհայտ է:

*Խաշն*- «ոչխարների և այծերի խումբ» /ՆՀԲ/: Բավական գործածական է, և այդ արմատով կազմված են մի շարք բառեր՝ *խաշնաբոյծ, խաշնադարման, խաշնադարմանութիւն, խաշնամահ, խաշնասիրութիւն, խաշնարած, խաշնարօտ, խաշնաւէտ:* Հավանական է համարվում բառի ուրարտական ծագումը /Ջահուկյան, 1987, 440/: *Խաշինք* վերագրվում է և արջառներին «խաշինք արջառոց ...» /Եփր., Մատ.,244/:

*Հոյլ/ք/-* ըստ Արմ.-ի «խումբ կենդանիների, մեղուների, մարդոց, վկայութեանց»: /Բառի հ.-ե. ծագումը տե՛ս Ջահուկյան, 1987, 145/:

*Հօտ-* հիմնականում կիրառվում է «ոչխարների խումբ» նշանակությամբ, երբեմն նաև այլ «չորքոտանիներ»: Բնիկ հայերեն բառ է:

*Հօրան* «կենդանիների խումբ». «Վարսք քո զհօրանս այծից»: «Զհօրան ուլուցն», «Ի հօրանս անդէոց և հօտից» /ՆՀԲ/: Վերաբերում է ընտանի կենդանիներին: Բնիկ հայերեն բառ է:

*Պառակ-* բառը նախապես ունեցել է «կող», հետագայում իմաստի զարգացմամբ «ոչխարների մակաղատեղ, ոչխարի հոտ, անասունների խումբ» /Արմ./: «Եկն ի պառակս հօտիցն, որ առ ճանապարհաւն»: «Առ միմեանս մակաղին և ընդ միմեանս պառակ-պառակ արածին» /ՆՀԲ/: *Պառակ* «կող» իրանական ծագում ունի, իսկ «հոտ, փարախ» իմաստները ձեռք են բերվել հայերենում:

*Պար-* «շուրջ, շրջան» իմաստներից զատ ունի և «խումբ,ջոկ» նշանակությունը; Հատկապես վերաբերում է մեղուների խմբին՝ *պար, պարս* ձևով: Մագիստրոսի գործերում կա հետևյալ օրինակը. «Զօրէն եղջերուաց, որք արտաքս ի պարէն վազեալք, պասքելով աղբեր կարօտին» /ՆՀԲ/: Հավանորեն նախապես *պար*-ը վերաբերել է մեղուների խմբին, իմաստի լայնացում կատարվել է հետագայում: Բառն իրանական ծագում ունի:

*Ջոլիր* «մարդկանց կամ կենդանիների խումբ»: Վերաբերում է և՛ ընտանի, և՛ վայրի կենդանիներին. «Ըստ հօտից և անդէոց և այծերամակաց ընդ այլոց ջոլրաց»: «Ի վայրենի ջոլիրս»: «Ջոլիրք ընտանեաց միանգամայն վայրենեաց» /Փիլ., Ճառ., 1892/: Բառի ծագումը ստույգ չէ:

*Ջոկ* «բազմություն»: «Ջոկք ձիոցն և ջորեաց»: «Տեսի ջոկս գոմշաց», «Ոչխար մոլորէ ի ջոկէ տեառն իւրոյ» /ՆՀԲ/: Իրանական փոխառություն է:

*Վոհմակ-* բառարանները նշում են «գազանների խումբ», բայց, ըստ էության, բառը պետք է բացատրել «գայլերի խումբ»: Եվ վկայված շատ օրինակներում էլ վերաբերում է գայլերին. «Զի մինչ ոչխարքն իցեմք, թէպէտ և բազում վոհմակք գայլոց շուրջ պատիցեն...» /Ոսկ., Մտթ.,Բ, 502/: «Իբրև շարք շանց և վոհմակ գայլոց» /ՆՀԲ/:

*Վտառ-* վերաբերում է ոչ միայն ձկներին, այլ ուրիշ կենդանիների ևս: «...բիւրազգի վտառս ձկանց շարժեսցէ...»: «Վտառ, վտառ, երամ, երամ շրջին», «Զիոց վտառք, անդեայք, հօտ» /ՆՀԲ/: Մերժելի չէ բառի իրանական ծագումը, թեև չի կարելի ստուգապես ապացուցված համարել:

Վերոբերյալ բառերը գրաբարում մատնանշում են «կենդանիների խումբ» հասկացությունը: Նկատելի է, որ զուտ այս կամ այն կենդանիների խումբ նշող բառերը /բացառությամբ, այն էլ որոշ վերապահությամբ, *վոհմակ*-ի/ չկան: Գ-ուցե սկզբնապես տվյալ բառը արտահայտել է ավելի նեղ հասկացություն, բայց հետագայում ձեռք է բերել «խումբ» իմաստն ընդհանրապես՝ ներառելով ոչ թե մեկ, այլ մի քանի կենդանատեսակների խմբեր:

Նկատելի է նաև, որ նման կարգի բառերի զգալի մասը բնիկ հայերեն է կամ իրանական փոխառություն:

### *3. Կենդանիների բնակատեղի*

Ակնհայտորեն առանձնանում են վայրի և ընտանի կենդանիների բնակատեղի անվանումները: Ընտանի կենդանիների համար՝ *ախոռ, բակ, գաւիթ, գոմ, մակաղատեղ, մսուր, փարախ, փեթակ*: Վայրի կենդանիների համար՝ *մորի, խիշտ, բայ, որջ, կաղաղ, սոր, երախանք*...:

Բառակազմական տեսանկյունից բացի վերոհիշյալ ձևերից, որտեղ ձևութային /հատկապես ածանցների/ տարբերակումը հնարավոր է ստուգաբանորեն, առանձնանում են նաև կենդանանուն+ածանց կազմությունները՝ *ասպա-ստան, եզն-անոց, մրջն-ոց, մեղու-ա-նոց, երբեմն նաև արմատ+արմատ՝ մակաղատեղ...:*

Ներկայացնենք մեզ հետաքրքրող բառաշարքը այբբենական կարգով ու որոշ ննկատառումներով.

*Ախոռ* /ձիու կամ էշի/: Թեև վաղ գրաբարից հաճախական չէ, բայց 5-րդ դարից վկայված *ախոռապետ, շահախոռապետ* բառերը

վկայում են, որ բառը գործածական է եղել արդեն այդ շրջանից, եթե ոչ ավելի վաղ: Իրանական փոխառություն է:

*Ապաստան* «ծիու գոմ, ախոռ»: Իրանական փոխառություն է:

*Բակ*- ՆՀԲ-ը նշում է նաև «գաւիթ ոչխարաց, փարախ». «Ոչ է պարտ ոչխարաց կալ արտաքոյ բակի» /ՆՀԲ/:

*Բայ/բայոց* «արջի որջ». «... և արջոյ յառաջագոյն քան զձմեռն ի բայոց մտանելոյ» /Եզն., 175/: «Բայանան օձք ընդ հողով», «Ազգ ազգ առնիտաց ի ձմերանի բայեցեալ անշարժ կայ» /ՆՀԲ/: *Բայ* գոյականը փաստորեն միայն «արջի որջ»-ն է /համենայնդեպս ըստ վկայված օրինակների/, իսկ *բայանալ* բայը վերաբերում է նաև ուրիշ կենդանիների: *Բայ*-ը բնիկ հայերեն բառ է /Աղայան, 1974, 35,36: Ջահուկյան, 1987, 116/[15]:

*Բոյն*- հիմնականում ունի «թռչունների բույն» իմաստը, բայց ըստ ՆՀԲ-ի նաև՝ «դադարք այլոց կենդանեաց. որջ, խշտիք»: «Ի բոյն կորեանց իժից արկցէ զձեռն իւր» /Ես., ԺԱ, 9/: «Թէ զիարդ ի բոյն իժից մանուկ մատաղ արկանիցէ զձեռն և ոչ ինչ մեղանչիցեն» /Ոսկ., Ես., 139/: Նկատելիորեն *բոյն*-ը ավելի հաճախ թռչունների և օձերի բնակատեղի է: Հ.-ե. ծագումով հայերեն բառ է /Ջահուկյան, 1987, 116/:

*Դադար*- «Մտին գազանք ի դադարս, դօղեցին ի խշտիս» /Յովբ.,ԼԷ,8/: Գործածվում է հոգնակի թվով:

*Գաւիթ* ունի և «գոմ, փարախ» իմաստը:

*Գոմ*- «տավարի, ոչխարի փարախ»: «Եւ կայանս ամենայն անասնոց և գոմս հօտից» /Բ. Մնաց., ԼԲ, 28/: «Պակասեցան հօտք ի գոմոց» /ՆՀԲ/: Բնիկ հայերեն բառ է:

*Ջուարակափակ*- ըստ ՆՀԲ-ի «բակ կամ փարախ արջառոց»[16]:

*Խիշտ/խշտիկ/խշտեակ*- հիմնական իմաստն է «անկողին, աղքատի խեղճ անկողին», իմաստի զարգացմամբ նաև՝ «գազանի որջ» /տե՛ս *Դադար*-ի օրինակը/: Բառի փոքրիշատե համոզիչ ստուգաբանություն չկա: Ենթադրվում է խեթական ծագում /Ջահուկյան, 1987, 314/:



*Կաղաղ* «որջ՝ գազանների, վարազների, բույն՝ օձի, իժի»: «Ապա եթէ ոմանք ի յուլութեան...ի յորջս և ի մայրիս և ի կաղաղս գազանացն... շրջեսցին» /Փիլ., Բանք, 13/: «Կաղաղս և հանգրուան պատրաստական արարին վիշապ օձին կամակորի» /ՆՀԲ/: Բնիկ հայերեն բառ է:

*Մակաղատեղ*- «ոչխարների՝ խմբով հավաքվելու տեղ»: «Ի մակաղատեղս հօտից և ի հանգրուանս անդոց» /ՆՀԲ/: *Մակաղ* արմատը սեմական փոխառություն է /Արմ./:

*Մորի* -«գազանների որջ»: «Որպէս զառիւծ ի մորւոջ իւրում»: «Գազանացն, յորոց կիսոցն և մորիքն արտաքոյ ընտելութեանն մարդկան են» /ՆՀԲ/:

*Մորիս առնուլ* «քնավորվել, որջանալ» հարադրությունը ՆՀԲ-ը չունի: Բառը վկայված է Փիլոնի գործերից մեկում. «Թանձր մացառս ուզեալ մորիս առնէ» /Փիլ., Բանք, 141/:

*Մսուր*- «ընտանի կենդանիների խոտ ուտելու տեղ, նաև՝ ախոռ, գոմ»: «...գոչիցէ եզն առ մսուր, յորժամ ունիցի զկերակուր» /ՆՀԲ/:

*Որջ* -բառարանները բացատրում են «գազանների բույնը» /Արմ./, «Դադարք գազանաց և էրէոց. կաղաղ, մորի, բայոց» /ՆՀԲ/: ՆՀԲ-ում վկայված օրինակներն էլ վերաբերում են վայրի կենդանիներին. «Ձի մի՛ ի բակէ քումմէ տարեալ եղէց յորջս գայլոց»: «Միթէ որջ բորենւոյ իցէ»: «Աղուեսուց որջ գոն» /ՆՀԲ/:

*Սոր*- «ծակ, խոռոչ, նաև թռչունի բույն, գազանի, սողունի որջ»: «Թաքուցեալ յայրս և ի ծերպս վիմաց և սորս երկրի»: «Օձք բայանան ընդ հողով և որջքն իւրեանց են ի սորս և ի սոյզս երկրի»: «Բոյն, որջ» իմաստը պայմանավորված է բառի բուն՝ «ծակ, խոռոչ» նշանակությամբ: *Սոր*-ը բնիկ հայերեն բառ է:

*Փարախ* «ոչխարների գոմ»: Բառը փոխաբերաբար ավելի շատ կիրառվում է «եկեղեցի, վանք, իջևան» իմաստով: *Փարախապետ* բառն էլ նշանակում է «վանահայր»:

Այս ենթախմբի անվանումների մեջ գերիշխող են հ.-ե. ծագումով հայերեն բառերը՝ *բայ, բոյն, գոմ, կաղաղ, մորի, սոր*: Իրանական փոխառություններ են՝ *ախոռ, ապաստան: Ապաստան*-ը և *ախոռ*-ը փոխառության սկզբնական շրջանում վերա-

բերում էին ձիերին, իսկ ձի և ձիուն առնչվող շատ անվանումներ իրանական ծագում ունեն:

Կան նաև կենդանանուն+տեղ ցույց տվող ածանց /անոց, ոց, արան/ կազմություններ՝ *ասպաստան, եզնանոց*...

Նկատելի է, որ այս կարգի կազմությունները գրաբարում, ի տարբերություն արդի հայերենի, խիստ սակավաթիվ են: Օրինակ՝ արդի հայերենի *անասնանոց, գազանանոց, ձիանոց, կովանոց, ճագարանոց, շնանոց* բառերը ՆՀԲ-ում չկան:

### *Կենդանանունների իմաստային զարգացումները*

Գրաբարի շատ կենդանանուններ հիմնական իմաստից զատ ձեռք են բերել նոր իմաստներ:

1. *Կենդանանուն-գործիքների անվանում. գայլ* «փերանակապ», *էշ* «պատերազմական քառոտանի մեքենա», *խոզ* «կամրջի երկաթե կապերը», *կարիճ* «տանջանքի գործիք»:

*2. Կենդանանուն-հատուկ անուններ.*

ա/. Երկնային մարմիններ /մոլորակ, աստղ, կենդանակերպ/՝ *առիւծ, արջ, եզն, զուարակ, խոյ, կարիճ, ձուկն*...: Եզնիկի գրքի ներքոբերվող հատվածում դրանց մեծ մասը առկա է. «Մինչ դեռ առիւծն, ասեն, յաստեղատանն իցէ՝ և ծնանիցի ոք, թագաւոր լինելոց է. և մինչ դեռ եզն է՝ և ծնանիցի ոք, հզօր և բարենշան գալոց է, և մինչ դեռ խոյն է՝ և ծնանիցի ոք, մեծատուն լինելոց է... և յորժամ կարիճն է՝ և ծնանիցի ոք, չար և մեղանչական լինելոց է» /Եզն., 155-156/:

բ/. Անձնանուններ. *Այծեմնիկ, Առիւծ, Արջուկ, Գառնիկ, Եզնիկ, Ընձակ, Խոճկորիկ, Կարիճ, Կորիւն, Վարազ, Ցլիկ*... «Երբ ի Ցրի առ գործակալ քաղաքին Խոճկորիկ անուն՝ նախարար յԱղուանից աշխարհէն» /Կղնկտ., 1983, 57/: «Ինքն գնաց առ իշխանն նոցա Կարիճ» /Օրբ., 170/:

Կենդանունուններով կան նաև տեղանուններ. *Գայլ* /գետ/, *Օձ* /գետ/, *Օձաբեր* և այլն:

Ըստ Ն.Դիլբարյանի դիտարկման՝ Հայաստանի լեռնանուններից ամենագործածականը տեղանքի միավոր ցույց տվող բառարմատներն են... «Երկրորդ տեղում կենդանանուններն են, որոնք լեռնանուն դառնում են և պարզ արմատական ձևով, և բարդության կազմում, և ածանցներով և բառակապակցության կազմում՝ *Առյուծ, Առյուծասար, Արջ, Արջասար, Աքլորակատար, Գայլ, Գայլանոց, Գառնաքար, Եղն, Եղնասար....Օձասար*, այս և համանման անվանումներով ոչ թե մեկ, այլ մի շարք լեռներ կան ՀՀ տարբեր մարզերում»[17]:

Այս կարգի անվանումները /կամ գոնե մի մասը/ թերևս գործածության հին ակունքներ ունեն՝ անկախ գրաբարում վկայված չլինելու հանգամանքից:

Կենդանանուններից կազմվում են նաև բուսանուններ /պարզ կամ բաղադրյալ/, որոնք ակունքվում են հիմնականում միջինհայերենյան շրջանից: Որոշ կենդանանուններ ածականական /հատկանշային/ կիրառություն ունեն. *շուն* «շնացող, պոռնիկ», *աղուէս* «խորամանկ», *իժ* «չար»... և այլն:

## ՆՀԲ-ՈՒՄ ՉՎԿԱՅՎԱԾ ԲԱՌԵՐ

*Ամարու* «գառ». «Դարձեալ Եսայիաս գոչէ... իբրև զոչխար ի սպանումն եկն և իբրեւ զամարու առաջի կտրողի իւրոյ անձայն« /Ոսկ., Ճառք, 426/:

*Անքիղոս* «ձկան տեսակ է». «Ձուկն անքիղոս, որ կոչի կողամայր» /Խաչիկ., Եղիշ., Մեկն. արարծ., 189/:

*Առիւծակապիկ, առիւծաշուն*. «...յորում առիւծաշուն գազանն... և այլ մարդակերպ գազանք, շնակնճիթ... որպէս առիւծակապիկ» /ՄՀ,Բ, 2146/:

*Ասրատակ* «բրդոտ». «Ոմն զբուս և զասրատակս ըմբռնեալ...» /Մագ., Թղթ., 231/:

*Արջամուկն* - «...լինգնաս, արջամկունք և այլք բազում սքանչելի գազանք» /ՄՀ,Բ, 2145/:

*Արտի* «վայրի ոչխար». «Ունի լերինս մեծս երիս. ունի երէս, եղջերու...առն և արտի» /ՄՀ,Բ, 2151/:

*Բնաս-* «Նմանին օձին, որ կոչի բնաս» /Արմ./:

*Եղովիճ*- «Նոյնպէս և քան զեղջերու չիք ինչ պիղծ և վասն այնորիկ ասեն կոչի եղովիճ» /Ոսկ., Պօղ., Ա, 306/:

*Եսուբէս*- «Լինի յաշխարհն այն եւ զեսուբէս գազանն...երկակենցաղ գոլով» /ՄՀ,Բ, 2146/:

*Զիգն* «ձկան տեսակ է». «Կեփաղք և զիգն իցեն ահագինք» /Բրսղ, 245/:

*Թեպեկ* «կապիկ». «Թեպեկի վասն է՞ր երկիր պագանէին...» /Ոսկ., Ճառք Անդր., 789/:

*Թմբրաձուկն*- «Թմբրաձուկն թմրեցուցանէ զշօշափմունս գործարանաց» /Պիսիդ, 1545/:

*Թրիանէ*- «Զեզ է ամաչելն՝ պաշտողացդ զբռչունն թրիանէ, որ է արմաւն» /Միխ.Ասորի, 179/:

*Լինգնաս*- /տե՛ս *Արջամուկն*-ի օրինակը/:

*Խանդիռն* «առասպելական կենդանու անուն է». «Ծովացուլն ի կովէ ասեն ելեալ... և զխանդիռն ի յիշոյ» /ԲՄ, 1964,323/:

*Կուռաք* «ագռավ». «Կուռաք, ագռաւ, կռունկ» /Արմ./:

Մուղ «մատակ էշ կամ ջորի». «Եւ կրէին իշովք, ուղտովք և ջորւոք և մղաւք զկերակուրս» /ՆԳ.Ա. Մնաց., ԺԲ, 40/:

*Յօք* «Եւ տեսանէի վիշապք և պիծակ յօքք ահագին իբրև զուղտ» /Արմ./:

*Նետոզնի*- «Բերին և նետոզնոյ փուշ, որ է վեց կանգուն և այլ բազում ժանիս ձկանց» /Պատմ. Աղեքս., 426/:

*Շնակնճիթ*- /տե՛ս *Առիւծաշուն*-ի օրինակը/:

*Ոզնիկ*- «Անդ ոզնիկք և յուշկապարիկք բնակեսցեն...» /Ոսկ., Մտթ., Գ, 24/:

*Պապիւ*- «Յորժամ պապիւք ի ծովէ ելանեն բազում զմիմեամբք՝ հողմ նշանակէ» /Արմ./:

*Ջրաձի*- «Եւ ղփինքն եւ փոկն եւ զոր ջրաձիսն կոչին» /Կանոն., 659/:

*Սիկղ,սկիւղ* «առասպելական երեքգլխանի կենդանի». «Վիշապոտունս և զոր սկիւղսն անուանեն» /Ոսկ., Պօղ., Ա, 62/:

*Փալանիկ* «լծկան ձի կամ ջորի». «/Ձիոց/ չեզոքն, որպիսի քուռակ...փալանիկ» /Արմ./:



*Փահլ* «արու ձի». «Եւ ձիոյ՝ յովատակ, նժոյգ փահլ, երիվար» /Մագ., Քեր., 240/:

*Օձաձուկն*- «Ո՞վ ուսուցանէ զառակս առնել օձաձկանն» /Պիսիդ, 1030/:

Մատենագրության մեջ, հատկապես Խորենացուն և Շիրակացուն վերագրվող աշխարհագրական գործերում, վկայված են բազմաթիվ ցամաքային և ջրային կենդանիներ /առասպելական, կամ այս կամ այն երկրին/տարածքին բնորոշ/, որոնք ՆՀԲ-ում չկան: Բոլոր օտար անվանումներին կամ արհեստական պատճենումներին անդրադառնալը նպատակահարմար չենք համարում*:

* * * *
* *

## ԹՌՉՆԱՆՈՒՆՆԵՐ

Գրաբար մատենագրությունը բավարար տեղեկություններ է տալիս թռչնանունների, թռչուններին բնորոշ զանազան հատկանիշների, որոշ հատկանիշների հիման վրա թռչունները տարբերակելու, թռչունները որպես այս կամ այն խորհրդանիշ ներկայացնելու, թռչնանունների բառակազմական յուրահատկությունների և այլ իրողությունների մասին: Ճիշտ է, այս և նման կարգի տեղեկությունները ավելի ընդգրկուն են թարգմանական գրականության մեջ, այդուհանդերձ դրանք ուշագրավ են, մանավանդ որ հիմնականում հինգերորդդարյան վկայություններ են:

Քննությունը ցույց է տալիս, որ գրաբարում ավանդված թռչնանուններն ակնհայտորեն սակավաթիվ են, քան միջին հայերենում ավանդվածները: Այս փաստը տեսանելի է հայերենի թռչնանուններին վերաբերող Ջ. Գրեպպինի ուշագրավ աշխատության մեջ[18]:

Սա կարելի է բացատրել երկու հանգամանքով. ա/ զանազան հատկանիշներով նույնական թռչունների տարահատկանիշ մաս-

* Ցանկում կան նաև թռչնանուններ:

նավորում չի կատարվել, մի երևույթ, որ հակառակն էր միջին հայերենում, երբ բազմաթիվ նոր թռչնանուններ են հանդիպում՝ *թռչնանուն+այլ հատկանիշ, ոչ թռչնանուն+որևէ հատկանիշ* կաղապարով /հմմտ. *ջրագռաւ, ծովագռաւ, ծովորոր, ծովարծուի, ցախսարեկ, ժրահաւ, երաշտահաւ, լաշհաւ, մանգղաթև, փայտփոր* և այլն, ք/ հնարավոր է, որ մի շարք թռչնանուններ գրաբարում պարզապես չեն վկայվել:

Գրաբարում թռչնանունների ընդհանրական անվանումներն են՝ *թռչուն, թեւաւոր, հաւ/ք/.* հմմտ. «Յամենայն հաւուց թռչնոց» /Ծննդ.Զ,20/: «Իբրեւ զհաւու թռուցելոյ յօդս» /ՆՀԲ/: Այս իմաստով երբեմն հանդես է գալիս *օդագնաց* բառը: Թռչունների ընտանեցումը բավական ուշ է կատարվել: Այժմ ընտանի համարվող որոշ թռչուններ գրաբարյան, հատկապես վաղգրաբարյան վկայությունների շրջանում թերևս եղել են վայրի: Օրինակ՝ Փիլոնի մի վկայությունից զգացվում է, որ *սագը* դեռևս ընտանեցված չէր. «Քանզի կիքրիս, սալամունք և կաքաւք և սագացն և խորդոց ազգ յանապատս փախչին» /Փիլ., Բանք, 107/: Գրաբարյան վկայություններում թռչունները տարբերակվում են ըստ որոշ հատկանիշների /ձայն, գեղեցկություն, մեծություն, բարձր թռչելու հատկություն, գիշատիչ և ոչ գիշատիչ և այլն/:

Ուշագրավ վկայություն է բերում Բարսեղ Կեսարացին. «Եւ զկէսն հերձաթեւս անուանեցին, այսինքն՝ զարծուիս և զկէսն մաշկաթեւս, այսինքն՝ զչղջիկանս գիշերոյ և զկէսն անաւսրաթեւս, այսինքն՝ զմեղուս և զկէսն պատենաթեւս, այսինքն՝ խաղողեփեացս...զի կէս ազգ երամ երամ միաժողով շրջին՝ իբրեւ ծիծառունք և խորդք և ճայք և խոլոմունկք և սարիկք և տարմահաւք: Կէսքն առանց գլխոյ և իշխանի... և կէսքն ընդ առաջնորդաւ հնազանդեալ, այսինքն՝ են խորդ» /Բրսղ, 259-260/:

Առավել հաճախ է հանդիպում *պիղծ* /որոնց միսը ուտելի չէ/- *ոչ պիղծ* տարբերակումը: Այս հարցում դեր ունեն աշխարհագրական միջավայրը՝ ժողովրդի՝ պատմականորեն ձևավորված ավանդույթը, կրոնը և բազում այլ գործոններ: Նման կարգի մի յուրահատուկ սկզբունք է առաջարկում Եվս. Եմեսացին. «Իսկ ի թռչնոց, որ յերիս մագիլսն գնան եւ յետին բիտն ի վերայ քան զայլ



մագիլսն կայցէ, կանխակալ սովորութիւնն աւրէնսդրաց զնոսա ուտել...և յայնցանէ որ ի չորս մագիլսն գնայցեն և բիտն յետին խոնարհագոյն կայցէ՝ արգելին օրէնքն ուտել, քանզի և սովորութիւն» /Եմես., Մեկն., 127/: Այս ըմբռնումը գալիս է թերևս Աստվածաշնչից, որի տարբեր գրքերում շոշափվում է հիշյալ հարցը. հմմտ. «Եւ այս է, զոր ոչ ուտիցէք ի նոցանէ զարծուի, և զջայլամն, և զբու և զճայ, զսոխակ և զագռաւ... /Բ. Օր., ԺԴ, 11-19/: «Եւ ամենայն զեռուն թռչուն, որ գնայցէ ի չորս՝ պիղծ եղիցի ձեզ: Այլ զայն ուտիցէք ի զեռնոց թռչնոց, որ գնայցեն ի չորս, որոյ իցեն կարթք ի վերոյ քան զոտս ոստոստել նոքօք յերկրէ. եւ այս իցէ զոր ուտիցէք ի նոցանէ. զջորեակդ և որ ինչ նման է նմա և զխարագուլ... և զմարախ և զօձամարտ» /Ղեւտ., ԺԱ, 21-23/:

Բերենք Ս. Գրքից մեկ այլ վկայություն, որում նույնպես այս հարցն է շոշափվում. հատվածը ուշագրավ է բազմաթիվ թռչնանուններ թվարկելու տեսանկյունից. «Զամենայն հաւ սուրբ ուտիցէք: Եւ այս է զոր ոչ ուտիցէք ի նոցանէ, զարծուի և զկորճ եւ զգետարծուի եւ զցին և զանկղ... եւ զջայլամն և զբու եւ զճայ եւ զարագիլ, եւ զփոր եւ զհողամաղ եւ զքաջահաւ... զսոխակ, հաւալուսն, քաղաղր, յոպոպ, չխղջ» /Բ.Օր., ԺԴ, 11-18/:

Որոշ թռչուններ */աղավնի, տատրակ/* մաքրության, անմեղության և բարոյականության խորհրդանիշներ են՝ նաև կրոնական երանգավորումով:

Թռչնանուններում արու-էգ տարբերակվածությունը միշտ չէ, որ ի հայտ է գալիս: *Մարի, էգ* ընդհանուր բնորոշիչներ են, իսկ թռչունների որոշ տեսակների դեպքում համապատասխան անվանումը վերաբերում է *արու* թռչնատեսակին. *վարուժան, ճուռակ, աքաղաղ:*

Թռչնանունների ծագումնաբանական շերտերից ամենաընդգրկունը բնիկ հայերեն բառախումբն է: Առայժմ գոյություն ունեցող հավաստի ստուգաբանությունների հիման վրա հ.-ե. են համարվում հետևյալ թռչնանունները. *ագռաւ, աղաւնի, արծուի, աքաղաղ, բու, բուէճ, լոր, ծիծառն, կերկեր, կռունկ,հաւ, մարի, մեղու, յոպոպ, սագ, տատրակ, ցին, ուրուր*: Ավելի ընդհանուր հասկացություններ ար-

տահայտող *թռչուն հաւ, մարի* բառերը նույնպես հ.-ե. ծագում ունեն:

Անդրադառնանք մի քանի բառերի: Հ.-ե. *վերին աշխարհի* բնակիչների ընդհանրական անվանումը ծագում է * Hцei -ից, որից հ. հնդ. vi/ve «թռչուն», ավեստ. viš «թռչուն», լատ. auis «թռչուն», հայ. հաւ: *Հաւ*-ը սկզբնապես ունեցել է «թռչուն» ընդհանրական իմաստը, որը հետագայում ձեռք է բերել այլ նրբիմաստներ. *ընտանի հավ* /թռչունի տեսակ/, *էգ հավ, աքաղաղ*. հմմտ. «Զամենայն հաւ սուրբ ուտիցէք» /ՆՀԲ/: «Ժողովէ հաւ զձագս իւրոյ ընդ թեւովք» /Մատթ., ԻԳ, 37/: «Մինչև հաւու խօսեալ իցէ» /Մատթ., ԻԶ, 34/:

Հ.-ե. շատ ժողովուրդներ *արծիվը* ուժի, զորության, արագընթացության խորհրդանիշ էին դիտում: Հին հնդկերենում syená «արծիվ» բառի հետ գործածվում է «արագաթռիչ» մակդիրը, որը համապատասխանում է իրանական լեզուներում *արծուի*-ն տրվող անվանը[19]: Հայկական ավանդություններում արծիվը թռչունների արքան է՝ բարձրաթռիչ, ուժեղ և արագընթաց: Արդեն ընդունելի է համարվում այն կարծիքը, որ Ուրարտուի Մենուա թագավորի ձիու անունը՝ *Արծիբի*, հայ. *արծուի* բառն է[20]: Ձիու և արծվի զուգադրությունն ենք տեսնում նաև մեր հնագույն վիպասանական հատվածներից մեկում.

Հեծաւ արի Արտաշէս ի *սեաւն* գեղեցիկ
եւ հանեալ զոսկէօղ շիկափոկ պարանն
եւ անցեալ որպէս *զարծուի* սրաթեւ ընդ գետն...

Մագիստրոսի քերականության մեջ կա *կանդ* «արու արծիվ»- «կանդ, որ նշանակէ միայն զարու արծուի կամ վարուժանակ և ոչ զայլ ոք ի թռչնոցն»[21]: Ջ.Գրեպպինը բառը կապում է պրս. kand «քաջ»-ի հետ, որն, իրոք, արծիվներին տրվող մականուն է[22]:

*Կռունկ*-ի զուգահեռները նույնպես անհերքելի են դարձնում բառի հ.-ե. ծագումը: Աճառյանը այն ծագած է համարում *ger «գոչել» բնաձայնական արմատից: Ըստ Է.Աղայանի «հայերենը նույն արմատից ունի երկու թռչունի անուն՝ *կերկեր* և *կռունկ*, ինչպես որ լատիներենը՝ grus «կռունկ», «արջնագռավ», լիտ.՝ garnys «ճայ», gervi «կռունկ»[23]: Գ.Ջահուկյանը *կռունկ*-ի համար բերում է՝



*gerong զուգահեռը[24]: Նշենք, որ *կերկեր* թռչնանունը թեև բառարանները ավանդում են, բայց վկայություն չկա:

*Անգղ*. Արմատական բառարանում ստուգաբանված չէ: Գ.Ջահուկյանը հնարավոր է համարում կապը հ.-ե. *ank «ծռել» արմատի հետ /թռչունի կտուցը կեռ լինելու համար/[25]: Ղարաբաղի բարբառում *անգ* «անգղ» ավելի է հաստատում կապը հ.-ե. նշված ձևի հետ, մյուս կողմից՝ բարբառային ձևը ավելի հին է, քան գրաբարյանը, որը լեզվական ուշագրավ երևույթ է:

*Աղաւնի, տատրակ, լոր* բառերի հ.-ե. ծագումը նույնպես հիմնավորվում է[26]: *Ագռաւ, բու, յոպոպ* համարվում են բնաձայնական բառեր, և բերվում են համապատասխան հ.-ե. զուգահեռները[27]:

Գրաբարում ավանդված բազմաթիվ թռչնանուններ էլ փոխառյալ են այս կամ այն լեզվից: Չնայած իրանական լեզուներից հայերենի կրած մեծ ազդեցությանը, թռչունների իրանական անվանումները փոքրաթիվ են: Վաղ գրաբարում գործածական են *արմաւ, բազէ, սարեակ, սիրամարգ, վարուժան,* ուշ շրջանից՝ *բադ, կաչաղակ, թութակ, շահէն* «բազե», *ճուռակ* «բազեի տեսակ», *իշտրմուր*: Վերջիններս ոչ հաճախական կիրառություն ունեն:

Թեև Աճառյանը, ըստ էության, անվերապահորեն ընդունում է *սարեակ*-ի իրանական ծագումը /տե՛ս Արմ./, սակայն հ.-ե. ḱer, ḱr արմատը անմերժելի չի դարձնում բառի բնիկ հայերեն լինելը: Ի դեպ, Գ. Ջահուկյանը, *սարեակ*-ը դնելով իրանական փոխառությունների ցանկում, այդուհանդերձ հարցականով նշում է նրա բուն հ.-ե. բնույթը[28]: Իսկ Ջ.Գրեպպինը *սարիկ*-ը դիտում է որպես իրանական, իսկ *սարեկ*-ը՝ հ.-ե. ḱer, ḱr- արմատից[29]: *Մարգ* «թռչուն» անկախաբար չի կիրառվում, այլ՝ *լորամարգ, սիրամարգ* բառերի կազմում: Ինչ վերաբերում է *արամազդ* թռչնանվանը /ըստ Արմ.-ի «մի տեսակ թռչուն»/, ապա բնագրային ու բանասիրական այլ կարգի քննությունից պարզվում է, որ այդպիսի թռչնանուն չկա, և Այգեկցու առակում /որին հղում է Արմ.-ը/ նկատի է առնված Արամազդ աստվածը[30]:

*Վարուժան*-ը Արմատական բառարանում կասկածանքով է համարվում իրանական փոխառություն, որովհետև «մայրը ձևը

յայտնի չէ»: Ստուգաբանական նոր փաստերը հիմնավորում են բառի իրանական բնույթը[31]:

Նկատելի է, որ իրանական փոխառություններում առկա է *բազէ* թռչնանվան հոմանիշային շարք՝ *բազէ, զաւազ, ճուռակ, շահէն*: Անշուշտ, սրանք փոխառվել են տարբեր ժամանակային կտրվածքներում և նրբերանգային մի առանձնահատկություն են դրսևորում՝ արտահայտելով /թեև ոչ բոլոր վկայված օրինակներում/ բազեն որպես որսորդ թռչուն: *Բազէկիր, բազէակալ* կազմություններն էլ դարձյալ որսորդությանը վերաբերող բառեր են:

Հունարենից կատարված փոխառությունները նույնպես քիչ են. *եթիա, եփենե, իբիդ, կիկնոս, տիտոս, տրոքիլոս, փալկոն, փասիան, փիւնիկ, քարադր, քիփե:* Սրանք հաճախական չեն, վկայված են հիմնականում թարգմանական գրականության մեջ և գիտակցվում են որպես օտար բառեր: Փոքրիշատե «հայկական» երանգ են ստացել *փասիան, փիւնիկ և քարադր* թռչնանունները: Վերջինս վկայված է Աստվածաշնչում և ուշ շրջանի մի քանի այլ գործերում:

Սեմական փոխառությունների շարքում կարելի է տարբերակել Աստվածաշնչի եբրայական թռչնանունները՝ *ասիդ, արսին, նէսու, նէեղաս.* սրանք վկայված են մեկական անգամ:

Ասորերենից են՝ *կաքաւ, պապկայ, ջայլեամն*: *Պապկայ* վկայված է 5-րդ դարից, այդ թռչունի մասին որոշ տեղեկություններ կան և Կաղանկատվացու Պատմության մեջ: Ջ.Գրեպպինը բառը համարում է արաբական փոխառություն[32]: Սակայն 5-րդ դարից վկայված լինելու հանգամանքը մերժելի է դարձնում այս փաստարկը և ընդունելի Արմ.-ի ասորական փոխառություն համարելը: Միջինհայերենյան շրջանից որպես հոմանիշ սկսում է գործածել *թութակ* բառը, որը իրանական փոխառություն է: *Մաքալուկ*-ը թեև Արմատականում ստուգաբանված չէ, սակայն մեր կարծիքով, բառի ասորական բնույթը կասկած չի հարուցում: Ահա վկայված օրինակը. «Որպէս ծիծառանն և այլոց թռչնոց, որ անուանեալ կոչին մաքալուկք, որք յօդոց զմանրամաղ իրս ինչ թռուցեալ բերեն ի դարման իւրեանց պիտոյից» /Բրսղ, 258/: Ամենայն հավանականությամբ, բառն ունի նույն արմատը, ինչ որ *մանգաղ* բառը, իսկ



վերջինս ասորական փոխառություն է. maggəla /հնագույն ձևը՝ * mangəla /:

Ուշադրության է արժանի և այն փաստը, որ «Վեցօրեայից» բերված օրինակում *մաքալուկ*-ը համապատասխանում է հուն. *դրեպանիս*-ին, որը ծագում է *դրեպանոն* «մանգաղ» բառից /Արմ./: Նկատենք նաև, որ այս բառի միջինհայերենյան անվանումն է *մանգղաթեւ,* որը, ըստ Ջ. Գրեպպինի, վկայված է Հովհաննես վարդապետի տաղերում.

Մանկղաթեւին պիտի խղճալ
Ինքն չկարէր նստել ի վայր...[33]

*Մանգաղի* հետ կապը, ըստ երևույթին, այդ թռչունի թևերի մանգաղաձև լինելն է:

Մի շարք թռչնանունների ծագումը ստույգ չէ՝ *անծեղ, ասպուճակ, արտոյտ, արօս, աքար, թռնծ, կատակ, ճայ, որի, չիղջ, պասկուճ, սալամբ, սակռ, սոխակ, ցեծ, փոր, փաղ...* Սրանցից *կատակ, սոխակ, կարապ* բառերի համար կարելի է ենթադրել իրանական ծագում, որը հիմնավորելու համար, սակայն, նոր փաստեր են անհրաժեշտ:

### *Թռչնանունների բառակազմական յուրահատկությունները*

Ըստ բառակազմական յուրահատկությունների՝ գրաբարի թռչնանունները կարելի է բաժանել հետևյալ խմբերի.

ա/ *Արմատական* /կամ որպես այդպիսին գիտակցվող/ բառեր. *անգղ, ասիդ, աքար, սագ, իբիդ, հաւ:*

բ/ *Արմատ+այլ ձևույթ*: Այդ ձևույթներից են.

- ակ- *ասպուճակ, թութակ, կատակ, ճուռակ, ջորեակ, սոխակ, վարուժնակ, տատրակ...*
- ի - *աղավնի, արծուի, մարի, լորամարգի...*
- իկ - *ճայիկ, սարիկ, չղջիկ*
- ուկ - *ճնճղուկ, մաքալուկ*
- ուն – *թռչուն*

Նշված ձևույթները որոշ դեպքերում գիտակցվում են որպես ածանցներ, իսկ այլ դեպքերում՝ հատկապես հստակ ստուգաբանություն չունեցող բառերում, դրանց ածանցային արժեքը չի գիտակցվում: Իրանական փոխառություններում որոշ ածանցներ /*ակ,իկ*/, կարող են լինել նաև փոխատու լեզվի միավորներ: Հունարեն փոխառություններում շատ դեպքերում առկա են հունարենին բնորոշ *ոս, էս* ձևույթները:

գ/ *Բարդ բառեր.* վերջիններս սովորաբար երկարմատ կազմություններ են՝ *թռչնանուն+այլ բառ կաղապարով*: Ամենագործունը *հաւ+այլ* բառ կաղապարն է՝ *արտաւազդահաւ, երաշտահաւ, ժրահաւ, քաջահաւ, փորահաւ, տարմահաւ, թագաւորական հաւ, հաւփալ, հաւալուսն, հաւապատիր, հաւն արմաւ...* Բերենք մի քանի վկայված օրինակ՝ ըստ հարկի որոշ մեկնաբանություններով ու նկատառումներով:

*Արտաւազդահաւ.* վկայված է Փիլոնի գործերից մեկում. «Քանզի և ոչ արտաւազդահաւդ և ցէծդ և կամ յայնցանէ, որ ի ջուրսդ շրջին...» /Փիլ., Լին., Բ, 117/: Հունարեն բնագրում *կարապ* բառն է: *Արտաւազդահաւ*-ի վերաբերյալ մի նրբին դիտողություն ունի հայտնի բանասեր Ա. Վարդանյանը: Ըստ Վարդանյանի հունական դիցաբանության մեջ Լիգուրիայի թագավորը վերափոխվել է կարապի: Դիցաբանական այս իրողությունը ծանոթ էր հայ թարգմանչին, և վերջինս ձգտել է պահել այդ հենքը ու փոխակերպման գաղափարը արտահայտելու համար հայ բանահյուսությունից հարմար գտել Արտավազդի մասին եղած առասպելը. «Վիշապազունք գողացան զմանուկն Արտաւազդ և դեւ փոխանակ նորա եդին»: «Հետևաբար, - նկատում է Ա. Վարդանյանը,-*կյուկնոս*-ի այլակերպումին դէպքը հայ ականջին յարմարապէս բացատրելու միակ բառը հայ դիցաբանութեան մէջ կը գտնէ թարգմանիչը *Արտաւազդ* ու կկերտէ իր շատ սիրուն *արտաւազդահաւ* բարդութիւնը»[34]:

*Տարմահաւ.* առաջին բաղադրիչը *տարմ* «երամ» բառն է: *Տարմահաւ*-ը վկայված է «Վեցօրեայում». «Եւ կամ զիարդ դարձեալ տարմահաւն եւ սարիկն, յորժամ առնուն հրաման զմեզ բժշկելոյ ի հարուածոցն եւ զնոսա սատակել կորուսանել, գան



հասանեն յանկարծակի ի վերայ և սպառեն» /279/: Հունարեն բնագրում, ըստ Գրեպպինի, միայն *սարեակ* է: Նա միաժամանակ գտնում է, որ *տարմահաւ*-ը և *սարեակ*-ը նույն թռչունի տարբեր տեսակներ են /նշվ. աշխ., 189/:

*Հաւփալ* /գրվում է և *հաւբալ, հոբալ, հովփալ, հօփալ*/. ըստ ՆՀԲ-ի նշանակում է «վայրի աղավնի»: *Փալ-* ձևույթը Ջ. Գրեպպինը համեմատում է պարսկերեն թռչնանուններին բնորոշ -bal- ձևույթի հետ /ն.տ., 134/: Սա վստահելի համադրություն կլիներ, եթե նշված ձևույթով թռչնանուններ վկայված լինեին ոչ թե նոր պարսկերենում, այլ միջինիրանական լեզուներում: Կարելի է ենթադրել, որ *փալ*-ը 5-րդ դարից վկայված *փաղ* «մի տեսակ թռչուն» բառն է, որի ծագումը ստույգ չէ:

*Հաւապատիր.* վկայված է Աստվածաշնչում. «Եւ հաւապատիր և հողամաղ և քաջահաւ...» /Ղեւտ., ԺԱ, 17/: Աստվածաշնչի մեկ այլ գրքում համապատասխան հունարեն բառը թարգմանվել է *ագռաւ*. «Եւ քաջահաւ և զոխակ և զագռաւ...» /Բ. Օր., ԺԴ,17/: Ջ.Գրեպպինը, համեմատելով Աստվածաշնչի եբրայերեն, հունարեն և հայերեն բնագրերը, նկատում է, որ հուն. համապատասխանակի դիմաց հայերենում առկա են *հաւապատիր* /1/, *բու* /1/, *ագռաւ* /2/ /ն.տ., 242/: Իսկ ՆՀԲ-ը *հաւապատիր*–ը մեկնում է «գիշերաբու, ազգ բուոյ, որ ըստ յունաց գիշերային ագռաւ ասի»:

*Այլ բառ+թռչնանուն* կաղապարով են կազմված հետևյալ բառերը՝ *գիշերաբու, գիշերագռաւ, ցախսարեկ, գետարծուի, արջնագռաւ... Ցախսարեկ* և *արջնագռաւ* ուշ շրջանի վկայություններ են: *Գետարծուի*-ի հուն. համապատասխանակն է «ծովարծիվ»: *Ծով* բաղադրիչով թռչնանուններ վաղ գրաբարում թերևս չկան, իսկ միջին հայերենում ունենք *ծովորոր, ծովարտոյտ, ծովարծուի, ծովագռաւ...*: *Ծով, գետ* բառերը այսպիսի կազմություններում ունեն «ջուր», «ջրավազան» իմաստը. hմմտ. *ծովագռաւ/ջրագռաւ:*

*Ոչ թռչնանուն+ոչ թռչնանուն=թռչնանուն* կաղապարով կազմությունները գրաբարում մեծաթիվ չեն՝ *ասպատակ, հոլամուկ, հողամաղ, ձկնքաղ, ձկնկուլ, մաշկաթև:*

*Ասրատակ*-ը մեկ անգամ վկայել է Մագիստրոսը: Ըստ Արմ.-ի կազմված է *ասր+տակ* բառերից: Նույնն է, ինչ որ միջ. հայ. *բրդոռ*[35]:

*Հողաման*. վկայված է 5-րդ դարից. «Եւ հաւապատիր և հողաման և քաջահաւ» /Ղեւտ., ԺԱ, 11/: Միջինհայերենյան շրջանից գործառող *արօր* թռչնանունը թերևս ստեղծվել է *հողաման*-ի իմաստային համաբանությամբ:

*Աղակտուց*. վկայված է 7-րդ դարից[36]:

Հիմնական գծերով ներկայացնելով գրաբարի թռչնանունների բառակազմական, բառիմաստային, գործառական յուրահատկությունները՝ նկատենք, որ հարցի համակարգային և ամբողջական քննության համար անհրաժեշտ է ներառել հայերենի բոլոր լեզվավիճակների ընձեռած տվյալները, որը այլ խնդիր է: Գրաբարյան նյութը այդօրինակ ուսումնասիրության հենք կարող է լինել:

## ԾԱՆՈԹԱԳՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

1. Гамкрелидзе Т.В., Иванов В.В., Индоевропейский язык и индоевропейцы, Тбилиси, 1984, էջ 465:
2. Նշվ. աշխատությունը, էջ 486:
3. Արմ.-ը *յաւանակ*-ը մեկնում է «ձագ չորքոտանիների, յատկապէս իշու, ձիու, նաև եղնիկի»: Բառը նախապես ունեցել է թերևս միայն «քուռակ» /էշի/ իմաստը: *Ձագ* ընդհանրական իմաստը ձեռք է բերվել ուշ գրաբարում:
4. Տե՛ս Հերոդոտոս, Պատմություն, Ե., 1986, էջ 103:
5. Է. Աղայան, Բառաքննական և ստուգաբանական հետազոտություններ, Ե., 1974, էջ 89-90:
6. Տե՛ս Annual of Armenian Linguistics, 1988, N9, էջ 49-51:
7. Հայերենի՝ իրանական ծագում ունեցող գունանունների գործառության, փոխառության պատճառների մասին տե՛ս Լ.Հովհաննիսյան, Հայերենի իրանական փոխառությունները, Ե., 1990, էջ 108-114, նույնի՝ Գրաբարի բառապաշարի իմաստային խմբերի քննություն /մաս 1/, Ե., 2008, էջ 105-124:
8. Մարդագայլի առասպելի մասին տե՛ս Սարգիս Հարությունյան, Հայ առասպելաբանություն, 2000թ., էջ 281-286:
9. Տե՛ս Гамкрелидзе Т.В., Иванов В.В., նշվ. աշխ., էջ 502:
10. *Նժոյգ* և *երիվարի* իրանական ծագման նոր փաստարկներ է բերում Ա.Փերիխանյանը: Տե՛ս հեղինակի "Материалы к этимологическому словарю древнеармянского языка, Е., 1995.
11. *Խոզ*-ի՝ իրանական փոխառություն լինելու փաստարկները տե՛ս Լ.Հովհաննիսյան, Հայ-իրանական նոր ստուգաբանություններ, Ե., 2005, էջ 32-33: Նկատենք նաև, որ *խոզ*-ի և նրա տարբեր տեսակների անվանումները նույնպես իրանական են */խոճ/կոր/, վարազ, գոճան, կոճան, կինճ/:*
12. Բառը ասորական փոխառություն է համարում Գ. Ջահուկյանը /Ջահուկյան, 1987, էջ 459/: Գ.Ջահուկյանը սեմական լեզուներից կատարված փոխառություն է համարում և *բուտու* «ճիճու, որդ» բառը /տե՛ս նշվ. աշխ., 486/:
13. Ալեքսանդրի պատմության քննական բնագրի կազմող Հ. Սիմոնյանի ծանոթագրությամբ «բառը ստեղծվել է երկի թարգմանության ժամանակ հուն. *օդուս* «ժանիք» և *տուրաննոս* «բռնակալ, տիրող» բաղադրիչներից կազմված *օդօնտուրաննոս* բառի վարպետ պատճենմամբ» /տե՛ս էջ 588, ծան., 333/:
14. Տե՛ս Ա. Փերիխանյանի նշվ. աշխ., էջ 69/:
15. Եզնիկի բառապաշարի վերաբերյալ ուշագրավ մի դիտարկում ունի Վ.Առաքելյանը. «Եզնիկը ունի մի շարք բառեր, որոնք գավառական բնույթ են ունեցել և չհասկացվելով այլ հեղինակների կողմից՝ լայն կիրառության մեջ չեն մտել ու այդ պատճառով դրանց մի մասը այսօր ենթադրաբար է բացատրվում»: Այդ կարգի բառերի շարքում նշում է և *բայոց*-ի *բայ*-ը, որ «պահպանվել է օրորոցային դիմումի մեջ. բայ-բայ, քնիր»: Տե՛ս Վ.Առաքելյան, Ակնարկներ հայոց գրական լեզվի պատմության /5-րդ դար/, Ե., 1981, էջ 122/:

16. *Զուարակափ* թե՞ *զուարափակ.* ճիշտ ձևի և ստուգաբանության մասին տե՛ս Լ.Հովհաննիսյան, Հայ-իրանական նոր ստուգաբանություններ, Ե., 2005, էջ 24-26:
17. Ն.Դիլբարյան, Հայաստանի լեռնանունները, «Ավանդականը և արդիականը հայոց մշակույթում, ՀՀ ԳԱԱ հնագիտության և ազգագրության ինստիտուտի 50-ամյակին նվիրված հոդվածների ժողովածու», Ե., 2010թ., էջ 573:
18.J.A.C. Greppin, Classical and Middle Armenian Bird Names, New York, 1978. Այս աշխատությունը թեև նաև լեզվաբանական քննություն է /ստուգաբանական փորձեր, այլ լեզուների համապատասխանակների հետ համադրում, ձևութային առանձնացում և այլն/, սակայն հիմնական ուղղվածությամբ թռչունների նկարագրություն է /երբեմն նկարներով/, թռչունների՝ կենդանաբանության մեջ ընդունված դասակարգումներ:
19. Т.В. Гамкрелидзе, Вяч. Вс. Иванов, նշվ. աշխ., էջ 537, 539:
20. Գ.Ջահուկյան, նշվ. աշխ., էջ 341, 443:
21. Տե՛ս Н.Адонц, Дионисий Фракийский и армянские толкователи, Петр-д, 1915, էջ 240:
22. J. Greppin, նշվ. աշխ., էջ 49:
23. Է.Աղայան, Բառաքննական և ստուգաբանական հետազոտություններ, Ե., 1974, էջ 83:
24. Գ.Ջահուկյան, նշվ. աշխ., էջ 125:
25. Տե՛ս նույն տեղը, էջ 412:
26. Տե՛ս նույն տեղը, էջ 111, 134, 151, 197:
27. Տե՛ս նույն տեղը, էջ 114, 122, 125:
28. Տե՛ս նույն տեղը, էջ 208:
29. J. Greppin, նշվ. աշխ., էջ 189:
30. Տե՛ս Լ.Հովհաննիսյան, Հայերենի իրանական փոխառությունները, Ե., 1990, էջ 222-223:
31.Տե՛ս А. Периханян, Материалы к этимологическому словарю древнеармянского языка, Ереван, 1993, էջ 68-70:
32. Տե՛ս J. Greppin, նշվ. աշխ., էջ 142:
33. Տե՛ս J. Greppin, նշվ. աշխ., էջ 160:
34. Տե՛ս «Հանդէս ամսօրեայ», 1920, էջ 281-282:



35. ՆՀԲ-ը բերում է և *սարատակ* թռչնանունը, իսկ Ջ.Գրեպպինը վկայության հիման վրա հիշյալ բառը համարում է իրան. փոխառություն /տե՛ս Գրեպպին, նշվ. աշխ., էջ 50/: Անշուշտ, *սարատակ*-ը *ասրատակ*-ի աղավաղ ձևն է, և գիտնականի բերած զուգահեռն էլ չի հիմնավորվում:
36. Տե՛ս Արմ., *Ասեղն* բառահոդվածը:

## ԳԼՈՒԽ ՀԻՆԳԵՐՈՐԴ

## ԲՈՒՍԱԿԱՆ ԱՇԽԱՐՀ

Հայկական լեռնաշխարհը հարուստ է բույսերի բազմազան տեսակներով:

Մեր մատենագրության կազմավորման շրջանից իսկ վկայվում են մեծ թվով բուսանուններ: Ակնհայտ է, որ գրաբար մատենագրության, հատկապես 5-րդ դարի մատենագրության՝ այդ բնագավառին վերաբերող տվյալները բավականին թերի են, որովհետև այդ մատենագրության բովանդակությունը /պատմություն, վարքագրություն, աստվածաբանություն, ճառեր... և այլն/ ենթադրում է այնպիսի հարցեր, որոնցում, բնականաբար, մասնակիորեն են շոշափվում բուսաշխարհին առնչվող անվանումները: Զգալի թվով բուսանուններ են հանդիպում թարգմանական գրականության մեջ՝ Բարսեղ Կեսարացու «Վեցօրեայում», Փիլոն Եբրայեցու, Ոսկեբերանի գործերում: Դրանք բազմաթիվ են հատկապես Սուրբ Գրքում, որում ավանդված բուսանունները հիմնականում բառաբանագրված են, Աստվածաշնչի բուսանունների վերաբերյալ կան նաև առանձին ուսումնասիրություններ, որոնցում, սակայն, լեզվական քննություն ըստ էության չկա: Ուշագրավ աշխատանք է Հ. Արքինեանի «Աստուածաշնչի տունկերը» /Կ.Պոլիս, 1913/, որում խոսվում է Ս. Գրքում վկայված մի քանի բուսանունների, դրանց եբրայերեն և հունարեն համապատասխանությունների, ինչպես նաև Ս. Գրքի տարբեր հատվածներում նույն բույսի հայերեն տարբեր անվանումների մասին:

Սակայն պետք է նկատել, որ թարգմանական գործերի վկայությունների գերակշիռ մասը օտար անվանումներ են, այդպես է նաև հավանորեն 7-րդ դարում գրված «Աշխարհացույց»-ում, որտեղ տարբեր երկրների մասին հաղորդվող տեղեկությունների թվում նշվում են նաև այդ երկրին բնորոշ բուսանուններ՝ հաճախ օտար անվանումներով, երբեմն դրանց թարգմանությամբ, եթե համապատասխան հասկացությունը և բառը հայտնի է «Աշխարհացույցի» հեղինակին:



Անշուշտ, բուսանունների մասին որոշ տեղեկություններ հաղորդում է նաև հայ ինքնուրույն գրականությունը: Տարբեր սկզբնաղբյուրներից տարբեր կարգի օրինակներ կբերվեն համապատասխան տեղերում:

Հայերենի բուսանունների առաջին ամփոփ ցանկը՝ համապատասխան աղբյուրների մատնանշումով տվել է Ղևոնդ Ալիշանը, որը նախ հրատարակվել է «Բազմավէպի» 1892-94 թթ. համարներում՝ «Հայկական բուսաբառութիւն», ապա առանձին գրքով՝ 1895թ.՝ «Հայբուսակ կամ հայկական բուսաբառութիւն» վերնագրով: «Հայբուսակում» ներկայացված է 3400 բուսանուն՝ գրաբարից, միջին հայերենից, աշխարհաբարից և բարբառներից:

Ակնհայտորեն բուսանունների գերակշիռ մասը ավանդված է միջինհայերենյան շրջանից՝ պայմանավորված նախ և առաջ գրականության առանձնահատկությամբ՝ հատկապես բժշկագիտությանը վերաբերող գրականության առկայությամբ, որոնցում բազմաթիվ բուսանուններ են ամրագրված: Հազարավոր այդ բառերի զգալի մասը /հատկապես բարդ կազմությունները/ միջինհայերենյան կամ բարբառային նորամուծումներ են, թեև բացառելի չէ որոշ բառերի գործածությունը գրաբարյան կամ նախագրաբարյան շրջանում /հ.-ե. ծագմամբ բարբառային բառերի վաղ շրջանի գործածությունը կասկած չի հարուցում: Որոշ կարգի այդպիսի օրինակներ կբերենք բուսանունների ծագումնաբանական շերտերի քննության ժամանակ/:

Այս կամ այն տարածքին բնորոշ ծառատեսակները հաճախ դարձել են պաշտամունքի առարկա: Այս տեսակետից հ.-ե. լեզվամտածողության մեջ հատկապես առանձնանում է *կաղնի*-ն:

*Կաղնի*-ն սուրբ ծառ է համարվում առաջավորասիական տարածքում: Մինչև օրս էլ քարթվելական որոշ ժողովուրդներ իրենց աղոթքներում դիմում են «կաղնու ոգուն»[1]: Հայկական վաղնջական ավանդույթներում էլ անշուշտ *կաղնի*-ն որոշակի ընդգծված դեր է ունեցել, և այն համարվում էր հզորության, ուժի, երկարակեցության խորհրդանիշ: Թռչուններից այդպիսին է արծիվը, կենդանական աշխարհում ուժի խորհրդանիշ է առյուծը:

Հույների և իտալացիների միջավայրում կաղնին զուգորդվում էր աստվածներից մեծագույնների՝ Զևսի և Յուպիտերի հետ: Հին գերմանացիների համար նույնպես կաղնին սրբազան ծառ էր[2]:

«Ազգագրական հանդէս»-ի 2-րդ համարում նշվում են երեք տասնյակից ավելի ծառեր, որոնք Վարանդայում սուրբ են համարվում:

«Տակավին խոր հնադարից, որոշակի պատկերացումներ են ձևավորվել «սուրբ», սրբացված ծառերի անձեռնմխելիության առումով... Բազմաթիվ ավանդություններ են պահպանվել նման ծառերի կտրման արգելքի առումով..., այնուամենայնիվ «Հայոց մեջ սուրբ համարվող ծառերից փոշնուց պահպանակ-դաղդղաներ, նաև որոշակի առարկաներ են պատրաստվել /օր., արորի լուծը կամ գոնե սամիները/, որոնք կոչված են պահպանելու չար ուժերի, «շառ աչքի» ազդեցությունից»[3]:

Ծառերի պաշտամունքը դիտվել է Հայաստանի բոլոր պատմաազգագրական մարզերում...: Բացառություն են կազմում թերևս համշենահայերը, «թեպետ նրանց մեջ էլ որոշակի հավատալիքներ են ձևավորվել այս կամ այն ծառատեսակի օգտակարության կամ վնասակարության մասին»[4]:

Բուսաշխարհում տարբերակվում են *վայրի և մշակովի բույսերը:* Բույսերի մշակությամբ մարդկային հանրությունը առաջընթաց մի քայլ է ապրում՝ իր կենսագործունեության մեջ արմատավորելով երկրագործությունը, որի կատարելագործումը հանգեցնում է հանրության /հասարակության/ մտավոր և գործնական ունակությունների զարգացման, նոր կենսաձևերի ու աշխատանքային հարաբերությունների կիրառման:

Արդեն 5-րդ դարի մատենագրության մեջ կան *վայրի* և *մշակովի* բույսեր հասկացությունների համապատասխան տարբերակումները. «Քանզի մորենիք և մոլաթուզք և մոլաձիթենիք և կանկատունք և քունկք կարի յոյժ սաստիկք են և *առանց մշակութեան* արուեստի բուսանին: Իսկ նռնենիք և խնձորիք և արմաւենիք և ձիթենիք և որթք դո՛ւն ուրեք և ոչ ինքնին լինին, կարօտեալ միշտ այնր որ աճեցուցանեն» /Փիլ., Բանք, 104/: «Եւ տունկք և սերմանք և *ծառք վայրենիք* և ընտանիք, պտղաբերք և անպտուղք» /Ոսկ., 



Մտթ., Գ, 196/: «Եւ յառաւելութենէ գեղեցկութեան զոր տեսեալ է շուշանացն վայրենեաց» /Ոսկ., Մտթ., Գ, 343/: «Քանզի դու *վայրենի ձիթենի* էիր և հատար ի բնական ի վայրենի ձիթենւոյն և պատուաստեցար ի բարի ձիթենւոջն» /Ոսկ., Պօղ., Բ, 702/: «Քանզի զոյ թզենի, որ անուանեալ կոչի կատաղենիս՝ այսինքն վայրենի մոլաթուզ և բերեն տնկեն առ ընտանի թզենոջ...» /Բրսղ, 153/:

«Վեցօրեայից» *կատաղենի*-ի միակ օրինակը բերում է ՆՀԲ-ը և մեկնում՝ «մոլի, վայրենի»: «Վեցօրեայի» թարգմանիչը մեկ այլ հատվածում բառիս հակադրում է՝ *քաղցունն*-ին. «...որպէս աւգտի թզենին քաղցուենի ի կատաղենի թզենւոյն անտի՝ առնուլ զաւրութիւն առ ի պահել ողջ և անարատ զպտուղն իւր...» /154/:

## *Բուսանունների բառակազմական յուրահատկությունները*

Գրաբարում *բույս* ընդհանրական հասկացությունն արտահայտվում է *բոյս /բուսակ/, ծառ, թուփ, բանջար, տունկ, փայտ* անվանումներով: «Օրհնեցէք ամենայն բոյսք երկրի զտէր» /ՆՀԲ/: «Յորժամ բազմազան անուշահոտ բուսակօք զարդարէի իբրև զիրաշաղիտակն սիրամարգ» /Գիրք պիտ., 575/: *Բուսակ*-ը նվազ հաճախական է քան *բոյս*-ը:

Արդի հայերենում հաճախական են *ծառ* և *բույս*-ը /տե՛ս Գ.Յակոբեան, Հայերէնի տարիքային անուանումները, Ե., 1995, 9/: Գրաբարի հաճախականության բառարան ցարդ, ցավոք, չկա, բայց համոզված ենք, որ նշված երկու բառերը /որպես *բույս* ընդհանրական անվանումներ/ գրաբարում էլ ամենահաճախականն են:

*Բանջար* գրաբարում ունի «կանաչեղեն, խոտեղեն», ապա «ճակնդեղ կամ բազուկ», բարբառներում այն առանձին բուսանուն է նաև:

«Ակքանն՝ բանջար ինչ է և կամ թուփ ինչ փոքրիկ, նման *մորի* կամ կաղանչանանն» /Եւս., Մեկն., 213/: «Եւ ամենայն տունկք մատաղատունկք զարգացեալ վերանային՝ հասանել ի

չափ կատարեալ հասակաց բարձրաբերձք և կարճաբերձք» /Բրսղ, Դ, 142/:

*Փայտ* գրաբարում ունի նաև *ծառ* իմաստը: Ընդ որում այդ բառիմաստը առկայանում է արդեն 5-րդ դարից. «Փայտս ամենաբերս», «փայտ պտղաբեր», «փայտ փշաբեր» /ՆՀԲ/:

Բույսերի զանազան տեսակների անվանումներին բնորոշ են հետևյալ բառակազմական կաղապարները. արմատական /կամ որպես այդպիսին/ գիտակցվող ձևեր. այս շարքի մեջ կարելի է ներառել և այն փոխառյալ բառերը, որոնցում օտար ածանցները /ձևույթը/ հայերենում որպես այդպիսին չեն գիտակցվում: *Ազոխ, անթեմ, արմաւ, բանջար, բողկ, գինձ, ընկույզ, թուփ, ծիրան, խնձոր, տանձ...քաղթ, զարի, ցորեն...* Այս շարքում պետք է նշել նաև -ն-ով վերջացող մի շարք բառեր, որոնք եթե հ.-ե. ծագում ունեն, ապա ածանցային արժեքն արդեն գրաբարում մթագնված էր, օտար ոչ հ.-ե. բառերի դեպքում դարձյալ –ն-ի ածանցային գործառությունը չի նկատվում: Գ.Ջահուկյանը ենթադրում է, որ «Բաղաձայնական –ն-ով հիմք ունեցող ոչ հ.-ե. բառերը գոնե մասամբ պետք է ունենան ուրարտական ծագում կամ հայերենին անցած լինեին ուրարտերենի միջոցով»[5]: Նշենք –ն-ով վերջացող մի քանի բուսանուններ՝ *բաղեղն, բեւեկն, գաղձն, դաղձն, եղեգն, խոլորձն, նուռն, սիսեռն, սունկն, ոլոռն:*

Ուկ- ածանցով կազմություններ. կանեփուկ, կայծուկ, կընդրուկ, հաճարուկ, ձմերուկ, մեղրուկ, քնարուկ: *Ուկ, իկ* ձևույթները մեկ դեպքում գիտակցվում են որպես փոքրացուցիչ, մեկ այլ դեպքում՝ ոչ:

Իկ- դժնիկ, ծաղիկ, եղեգնիկ, հատիկ, յասմիկ:

Իճ- դառնիճ, եղիճ, պատաղիճ, պատիճ /ցորենի կամ պտղի կեղև/:

Իթ- կնճիթ, սամիթ:

Ամենահաճախականը *–ի-, -ենի* ածանցներով ծառանուններն են:

Օրինաչափությունն այն է, որ պտղատու /մրգատու/ ծառատեսակների անվանումները հիմնականում կազմվում են *-ենի-* ածանցով, իսկ ոչ մրգատուներինը՝ -ի-ով.



Արմաւենի, եղջերենի, զմռնենի, թզենի, ժանտաթզենի, խնկենի, խնձորենի, կատաղենի, ձիթենի, մորենի, նշենի, նռնենի, սեխենի:

Բարդի, բեւեկնի, գիհի, թիւնի, կաղամախի, կաղնի, հաճարի, հերձի, նշդարի, նոճի, ոփի, սոճի, սոսի, սղոցի, կնձնի, հացի, նշի:

*Հերձի, սղոցի-ն* հունարեն համապատասխանակների թարգմանությունն է /Արթինեան, 14/:

Բերենք մի քանի օրինակ. «...և զմայր փայտն ետ ի կողմանսն Հրէաստանի իբրև զթթենի դաշտաց բազում յոյժ» /ՆԳ Բ. Մնաց.,Ա, 15/: «Քանզի գոյ թզենի, որ անուանեալ կոչի կատաղենի, այսինքն վայրենի մոլաթուզ» /Բրսղ,Ե, 153/: «Առնուցուք զոստս հազնեայ ի ձորոց» /Ղեւտ., ԻԳ, 40/: «Այլ ևս ոչ ոք, բայց ամենեւին վաթսունազոյնք ի տնկոց՝ սեխենի և մորենի» /Խոր., Մատ., 468/: «...զայնպիսիս ունել ծառսն ի փայտիցն, ոյք թէ և հեռի ի պտղաբերութեանն շահից գային, բայց առ յոյժ ուղղաձիգ բարձրութեացն և ողորկատարր բնութեանն... ի պէտս շինողացն փութոյ էին տունկ ոփեացն և կաղամախեացն...» /Խոր., Մատ., 546/:

*-Ի-* և *-ենի* ածանցներով կազմության օրինաչափության մեջ կան որոշ շեղումներ. *խնձորենի, թզենի, նշենի* ձևերի կողքին հանդիպում ենք և *-ի-* ձևերը. «Խոզատանձ ի վերայ խոզատանձի ծերանայ և թուզ ի վերայ թզոյ» /Դ. Անհղթ, Ստորոգ., Թ/: «Կարեցին տերեւ թզենւոյ» /Ծննդ.,Գ, 7/: «Ի ներքոյ խնձորւոյն զարթուցի զքեզ. անդ երկնեաց զքեզ մայր քո» /Երգ, Ը, 5/: «Խնձորենիք էին ոսկեգոյնք» /ՆՀԲ/:

*Ընկուզ/ենի*-ի- ձևերից ՆՀԲ-ը վկայում է միայն *ընկուզի*: Զարմանալի է, բայց փաստ, որ *ծիրանի* /ծառատեսակ/ և ոչ էլ *ծիրանենի* ՆՀԲ-ը չի վկայում: Այդ միրգը և ծառատեսակը վաղուց կար հայկական բնաշխարհում: *Ծիրանի* բառաձևը ունի «գույն, հագուստ» իմաստները, բայց որպես ծառատեսակ վկայված չէ, և չենք կարող պնդել գրաբարում *ծիրանի* թե *ծիրանենի* ձևի գոյությունը: Կարելի է ենթադրել, որ այդ պտուղը /և ծառը/ ունեցել է այլ անվանում:

*Տանձենի* նույնպես ՆՀԲ-ը չի ավանդում, այլ՝ *տանձի.* «Թողցես զնուա ի տանձիսն...» /ՆՀԲ/:

Ոչ մրգատու ծառատեսակներից վկայված է և՛ *ուռի* և՛ *ուռենի* ձևերը:

Ծառատեսակների անվանումների մասին որոշ հետաքրքիր տվյալներ են մատուցում մեր բարբառները: Օրինակ՝ Ղարաբաղի բարբառում թե՛ պտղատու, թե՛ ոչ պտղատու ծառանունները հիմնականում կազմվում են –ի- ածանցով: Որոշ լեզվաբաններ -ենի-ով ծառանունների մեջ փորձում են տեսնել ուրարտական ni - ածանցը: Այդ առիթով Գ.Ջահուկյանը գրում է. «Թեև ի վնաս -ենի-ով ծառանունների ուրարտական ծագման է խոսում *խնձորենի, ընկուզենի* ձևերի ուշ վկայությունը՝ ի տարբերություն *խնձորի, ընկուզի* ձևերի, որոնց –ի-ն հնդեվրոպական ծագում ունի, սակայն հնարավոր է ենթադրել -ենի-ի բարբառային պահպանում և հետագա տարածում»[6]:

Մեզ թվում է՝ նախապես ծառատեսակների անվանումները կազմվել են –ի- ածանցով, այդ են հաստատում ոչ միայն Ղարաբաղի բարբառի տվյալները, /բարբառ, որն, ի դեպ, լեզվական բազմազան հնագույն տարրեր է պահել/, այլև այն, որ հայերենի՝ հ.-ե. ծագում ունեցող ծառատեսակները –ի- ածանցով են. *բարդի, կաղնի, հացի, ցաքի, ուռի... /դեղձի և դեղձենի* երկու վկայությունները ուշ շրջանից են/:

-Ենի- ածանցը մուտք է գործել ավելի ուշ և աստիճանաբար տարածվելով՝ տարբերակվել է նաև որպես ոչ մրգատու ծառատեսակներին բնորոշ ցուցիչ, թեև, ինչպես տեսանք, այդ կանոնը ունի նաև բացառություններ:

Բուսանունների մի խումբ կազմությամբ բարդ բառեր են՝ հիմնականում երկարմատ: Կարելի է առանձնացնել.

ա/ *խինդ, մոլ* արմատներով կազմություններ. *խնդամոլի, խնդակոթ, մոլաթուզ, մոլաթզենի, մոլախինդ, մոլախոտ...*

բ/ որևէ ածական+բուսանուն- *մանրագոր, մանրախոտ, կարմրադեղձ, կարմրատանձ, կարմրախնձոր, ժանտափուշ, ժանտաթզենի...*

գ/ այլ կարգի կազմություններ. *արջնդեղ, արքայակաղին, խայթահար, ծնեբեկ, մեղրապուպ, մոշավայրի...*



## *Բուսանունների ծագումնաբանական շերտերը*
## *Հնդեվրոպական շերտ*

Հայերենը պահպանել է բույսերի զգալի թվով հնդեվրոպական անվանումներ:

Նշել ենք, որ բուսանունները, ինչպես նաև իմաստային մի շարք խմբեր, բառապաշարի այն շերտերն են, որոնք ամբողջապես կամ գոնե մեծավ մասամբ չեն արձանագրված գրավոր աղբյուրներում: Դա կախված է գրավոր աղբյուրների բնույթից, թեմատիկայից և այլն: Ուրեմն, բնականաբար, խոսք չի կարող լինել հայերենի հ.-ե. ծագմամբ բուսանունների՝ վերջնական թվի մասին՝ հիմք ընդունելով գրաբար մատենագրության տվյալները:

Ակնհայտ է, որ բնիկ հայերեն հ.-ե. ծագումով բուսանուններ առկա են և միջինհայերենյան գրականության մեջ: Արդյոք միջինհայերենյան շրջանից ավանդված բառերը նորակազմություննե՞ր են, թե՞ հին՝ հ.-ե. լեզվի ժառանգություն: Այս հարցը պարզել, մանավանդ միարմատ կազմությունների դեպքում, այնքան էլ հեշտ չէ:

Հ.-ե. ծագմամբ զգալի թվով բուսանուններ կան նաև մեր բարբառներում, որոնց քննությանը անդրադարձել է Գ. Ջահուկյանը համեմատական լեզվաբանությանը և հայոց լեզվի պատմությանն ու բարբառագիտությանը վերաբերող աշխատություններում:

Այնպես որ բարբառային տվյալներն օգտագործելը հիշյալ բառաշերտը ամբողջական ներկայացնելու տեսանկյունից խիստ անհրաժեշտություն է:

Ստորև ներկայացնենք հ.-ե. ծագումով բնիկ հայերեն բուսանունները:

*Ալոճ* «խոտի տեսակ», *բարտի, բող/բողիկ, բողկ, գաղձն* «գայլախոտ», *գարի, գեղձ* «բաղեղ, պատատուկ», *գի/գիհի, գինձ, դալար* «խոտ», *դաղձն, դեղձ, եղեւին, թաղթ* , *թեղի,* «ծառ», *խստոր, կաղին/նի, կուենի* /ծառատեսակ է/, *հացի, մատիտեղ, մամուռ, մայրի, մորենի, որթ, պտուղ, սիսեռն, սունկն, տատասկ, ցախ* «հացենի», *ցաքի, քեղ* «սխտորի տեսակ»:

Բարբառային բառեր. *դեղդ, թալ, թելուկ, խինդեղնը* «օշինդր», *մողկ, ծնեբեկ, ոսի, տկողին, տողտ...*

*Գի/գիհի*-ն Արմատական բառարանում ստուգաբանված չէ, սակայն հետագայում Հ.Աճառյանը այն համարում է հ.-ե. /տե՛ս ՀԼՊ, Բ, 600/:

Վերոբերյալ բառերի մի զգալի մասը վաղ գրաբարում, այլև գրաբար մատենագրության մեջ ավանդված չէ, ինչպես՝ *ալուճ, բող, թեղի, ցախ, քեղ...* և այլն:

*Բողկ*-ը նույնպես վաղ գրաբարում ավանդված չէ, սակայն *բողկուկ* ձևի առկայությունը հուշում է նաև բառարմատի անկախ կիրառության մասին:

*Ծաղթ, մամուռ, մատիտեղ, կուենի, ոսի* բառերը արմատական բառարանում ստուգաբանված չեն: Դրանց հ.-ե. ծագումը փաստարկում է Գ.Ջահուկյանը /Ջահուկյան, 1987/:

Հ.-ե. ծագում ունեցող բառերը, ունենալով հազարամյակների ակունքներ, իմաստափոխվել են, և նույնիսկ 5-րդ դարից ավանդված որոշ բառիմաստներ, թերևս, հեռացել են նախնական իմաստից:

Իմաստափոխության և նոր բառիմաստների առաջացման լավագույն օրինակ է *դեղ* արմատը: Սրա նախնական իմաստն է «խոտ», որը հաճախ գործածվում էր *դալար* բառի հետ. «Լիզանիցէ արջառ զդեղ դալար ի դաշտի» /Թիւք., ԻԲ, 4/: Այս արմատը այնուհետև սկսեց կիրառվել որպես բժշկական տերմին: Աճառյանի հավաստմամբ չորրորդ դարի վերջերից *դեղ*-ի «խոտ» նշանակությունը կորավ և «ահա դրա համար է, որ Ե դարուն հազիւ նրա մնացորդներն ենք գտնում, իսկ Ե դարից յետոյ բնաւ: Բայց *դեղ* «դարման» նշանակութիւնը ինչպէս Ե դարուն, նույնպես և մինչև այսօր սովորական է» /Արմ., *Դեղ* բառահոդվածը/:

*Դեղ* արմատից են *դաղձն, դեղձ:* Վերջինիս /ձ աճականով/ բուն նշանակությունն էր «դեղին», և հետագայում այդ հատկանիշը վերագրվեց համապատասխան մրգին:

Նույն *դեղ* արմատն է բարբառային /Ղարաբաղի/ *խնդեղն, *խնդադեղն* «օշինդր», տէխսնը «դաղձ» բառերում:

Տարբեր են հ.-ե. բուսանունների բառակազմական հնարավորությունները: Որոշ արմատներով նոր բառեր /բուսանուններ, բուսատեսակներ/ մեզ չեն ավանդվել:



Առկա են հետևյալ բառաձևերը.

Դեղձ- դեղձենի, դեղձի, *կարմրադեղձ, դեղձուկ*:

*Դեղ - դեղախունկ, ճակնդեղ,* խաշնդեղ, կապնդեղ, հացադեղ, մաղձադեղ, *արջնդեղ:*

*Եղեւին- եղեւնափայտ:*

*Խստոր* – խստորապրաս, խստորուկ:

*Կաղին/նի – կաղնապտուղ, արքայակաղին:*

*Մայր/ի/ - երկրամայր, փայտամայր, թանձրամայրի:*

*Մոլ-մոլաբոյս, մոլաթուզ, մոլաձիթենի:*

*Որթ – որթատունկ, որթափայտ:*

Քեղ – քեղակարոս, քեղասերմ, ազատքեղ, իշաքեղ, փշաքեղ:

## *Խուռա-ուրարտական շերտ*

Լեզվաբանության մեջ ընդունելի է համարվում խուռերենը և ուրարտերենը մեկ լեզվաընտանիքի մեջ ներառելը:

Հայ լեզվաբաններից առաջինը Գ.Ղափանցյանն է գիտականորեն քննել հայ-ուրարտական առնչությունները՝ առանձնացնելով երկու տասնյակ բառեր, որոնք ընդհանուր են ուրարտերենի և հայերենի համար:

Հարցը ավելի մանրամասն քննել ու ամբողջացրել է Գ.Ջահուկյանը /տե՛ս Ջահուկյան, 1987թ./: Մեզ հետաքրքրող տվյալներն էլ բերում ենք ըստ նշված գրքի:

Հայերենի *խնձոր, խաղող, նուռ, տողտ* բառերի զուգահեռներ կան խուռերենում: Գ.Ջահուկյանը նկատում է. որ «կան հայ-ուրարտական բառային մի շարք զուգադիպումներ, որոնց դեպքում դժվար է որոշակի ընտրություն կատարել հայերեն /երբեմն էլ ուրարտերեն/ բառերի բնիկ, թե փոխառյալ լինելու հնարավոր ենթադրությունների միջև, այս դեպքում հարցը կարելի է լուծել միայն կողմնակի փաստերի և դատողությունների հիման վրա...» /1987, 432/:

Ուրարտերեն-հայերեն բուսանունների հարցում էական դժվարությունը այն է, որ սեպագիր արձանագրություններում վկայվածները քիչ են: Ուրարտ. zari «պտղատու այգի» - հայ. *ծառ*

զուգահեռը ակնհայտ է: Ըստ Գ.Ջահուկյանի «նկատի ունենալով հայ. և ուրարտ. բառերի իմաստային տարբերությունը՝ պետք է կամ նմանությունը համարել պատահական, կամ ենթադրել հայ. բառի բաղարկում /կոնտամինացիա/ ուրարտերեն բառի հետ» /1987, 433/:

*Ծառ-այգի* իմաստային զարգացումը բացառելի չէ: Որպես օրինակ նշենք իրանական ծագում ունեցող *դրախտ* բառը, որը փոխատու լեզվում ունի «ծառ» իմաստը, գրաբարում՝ *«պարտեզ»:* Անկախ ուրարտական արձանագրություններում վկայված /բառապաշարի տարբեր շերտերի վերաբերող/ բառերից՝ լեզվաբանները հնարավոր են համարում հայ-ուրարտական բազմաթիվ զուգադիպումներ՝ ելնելով հայերենի տվյալներից:

Գ.Ջահուկյանը գրում է. «Ուրարտացիների դարավոր համակեցությունը հայերի հետ, ապա և նրանց հետ ձուլվելը պետք է հիմք տար նախ փոխառությունների և առշերտային /ադստրատային/, ապա ենթաշերտային /սուբստրատային/ ազդեցության համար... առանձնապես մեծ ազդեցություն թողած պիտի լինի ուրարտերենը հայերենի բառապաշարի վրա՝ ինչպես հասարակ անունների, այնպես էլ տեղանունների մեջ... Միաժամանակ հարկավոր է նկատի ունենալ հակառակ ազդեցության հնարավորությունը, որ հաշվի չի առնվում հետազոտողների կազմից»[7]:

Ուսումնասիրողների կարծիքով կարելի է ընդունել հետևյալ բառերի ուրարտական ծագումը /սրանց հ.-ե. ծագումը կամ այլ լեզուներից փոխառյալ լինելը չի ապացուցված/՝ *եղիճ, կոտեմն, վարսակ, ցորեն, ծիրան, խնձոր, տոլի* «խաղողի որթ», բարբառային՝ *մանդակ, մուճուղեզ, օղին...* /Ջահուկյան, 1987, 436/:

Արմ.-ում ուրարտական ծագում ենթադրող բառերը ավելի մեծ թիվ են կազմում:

## Կովկասյան շերտ

««Կովկասյան լեզուներ» անվանումը երկիմաստ է. նրա տակ նկատի են առնվում մի կողմից՝ Կովկասում գտնվող լեզուները ընդհանրապես՝ անկախ նրանց ցեղական փոխհարաբերությունից,



աշխարհագրական առումով, մյուս կողմից՝ միայն Կովկասի այն լեզուները, որոնք չեն պատկանում ոչ հնդեվրոպական, ոչ թյուրքական, ոչ էլ սեմական լեզվաընտանիքներին» /Ջահուկյան, 1987, 584/:

Ըստ Աճառյանի՝ քարթվելական լեզուներից փոխառյալ են համարվում 47 բառ, որից բուսաշխարհին են վերաբերում *խծուծ* «վուշի, կանեփի թափթփուկ», *ծմել* «սպանախ», *ճղոպուր/տ/, չանչ, ցմախ*: Գ.Ջահուկյանը որոշ նկատառումներ ունի այս բառերի վերաբերյալ: *Ցմախ*-ի դեպքում նա հնարավոր է համարում սեմական աղբյուր /1987, 596/, «ծմել /ծիմել, զիմել/ «սպանախ» հանդիպում է ուշ շրջանում /13-րդ դ./ և այն չպետք է դրվեր հին շրջանի փոխառությունների թվում..., «ճողոպուրտ «ընկույզ» բառը հանդիպում է Երեմիայի բառարանում և բարբառներում, ուստի այն պետք է հանել հայերենի՝ քարթվելականից կատարած հին փոխառությունների թվից» /ն.տ., 593/:

*Ճղոպուր* բառը գործածական է միայն Ղարաբաղի բարբառում: Այս հանգամանքը հաշվի առնելով՝ Գ.Ղափանցյանը ունի մի յուրօրինակ և ուշագրավ դիտարկում: Լազո-մեգրելական լեզուներում բառը ունի «*շագանակ»* իմաստը: Նկատելով, որ բառը բացակայում է այլ միջանկյալ բարբառներում, Ղափանցյանը ենթադրում է, որ բառաձևը, ինչպես և նոր իմաստը՝ «ընկույզ», հիմք են տալիս կարծելու, որ Ղարաբաղը եղել է Բալա ցեղի տեղաշարժի վերջին վայրը[8] /*Ղարաբաղ* բառի վերջին բաղադրիչը Ղափանցյանը կապում է *Բալա* ցեղանվան հետ: Այս վարկածը ճշմարիտ լինելու դեպքում *ճղոպուր*-ն էլ պետք է համարել հնագույն փոխառություն/:

*Չանչ*-ը ՆՀԲ-ը չի վկայում: Աստվածաշնչում կա այսպիսի մի վկայություն. «Ջամենայն աւուրս ուխտին իւրոյ՝ յամենայնէ զինչ եւ լինիցի յորթոյ, զգինի ի *չամչոյ* /ընդգծումը մերն է. Լ.Հ./ մինչեւ ցթինն մի՛ կերիցէ» /Թիւք., Զ, 4/: Հ.Աճառյանը, համեմատելով բնագրի հետ, ընդգծվածը համարում է ձեռագրական վրիպակ և վերականգնում *չանչ* ձևը:

* * *
* *

Հայերենի՝ արևմտակովկասյան /աբխազ-ադըղեական/ և արևելակովկասյան /նախյան-դաղստանյան/ լեզուներից փոխառված բուսանունները սակավաթիվ են:

Ուսումնասիրողները նկատել են այդ լեզուների և հնդեվրոպական զգալի թվով զուգահեռներ, որոնք նոստրատիկ բնույթ են կրում. հայերենի դեպքում բուսանուններից Գ.Ջահուկյանը նշում է *սխեռն, ցախ*-ը /1987,601/:

Հայերենի՝ այդ լեզուներից կատարված փոխառություն է համարվում թերևս միայն *խոտ*-ը /ն.տ., 609/:

## *Իրանական շերտ*

Հայերենի բառապաշարում այլ լեզուներից կատարված փոխառությունների շարքում գերակշիռ են իրանական ծագում ունեցող բառերը:

Նկատելի է սակայն, որ բուսական աշխարհին վերաբերող բառերը գրաբարի բառապաշարում այնքան էլ մեծաթիվ չեն: Հ.Աճառյանի ցանկում նշվում են այդ կարգի վեց տասնյակից ավելի բառեր[9]: Սակայն պետք է հաշվի առնել մի հանգամանք. իրանական բուսանունների մեծագույն մասը միջինհայերենյան վկայություններ են կամ վկայված են միայն բառարաններում. *անգուտան, դարապղպեղ, ժիրակ, կարոս, շահքառակ...*

Գրաբարյան փուլում ավանդված բուսանունները հետևյալներն են՝ *ազոխ* «խակ խաղող», *անանուխ* «հացհամեմ», *արմա-ւ/ենի/, բրինձ, գազպէն* «մանանա», *գաւարս* «կորեկի տեսակ», *դարիճենիկ* «դարչին», *դժնիկ* «փշոտ թուփ», *զուիրակ, թութ, ժաժ* «խոհիվ» *խոշակ* «դատարկ հասկ», *կաղամբ, կանեփ, կանկար* «փշոտ մի բույս է», *կապար, կնդրուկ* «խունկ», *կնճիթ* «ուսամ», *համասպրամ* /ծաղիկ է/, *ճանբակ* «խնկաբեր բույս», *մանուշակ, մօրոտ, յասմիկ, նարգէս, նոճի, շահդանակ, չաման* «համեմիչ բույս», *պղպեղ, սարոյ* «նոճի», *սմնակ* /ծաղիկ է/, *սոխ, վարդ, վարունգ, փաղանգամուշկ* «ռեհան», *քնար* /ծառի տեսակ/, *քրքում* «սաֆրան»: *Գազար* իրանական ծագումով բառը թերևս նույնպես հին է /թեև վաղ գրաբարում /ըստ ՆՀԲ-ի/ավանդված չէ/. հմմտ. Ղարաբաղի բարբառի *կէզար* ձևը:

Վերոհիշյալներից *ազոխ, կանեփ* բառերի իրանական ծագումը կասկածելի է:

*Գաւարս, զուիրակ, ժաժ, խոշակ, ճանբակ, շահդանակ* վկայված են 1-2 անգամ:

Պետք է նշել նաև մի հանգամանք. իրանական ծագում ունեցող բուսանունների մի խումբ էլ վկայված է միայն Խորենացուն կամ Շիրակացուն վերագրվող «Աշխարհացույց»-ում: Հեղինակը, խոսելով այս կամ այն երկրի առանձնահատկությունների մասին, թվարկում է նաև այդ վայրին բնորոշ բուսանունները՝ հիմնականում իրանական անվանումներով: Օրինակ՝ Չինաստանի նկարագրության ժամանակ գրում է. «Եւ է Ճենաստան ընդարձակ դաշտս տարածեալ: Լինի ի Ճենաց աշխարհին դարիճենիկ, և հոշիբուակ, և բուիճենիկ և կասիմոն...»:[10]

Հնդկաստանը ներկայացնելիս հանդիպում են դարձյալ այդպիսի մի քանի բառեր. «Լինի անդ ոսկի, և արծաթ, պղպեղ և սնգրուեղ,...փաղանգամուշկ, քափուր, ճանդան» /ն.տ./:

Ակնհայտ է, որ վերոհիշյալ և այս կարգի բառերը իսկական փոխառություններ չեն, դրանք հազվադեպ հանդիպող անվանումներ են և փոխառություն հասկացություն հետ առնչվում են լոկ այնքանով, որ վկայված են մեր մատենագրության մեջ:

Նկատված է, որ իրանական ծագումով բուսանունները հիմնականում մշակովի բույսեր են ու ծաղկի անվանումներ /*վարդ, մանուշակ, նարգէս, հօրոտ, մօրոտ, համասպրամ, յասմիկ.../:*

## *Սեմական շերտ*

Սեմական լեզուներից փոխառված բուսանունների թիվը մեծ չէ: Առկա բառերը հիմնականում համարվում են ասորերեն, թեև հնարավոր է, որ դրանցից մի քանիսը փոխառված լինեն սեմական այլ լեզուներից: Արաբերենից կատարված փոխառություններին

չենք անդրադառնում, քանի որ դրանք հիմնականում ընդգրկում են հետգրաբարյան փուլը:

Ահա սեմական ծագում ունեցող բուսանունների ցանկը:

*Ապրսամ* «բալասան», *բալասան, զոպայ* /ծոթրինի նման մի բույս/, *ծոթոր* «համեմ», *հազոր, հազորենի, մանիշակ, շումրայ* «վայրի սամիթ», *շուշան, ոլոռն, շուշմայ* «ռւսամ», *սակամունիա* /խոտ է/, *փեգանայ* /խոտ է/, *քրսամն* /ընդեղենի տեսակ/:

Նշվածներից *բալասան*-ը թերևս արաբական փոխառություն է: Առաջին վկայությունը «Աշխարհացույցում» է: Այս բառի այլ ձևն է /ավելի հին/ *բաղսամոն*, որը փոխառվել է հունարենից: *Ոլոռն* համարվում է աքկադերենից կատարված փոխառություն: *Մանուշակ/մանիշակ* զուգաձևերից վերջինը՝ Աճառյանը համարում է ասորական ձև: Ըստ Գ.Ջահուկյանի՝ «Հնարավոր է ենթադրել հայերենում բարբառային տարբերակներ և ասորական ձևը փոխառյալ համարել հայերենից»[11]:

*Ակամունիա*-ն ծագումով հունարեն է, բայց հայերենին է անցել ասորերենին բնորոշ ձևով:

*Ծոթոր, շուշմա* բառերը վաղ գրաբարում ավանդված չեն: *Շումրա* հայ մատենագրության մեջ վկայված է մեկ անգամ:

*Փեգենայ*-ը նույնպես հաճախական կիրառություն չունի, թեև առաջին վկայությունը Սուրբ Գրքից է: Ահա այդ օրինակը. «զանանուխ, և զփեգենայ և զամենայն բանջար» /Ղուկ., ԺԱ, 42/:

Թերևս միայն *շուշան*-ն է, որ հաճախական կիրառություն է ունեցել և՛ գրաբարում, և՛ հետագա փուլերում: Ընդ որում տարբերակվում էին վայրի շուշանն ու մշակովին. հմմտ. «Իսկ շուշան թերևս և վասն սպիտակութեանն, վասն զի լուսատեսիլ է» /Փիլ., Մնաց., 520-21/: «...և յառաւելութենէն գեղեցկութեան զոր տուեալ է շուշանացն վայրենեաց» /Ոսկ., Մտթ., Ա, 343/: «Հայեցարուք ի շուշանն վայրենի, որպէս աճէ, ոչ ջանայ և ոչ նիւթէ» /Մտթ.,Զ, 28/:

Մի քանի բառեր առկա են բարբառներում /օրինակ՝ *ծոթոր*-ը/: Պետք է ենթադրել, որ այս դեպքում գործ ունենք ոչ թե անմիջապես գրաբարյան բառի բարբառային ձևերի հետ, այլ ուշ շրջանում արաբական ազդեցության, ազդեցություն, որ իր հետքը թողել է ժողովրդախոսակցական լեզվում, բարբառներում:



### *Հունական շերտ*

Հունարենից կատարված փոխառությունները /ոչ միայն խնդրո առարկա իմաստային խումբը/ հիմնականում գրքային են, այն էլ թարգմանական գրականությունից: Այս կարգի փոխառությունները, գոնե իրենց մեծ մասով, լեզվում լայն տարածում չեն գտնում, չեն գործածվում կենդանի խոսակցական լեզվում:

Հ.Աճառյանը առանձնացնում է հունարենից փոխառյալ 117 բուսանուն[12]: Սա բավականին մեծ թիվ է, սակայն այդ բառերի կիրառության ժամանակային և համատեքստային քննությունը պարզում է հետևյալը. հունարենից փոխառյալ բուսանունների զգալի մասը գրաբարում ավանդված չէ: Հետգրաբարյան վկայությունների մի մասն էլ արձանագրված է միայն բառարաններում կամ ուշ շրջանի բժշկարաններում: Օրինակ՝ Երեմիա Մեղրեցու բառարանում են արձանագրված *ագրիտիս, ակաքթագիկ* /փուշ/, *աղկէպ* «եղինճ», *ամոնի* «գինձ», *անիդոլոն, կրիկոն,, մեսմեղոն, մորէաս, նարղիստաքոս, նիփայ, ռեփանին, սկամինոս...*

Այս և այս կարգի շատ բառերի գործածության վկայություններ չկան ոչ միայն գրաբարում, այլև միջին հայերենում:

Գրաբար մատենագրության մեջ ավանդված են հետևյալ բուսանունները. *ակոնիտոն* /թունավոր խոտ է/, *անթեմ* /ծաղիկ է/, *ափսինթ* «օշինդր», *բաղսամոն* «բալասանի թուփ», *բրաբիոն, գոնգ* /բույսի ուտելի արմատ է/, *դափնի, եղատ* «եղևնի», *թիմ* /անուշահոտ բույս է/, *լիբանոս* «կնդրուկի ծառ», *կալամոն* «եղեգ», *կասիա* «դարչին», *կաստանայ* «շագանակ», *կինամոմոն* «դարչին», *կիպարիս* «նոճի», *կիպրոս* /ծաղիկ է/, *կիտրոն, կոնիոն* «մոլախինդ» *հազնի* /ծառի տեսակ է/, *հալուէ* /դեղաբույս է/, *հաղիկա* /հունդ/, *հրիզոն* «կորեկ», *մանրագոր* /թմրեցնող բույս է/, *մառուլ «հազար», մեկոն* «խաշխաշ», *մեղիղովտայ* «մեղրածուծ», *մեղրապոպ* «շամամ», *միրաբաղանոս* /հնդկական բույս է/, *նարդոս, որիզ* «բրինձ», *պաղատիտ* «չոր թուզ», *պեւկէ/ս/* «սոճի», *պիտուս* «թեղոշի ծառ», *պրաս* /բանջարեղեն է/, *ստորովենի* /ծառատեսակ է/, *սքինոս*

/խժաբեր ծառ է/, *փղոմոս* /խոտ է/, *փսենաս* «արու արմավենու բեղմնափոշի»...

Գրաբարում ավանդված հունարենից փոխառյալ բուսանունների զգալի մասը պահպանել է հունարենին բնորոշ /ոս, էս, ոն/ վերջավորությունները, որը նշանակում է նաև, որ տվյալ փոխառյալ միավորը հենց արտաքին տեսքից դիտվում է որպես օտար, այսինքն՝ հայերենը այն չի յուրացրել, չի ենթարկել իր հնչյունաբառաձևային յուրահատկություններին: Որոշ դեպքերում հունարեն բառերը ենթարկվել են հայերենի հնչյունական և բառակազմական օրինաչափություններին. հմմտ. *մանրագոր*՝ հուն. մանդրագորաս, *մեղրապուղ*՝ մելոպեպոն. այդ «հայերենացումը» նկատելի է հատկապես որոշ ծառանունների դեպքում, երբ հանդես է գալիս *են/ի/* ածանցը. հմմտ. *հացնի, ստրովենի* և այլն:

Հ. Աճառյանի նշած 117 բուսանուններից գրաբարում վկայված են 44-ը /հնարավոր վրիպումները հաշվի առնելով՝ ընդունենք 50/: Սակայն այդ թիվն էլ, որը բուսանունների ընդհանուր քանակի մեջ զգալի տոկոս է կազմում, դեռևս հիմք չի տալիս արձանագրելու իմաստային այդ խմբում հունական ազդեցության գերակշռությունը: Այդ է հաստատում նաև այդ բառերի գործառական առանձնահատկությունների քննությունը: Վերը նշված բառերը /գրաբարում ավանդվածները/, ինչպես նշել ենք, գրքային վկայություններ են և հիմնականում տարածքային-գործառական լայն ընդգրկում չունեն, այդ բառերից մի քանիսը հայերեն բնագրում դիտվում են որպես օտար բառ, որոնք մեկնվում-թարգմանվում են, բառերի մի խումբ էլ եզակի վկայություն ունի և հանդիպում է թարգմանական որևէ գործի մեջ: Միայն մեկ անգամ հանդիպող բառերից են՝ *անթեմ, ասփողէլոն, գոնգ, եղատ, թիւնի, թիմ, կալամոն, կիպրոս, հաղիկա, հիպատիկեան, հրիզոն, միրաբաղանոս, մառուլ, որիզ, փղոմոս, փսենաս:*

Բերենք որոշ վկայություններ. «Եւ թարշամեսցի ոսկեծաղիկն... զի անթեմն այս երևելի բանջար է» /Կոչ. ընծ., 321/: «...յորժամ վարիցեն առ արմատովքն երիթ պարարտ ի պեւկէս փայտէ» /Բրսղ, 151/: «Պատգամաւորութիւն քո դրախտ նռնենեաց՝ հանդերձ պտղովք մրգաբերաց. կիպրոս հանդերձ *նարդոսիւ*... զմոտս և



*հալուէ,* կինամոնոն...» /Երգ, Դ, 13-14/: «Այլազգի կերպարանս ունի հոյզն ծառոյն, որ անուանեալ կոչի սքինոս» /Բրսղ, Արմ./: *Կիպրոս* բուսանունը հանդիպում է Երգ երգոցում, որի այլ հատվածներում թարգմանվում է *նոճ*:

Մի քանի փոխառությունների՝ *կիտրոն, հալուէ, նարգէս, նարդոս,* հայերենի այլ լեզվափուլերում գործածությունը թերևս պետք է դիտել որպես նոր ազդեցություն /նաև միջնորդավորված/:

## *Անհայտ ծագումով բուսանուններ*

Գրաբարում ավանդված մի շարք բուսանունների ծագումը անհայտ է: Դրանք են՝ *անիար* /ծաղիկ է/, *բանջար, բաղեղն, բռինչ, գազ* «փշոտ բույս», *խաւարծի, խոլորձն, կաղանչանն, կտաւ, կնձնի, կորեակ, հերձի* «ծառատեսակ», *մոշայ* «մի տեսակ թուփ», *սարդ* «մայրի ծառը», *պրտու* «սեզ, եղեգ», *սամիթ, սերկեւիլ, սէզ* «խոտ», *սինձ* /ծառ է/, *վուշ*:[13]

Բերենք մի քանի վկայություն. «Կաղանչանան մաղձաղեղ է բուժիչ ի մահուանէ» /Եզն., 67/: «Որո՞վ ծառով հասեր առ դոսա, և նա ասէ ընդ հերձեաւն» /ՆՀԲ/: «Միթէ կանաչանայ պրտու առանց ջրոյ, կամ բարձրանայցէ կնիւն առանց ըմպելոյ» /Յոբ., Ը, 11/:

## *Բույսի մասեր*

Հայերենում բավական մեծ թիվ են կազմում բույսերի մասերի անվանումները:

Բերենք գրաբարում ավանդված զանազան բուսամասերի անվանումները այբբենական կարգով. *ած «ընձյուղ», *արգատ, *արմ/արմատ, բաժակ, բարունակ, *բողբոջ, *բուն, գնդակ, գոխ, *ընձիւղ[14], *թերթ, թեփ, *խեղբ/խիղբ[15], խոշակ, *ծանծ, *ծիլ, կաճին/կարճին, կեղեւ, կոկոն, *կողր, *ձող «ճյուղ», *մոլ, *մորճ «ճյուղ»,շառաւեղ, *շիւ, շրուանդ, ողկոյզ, *ոճ « ցողուն», *ոստ, ուղէշ, ունդ, ուռ, չանչ, պալար, *պպլուկ, *պտուկ, *ջով, *սաղարթ, *սերմն, *ստեղն, տորր, տուտ «ոստ, ճյուղ», ցողուն...

Ինչպես նկատելի է, այս ենթախմբի բառերի մեծ մասը բնիկ հայերեն է /հ.ե. ծագումով բառերը նշված են աստղանիշով/:

*Բաժակ* /բույսի մաս է/. ՆՀԲ-ը և Արմ.-ը չունեն: Վկայված է Բարսեղ Կեսարացու «Վեցօրեայ»-ում. «...պէսպէս կերպարանօք կանգնեցան կացին՝ արմատք եւ ուռք, կողը և տերեւ...բաժակ և ողկոյզ, գնդակ» /Բրսղ, 145/: *Բաժակ*-ը նշված իմաստով պետք է համարել հայերեն բառ, ոչ թե իրանական փոխառություն: *Գնդակ*-ը նույնպես պետք է համարել հայերեն: *Տակ* «բույսի արմատ»-ն էլ հավանորեն հայերենում ստեղծված նրբիմաստ է. ունենք և *տակախիլ առնել* «արմատախիլ անել», բարբառներում՝ *տակռի* «արմատ» և այլն:

Բուսամասեր ցույց տվող բառերից մի քանիսը կազմում են հոմանշային շարքեր, ավելի ճիշտ իրենց նրբիմաստային երանգներով հանդերձ կարելի է ընդգրկել որևէ ենթախմբի մեջ /նշում ենք հիմնականները/:

*Արմ/արմատ-տակ-կաճի/կարճին/.* ամենայն հավանականությամբ, այս նույնիմաստ բառերից նախնականը *արմ*-ն է, որը դասական հայերենում /հատկապես բառակազմության ժամանակ/ հանդես է գալիս և *արմն* ձևով: *Արմատ*-ը թեև վաղ գրաբարում դարձյալ վկայված է, բայց որպես բառաձև *արմ+ատ* թերևս ավելի հետին կազմություն է: Որպես բառակազմական բաղադրիչ՝ հաճախական է *արմատ*-ը. *արմատագէտ, արմատախիլ, արմատակեր, արմատակից, արմատանալ...*

Բերենք օրինակներ նշված բառերով. «Տապար առ արմին ծառոց դնի» /Մտթ., Գ, 10/: «Առ արմամբ խլեցաւ այգին նորա» /ՆՀԲ/: «Արմատք բուսոց ի պէտս օգտակարութեան դեղոց» /Փարպ., ՆՀԲ/:

*Կարճին*-ը ըստ Արմ.-ի վկայված է մեկ անգամ. «Չարաթոյն օդոցն շնչմամբ խստութեան դառնութեան՝ խորշակահար ցամաքեցուցանէ զվարսաձև բոյսս դալարոյն, մօտ առ կարճինսն այրեցուցանէ» /Արմ., Ագաթ./: Բառի ծագումը ստույգ չէ:

*Սերմն-հատ/իկ/-ունդ.* «Իբրև զսերմն գնձոյ սպիտակ» /ՆՀԲ/: «Նման է արքայութիւն երկնից հատոյ մանանխոյ, զոր առեալ մարդոյ սերմանեաց յագարակի իւրում» /Մտթ., ԺԳ, 31/:



*Ունդ.* «ուտելու սերմ, հատիկ». *հատիկ* «սերմ» վաղ գրաբարում հաճախական չէ: ՆՀԲ-ի վկայած օրինակը Լամբրոնացուց է:

*Ձող-ցօղուն-բուն-կոթուն.* հ.-ե. ծագումով *ձող*-ը ըստ գրաբարի բառարանների ունի «բուն, ոստ, ճիւղ, գաւազան, մական, ցից, գերան» իմաստները, *ցողունը*՝ «ձող, բուն»:

Բերենք վկայություններ հոմանշային այս շարքից. «Եթէ ծերասցի յերկրի արմատ նորա՝ և ի քարի վախճանեսցի բուն նորա... ի հոտոյ ջրոյ ծաղկեսցի» /Յոբ.,ԺԴ,8/: «Նախ և առաջ իսկ կոթունն էր և ապա ցորեանն... և եթէ չէր կոթունն և ոչ ցորեանն լինէր» /Ոսկ., Պօղ., Ա, 472/: «Ձողք հացնոյ» /ՆՀԲ/: «Ցօղուն և ժժան պատեալ զնովաւ տոչորեցին» /ՆՀԲ/:

*Թերթ-տերեւ- սաղարթ.* հավաստի հ.-ե. ծագում ունի միայն *թերթ*-ը, որը հոմանիշների այս շարքում «տերև» իմաստով հաճախական չէ: Այս բառի պարզական *թեր* «տերև» արմատը առկա է Ղարաբաղի բարբառում *տկաթեր* «*տակ* բույսի տերևը»:

*Սաղարթ* բառից կան՝ *սաղարթանալ, սաղարթաթափ, սաղարթաբեր:* Կան նաև *տերեւ*-ով տասնյակ կազմություններ. *տերեւաբեր, տերեւաբուղխ, տերեւազարդ, տերեւաթափ, տերեւալից, տերեւախիտ, տերեւիլ, անտերեւ, դեղնատերեւ...*

Գրաբարում առավել շատ են *ոստ-ճիւղ* հոմանիշային շարքի անդամները. *ած* «ծիլ, ընձյուղ»-*բարունակ* «ճիւղ, ոստ»- *բողբոջ* «ծիլ, ընձյուղ»- *գնդակ* «ոստ»- *զոխ* «բույսի մեջտեղի հաստ ծիլ», *ընձիւղ* «ծիլ, բողբոջ»-*խեղբ* «ծիլ, ընձյուղ»- *ծիլ/ծիղ-կորիւն* «ծիլ»-*կողր* «ճյուղ, ոստ»- *մոլ* «ծիլ, ընձյուղ»-*շառաւիղ* «ընձյուղ, բողբոջ, ծիլ»-*շիւ* «ծիլ», *ուղէշ* «ընձյուղ, բողբոջ, սաղարթ», *ուռ* «ճյուղ, շիվ», *պպլուկ* «ծիլ»-*պտուկ* «ծիլ, բողբոջ, ընձիւղ»-*ջոկ,* «ծիլ, ընձյուղ», *ստեղն* «ճյուղ»-*տորր* «ճյուղ»:

*Զոխ*-ը ըստ Արմ.-ի վկայել է մեկ անգամ Գրիգոր Մագիստրոսը: Այդ բառը գործածական է Ղարաբաղի բարբառում:

*Տորր*-ը համեմատվում է խեթալուվական tuųarš «խաղողի որթի ճյուղ»-ի հետ:

Նշենք, որ վերոհիշյալ բառերի մի մասը չակերտներում բերվածներից բացի ունի նաև այլ իմաստներ:

Այսպես, *ջոկ*-ը ունի նաև «կեմ, խոտե պարան», *ու*-ը՝ «ուռենի», *տորր*-ը՝ նաև «խաղողի որթի թևերը», *շառավիղ*-ը՝ «զավակ», *ստեղն*-ը՝ «ծխի սյուն, աշտանակի թև», *պտուկ*-ը՝ «ստինքի ծայրը»:

*Մոլ, պպլուկ* վկայված են ուշ շրջանից, բայց եթե հավաստի է դրանց հ.-ե. ծագումը, ապա պարզապես վաղ գործածության օրինակները մեզ չեն հասել:

*Կորիւն* բառի՝ «պտուղ, ծիլ, բողբոջ» իմաստը /թեև այնքան էլ հստակ չէ/, վկայված է մեկ անգամ Բարսեղ Կեսարացու «Վեցօրեայ»-ում: Ահա այդ օրինակը. «...կնձնիք և կաղամախիքն և այլ բազում ծառք, որ նոցին նմանք են, պտուղ իմն ունին թանձրախիտ տերեւովք և թերևս նոյն իսկ կերպարանք իցեն սերման եւ պտղոյ: Եւ զնոյն, որ երեւին ի ծառ կորիւն կոչեն անուանագէտք իրաց բազմաց, որ համապազ ի նոյնն մշտնջենաւորին» /144/: «Վեցօրեայ»-ի քննական բնագրի ծանոթագրության մեջ Կ. Մուրադյանը նկատում է, որ հուն. *միսխօն* բառն է՝ «ցողուն, բուն, կոթուն» /340/:

Բույսի մասեր արտահայտող մյուս բառերից են՝

*Ծանծ* «ցորենի կճեպ». բնիկ հայերեն բառ է: Ղարաբաղի բարբառում գործածական *պաճ*-ը նույնպես հին ակունքներ ունի և ըստ երևույթին միջին իրանական փոխառություն է:

*Կոկոն* «ծաղկի մաս». Գ.Ջահուկյանը դնում է հայ-ֆիննական զուգադիպումների ցանկում /1987, 293/:

*Առէջ, պալար* բառերը գրաբարում որպես բուսական աշխարհին առնչվող հասկացություններ չեն գործառում:

Նկատելիորեն շատ են *խաղող, խաղողի որթ* իմաստային դաշտի մեջ ներառվող անվանումները:

* * *
* *

Հ.-ե. որոշ լեզուների համար *խաղող և խաղողի որթ* հասկացությունների համար առկայանում է * վ/e/o/ino-ն, որից հայերենում՝ *գինի*: Այդ արմատը կա և սեմական մի շարք լեզուներում:



*Խաղող/ենի/, խաղողի որթ* և *պտուղ* բառերի համար այս արմատը հայերենում բացակայում է: Գ.Ջահուկյանը հայերեն-խուռերեն զուգահեռների շարքում բերում է և *խաղողը*՝ նշելով, որ «որոշ դեպքերում հնարավոր է ենթադրել նաև զուգահեռ որևէ աղբյուր կամ ուրարտերենում չարձանագրված համարժեք» /Գ.Ջահուկյան, 1987, 425-426/:

Թեև բառը վկայված է 5-րդ դարից, սակայն այն հաճախական չէ: Նկատելի է նաև, որ Ս. Գրքի որոշ հատվածներում հուն. *ամպէլօս* «խաղող, խաղողի որթ» բառը՝ հայերեն *խաղող* կամ *խաղող* բաղադրիչով կապակցությամբ չի արտահայտվում /հմմտ. Երեմ., Չ, 9/:

Խաղողի ընտանեցման և մշակության հնագույն օջախը համարվում է հարավարևմտաասիական /առաջավորասիական/ տարածքը՝ առանձնացնելով Անդրկովկասը՝ որպես մշակովի խաղողի առաջացման և վայրի ու մշակովի խաղողի զանազան տեսակների առկայության տարածք:

Անդրկովկասում խաղողագործության հետքերը հասնում են մինչև մ.թ.ա. 5-4-րդ հազարամյակները[16]: Վերջերս «Արենի-1» քարայրում գտնված նյութերը հաստատում են, որ գինեգործությունը և խաղողի մշակությունը Հայաստանում զարգացած է եղել արդեն մ.թ.ա. 5-րդ հազարամյակի վերջերից:

Հայերենի բառապաշարը յուրատեսակ արձագանքել է այդ իրողությանը՝ պահպանելով իմաստային դաշտին վերաբերող բազմաթիվ բառեր:

*Խաղող* «խաղողի պտուղը»:

*Ճիւ* «ճմռված խաղողի մնացորդը»: Վաղ գրաբարում թեև վկայված չէ, բայց բառի հ.-ե. ծագումը /Ջահուկյան, 1987, 147/ հավաստում է, որ գործածության հին ակունքներ է ունեցել: *Ճիւ* «ճյուղ» եթե նույն արմատից է, ապա առաջինի իմաստային զարգացումն առկա է որոշ բարբառներում:

*Ազոխ* «խակ խաղող». վկայված է 5-րդ դարից:

*Չանչ*- խաղողի ճզմված կեղևները:

*Սովրէկ/սորեկ զորէկ*/ «խաղողի տեսակ կամ որթ». «Զորթն զորէկ, մի թարգմանն պտղաբեր թարգմանեաց եւ Ակիւղաս՝ Սիա-

պտուղ, ազգ ինչ է որթոյ, որ կոչի սովրէկ, որոյ գինին այնպէս թուխ առնի, զի ուր և հասանէ անդէն ներկանէ» /Եմես., Մեկն., 226/:

*Որթ* «խաղողի տունկը, նաև խաղող». այդ արմատից կազմվել են *որթատունկ, որթափայտ: Որթ*-ը հ.-ե. ծագումով բառ է: Ըստ Արմ.-ի porthu -*որթ* «հորթ, եղինջ, ձագ»: *Խաղողի տունկ*-ը Աճառյանը համարում է նշվածի իմաստային զարգացումը: Որպես զուգահեռ նշում է *երինջ, հորթ*, և Երևանի խոսվածքում՝ «խաղողի որթի մատ»: Ինչ խոսք, զուգահեռը ուշագրավ է, բայց ուշագրավ է նաև այն, որ վաղ շրջանից *որթ* «հորթ» և *որթ* «բույս» անցումը վերագրվել է միայն խաղողի վազին:

*Մատն.* հիմնական իմաստից զատ ունի նաև «խաղողի որթի ճյուղերը»: Բացառելի չէ վաղ շրջանից բառի գործածությունը:

*Վազ* «խաղողի ուռ, որթ». վկայված է ուշ շրջանից, բայց հնարավոր է և վաղ գործածությունը, եթե իրոք *վազ* «վազել, ցատկել»-ի իմաստային զարգացումն է:

*Արգատ* «որթատունկի էտած ճյուղը»:

*Բարունակ* «խաղողի պտղաբեր ոստ». վկայված է 5-րդ դարից. «Եհան անդ ողկոյզ և արձակեաց զբարունակս իւր» /ՆՀԲ/:

*Ողկոյզ*. գործածվում է 5-րդ դարից:

*Ճրուանդ* «խաղողի ողկույզ՝ հատերը վրայից թափված». հաճախական կիրառություն չունի:

Այս բառին հոմանիշ է և *ճիռ*-ը՝ վկայված 5-րդ դարից: Այս երկու արմատների ծագումը ստույգ չէ: *Ճիռ* արմատը հանդես է գալիս նաև հետևյալ գրաբարյան բառերում. *ճռախիտ, ճռաքաղ, ճռաքաղութիւն, ճռաքաղել*...: Ղարաբաղի բարբառում *ճիռ* բառին հոմանիշ է *քընքըռն*-ը, որի, ինչպես և *ճիթ* «ողկույզ»-ի հ.-ե. ծագումը Գ.Ջահուկյանը հավանական է համարում[17]:

*Տաշտ* «խաղողի որթի տնկված ճյուղ». վկայված է 5-րդ դարից:

*Տոլի* «խաղողի որթ». վկայված է ուշ՝ «Վաստակոց» գրքում: Սակայն բառի ուրարտական ծագման վարկածը /Ջահուկյան, 1987, 428/ ենթադրում է ավելի վաղ գործածություն:

*Տորր* «խաղողի որթի թևերը»:



Կարելի է ենթադրել, որ նախագրաբարյան շրջանում *գինի*-ն ունեցել է «խաղողի որթ», նաև «խաղող» իմաստը, որը և այդ հասկացությունների նախնական /հնդեվրոպական/ անվանումն է: Բառի՝ ի-ով վերջավորությունը բնորոշ է ծառանուններին: Իսկ ՆՀԲ-ը *գինի* բառահոդվածում նշում է և «բերք որթւոյ և այգւոյ»: Հավելենք նաև, որ հ.-ե. և ոչ հ.-ե. որոշ լեզուներում *գինի* և *խաղող* բառերում նույն արմատն է. հմմտ. ռուս. вино, виноград:

Աստվածաշնչի մի վկայության մեջ *գինաւէտ* բառը, ըստ էության, նշանակում է «խաղողի այգիներ», ոչ թե «շատ գինի ունեցող»: «Երկիր ցորենոյ և գինւոյ հացաւէտ և այգաւէտ» /Եսայ.,ԼՋ, 17, ՆՀԲ/:

Ըստ ՆՀԲ-ի մի շարք ձեռագրերում այգաւէտ-ի փոխարեն *գինաւէտ* է: Եղիշեի և Խորենացու վկայած *գիներեր*-ը ՆՀԲ-ը մեկնում է «որ բերէ կամ բղխէ զգինի. գինեւէտ»: Համատեքստը հուշում է, որ *գիներեր*-ի առաջին բաղադրիչը *խաղողի որթ*-ն է կամ *խաղող*-ը. «Եւ զամենայն... կողմանս զարդարէ... և սաղարթիւք ծառոց վարսաւորաց, զանազանեալք ի պտուղս և ի տերեւս, և բազումս բազմաբերս և գիներերս ի նմա տնկեաց ովիտս» /Խոր., Ա, ԺՁ/: «Չորացան ազազեցան բուրաստանք ծածկոցաց նոցա, և տաշտախիլ եղեն որթք գիներեր այգեաց նոցա» /Եղիշ., 201/:

Ինչ վերաբերում է *խաղող* բառին, ապա կարելի է արձանագրել, որ վաղնջահայերենում այն լայն կիրառություն չուներ: Որպես ուրարտերեն բառ՝ թերևս կիրառվել է Վանա լճի հարավարևելյան շրջաններում: «Խաղող», «խաղողի վազ» իմաստով գործածվել են հ.-ե. ծագում ունեցող *այգի, որթ, գինի* բառերը[18]:

Բուսաշխարհին վերաբերող բառեր են նաև տարածքային անվանումները. տարածքներ, որտեղ աճում կամ աճեցնում են բույսեր, ծառեր:

Դրանցից են՝ **ածու, *այգի, *անդ, *անտառ, *արտ, *արօտ, դաշտ, դաշտավայր, դրախտ, *կորի, *հարաւունք* «արտ», *հովիտ, *մայրի* «անտառ», **մայրաւոր* «անտառ», *մարգ, մարգագետին, շամբ, պարտէզ, պուրակ, տափարակ*....

Այս կարգի բառերի մի մասը կազմվում են տեղ ցույց տվող ածանցներով.

*Ստան-* այգեստան, անդաստան, արմաւստան, բուրաստան, դարաստան, ծառաստան, սեխաստան...

*Ուտ-* եղեգնուտ, թփուտ, ծառուտ, հացուտ, մացառուտ, շամբուտ... /ծառուտ-ը ՆՀԲ-ը չունի/. «Դաշտային կամ լեռնային, սոսկ կամ ծառուտ» /Թէոն., 70/:

*Ոց/անոց/*-ծաղկոց, բանջարանոց...

*Բուսական միջավայր /տարածք/* մատնանշող հիմնական բառերն են՝ *այգի* /Եզն. 1, Ագաթ. 8, Բուզ. 11, Եղիշ. 1, Խոր. 2/, *անդ* /Եզն. 1, Ագաթ. 3, Բուզ. 2/, *անտառ* /Ագաթ. 2, Բուզ. 1, Խոր. 9: Եղիշեն, Եզնիկը, Փարպեցին ունեն *անտառախիտ*, *դաշտ* /Եզն. 5, Ագաթ. 14, Բուզ. 12, Փարպ. 12, Խոր. 33, Եղիշե 14/, *հովիտ* /Խոր. 11, Եղիշե 1/, *շամբ* /Խոր. 9/, *պուրակ* /Բուզ. 1/:

*Այգի*-ն գրաբարում կիրառվում է հիմնականում «խաղողի այգի» իմաստով:

Նշել ենք, որ 5-րդ դարի ոչ թարգմանական գրականության մեջ բուսաշխարհին, հատկապես բուսանուններին վերաբերող բառերը մեծաթիվ չեն, բայց դրանց մեծ մասը գործածական է և արդի գրական լեզվում:

5-րդ դարի ոչ թարգմանական գործերից բուսանուն, միրգ և սրանց տարբեր տեսակների անվանումները շատ են Ագաթանգեղոսի «Պատմության» մեջ: Ներկայացնենք դրանք՝ փակագծերում նշելով գործածության հաճախականությունը:

Ապաբաղսամոն/1/, բանջար /1/, բոյս/23/, գարի/1/, գաւարս/1/, դառնիճ/1/, դափնի/1/, դժնիկ/3/, եղիճ/1/, ընկոյզ/1/, թզենի/6/, թուզ/1/, ժանտափուշ/1/, խաղող/1/, խոտ/6/, ծաղիկ/17/, ծառ/22/, կայծուկն/1/, կարմրաղեղձ/1/, կարմրախնձոր/1/, կարմրատանձ/1/, կիտրոն/1/, հաճար/1/, հաճարուկ/1/, հօրուտ/1/, ձիթենի/1/, մայր/4/, մայրի/2/, մանիշակ/2/, մանրագոր/1/, մօրօտ/1/, միրգ/3/, մոլեբոյս/1/, ներգիս/1/, նոճ/1/, նուշ/1/, շամղիտակ/1/, ոլոռն/1/, որիզ/1/, որոմն/6/, ուռի/1/, պատեղիճ/1/, պտուղ/38/, սարդ/1/, սերկեւիլ/1/, սիսեռն/1/, սմնակ/1/, սոճ/1/, վարսակ/1/, քնարուկ/1/:



*Կայծուկն, կարմրաղեղձ, կարմրախնձոր, կարմրատանձ* բառերի՝ ՆՀԲ-ի եզակի վկայությունները Ագաթանգեղոսից են: *Կայծուկ-կածուկ* գործածական է արդի բարբառներում /Ղարաբաղ, Խարբերդ, Մուշ/: Եթե *կարմրատանձ, կարմրախնձոր, կարմրաղեղձ*-ը տանձի, խնձորի, դեղձի տեսակներ են, ապա որպես այդ կարգի բառեր /տեսականիշ/ դարձյալ միայն Ագաթանգեղոսն է վկայել: Նկատենք, որ *դեղձ*-ի՝ ՆՀԲ-ի վկայությունները միջինհայերենյան փուլից են: Հայերն, անշուշտ, 5-րդ դարում և դրանից էլ վաղ գիտեին դեղձի մասին:

*Կորյունը* վկայել է միայն *պտուղ*/1/. *Եզնիկը*՝ բանջար/4/, գարի/1/, թուզ/1/, խաղող/1/, խոտ/5/, ծառ/14/, կաղանչանան/1/, կանեփուկ/1/, կորեակ/2/, հազար/1/, հաճար/1/, մանրագոր/1/, որթ/1/, պտուղ/12/. *Բուզանդը*՝ բոյս/4/, եղէգն/3/, խնձոր/1/, ծաղիկ/1/, ծառ/3/, մայրի/7/, մորենի/1/, պտուղ/5/, վարունգ/1/, ցորեան/8/. *Եղիշեն*՝ թուզ/1/, խոտ/1/, մայրի/5/, մորենի/5/. *Փարպեցին* բանջար/1/, բոյս/4/, դժնիկ/1/, եղէգն/1/, խոտ/2/, ծաղիկ/2/, ծառ/3/, ձիթենի/8/, պտուղ/10/, ցորեան/1/: *Խոզ* բուսանունը ՆՀԲ-ը չի վկայում: Փարպեցու գրքում կա *խօզակեր*. «Ջրասուզակ մամռախնդիր խօզակեր մեծանձունք և յաղթամարմին հաւքն հաւքն» /Փարպ., 10/: Ըստ Արմ.-ի *խօզ* նշանակում է «մամուռ»:

Արդյոք այս բառը կապ ունի՞ բրբռ. *խոզ* «խակ, չհասած /դդմիկ/, *խոզուկ* «վայրի դառնահամ բույս» բառերի հետ: Պատասխանը դյուրին չէ:

*Խորենացու* գրքում էլ բուսանունները շատ չեն. արմաւենի/1/, եղէգն/4/, թզենի/1/, խոտ/1/, ծաղիկ/1/, ծառ/2/:

Զարմանալի է, որ նշված գործերում վկայված չէ *վարդ*-ը, որը նաև ըստ ՆՀԲ-ի տվյալների առկա է միայն թարգմանական գրականության մեջ:

Արդյո՞ք 5-րդ դարից վկայված հատկանուններում՝ *Վարդ* /անձնանուն/, *Վարդաշէն* /տեղանուն/... *վարդ* /ծաղիկ/ արմատն է, թե՞ այլ. դարձյալ դժվար է փաստարկել:

# ԾԱՆՈԹԱԳՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

1. Տե՛ս Гамкрелидзе, Иванов, նշվ. աշխ., 616. 617:
2. Տե՛ս Дж. Фрезер, Золотая ветвь, М., 1986, стр. 156, 158.
3. Ա. Սարգսյան, Ծառերի պաշտամունքի դրսևորումները հայոց հավատալիքային համակարգում /Շիրակի հայագիտական հետազոտությունների կենտրոն. Գիտական աշխատություններ / 2000թ., 76:
4. Ն.տ., էջ 74:
5. Գ. Ջահուկյան, Հայոց լեզվի պատմություն, 1987, էջ 440:
6. Ն.տ., էջ 439:
7. Գ. Ջահուկյան, նշվ. աշխ., 427-428:
8. Г. Капанцян, Историко-лингвистические работы, II, 1975, 369.
9. Տե՛ս Հ. Աճառյան, Հայոց լեզվի պատմություն, Ա, 1940, 293-294:
10. Տե՛ս Մովսէսի Խորենացւոյ Մատենագրութիւնք, Վենետիկ, 1865, 615:
11. Գ.Ջահուկյան, նշվ. աշխ., 1987, 464:
12. Հ.Աճառյան, Հայոց լեզվի պատմություն, Բ, 1951, 36-37:
13. Այս շարքի, ինչպես և շատ բուսանուններ, որոնք գրաբարում ավանդված չեն, բայց առկա են բարբառներում, կարելի է համարել գրաբարյան փուլում գործածվող՝ նկատի առնելով որոշ հնչյունական առանձնահատկություններ: Օրինակ՝ *բոնչի*-ի՝ Ղարաբաղի բարբառի *պըռըշնի* ձևը հաստատում է բառի հին գործածությունը /նկատի ունենք ձայնեղների խլացումը, որը միջինհայերենյան շրջանից առաջ կատարված գործընթաց է/: Այլ կարգի օրինակներ ևս կան:
14. *Ընձիղ*-ի բնիկ հայերեն լինելը տե՛ս Գ.Ջահուկյան, նշվ. աշխ., 124: ՆՀԲ-ում բառի միակ վկայությունը Նարեկացուց է, իսկ *ընձիղել* բայական ձևը հաճախական է, գործածությունն էլ նաև վաղ գրաբարից:
15. *Խեղբ*-ի հ.-ե. ծագումը փաստարկում է Է.Աղայանը /Աղայան, 1974, էջ 77/:
16. Гамкрелидзе, Иванов, նշվ. աշխ., էջ 651:



17. Գ.Ջահուկյան, Հայ բարբառագիտության ներածություն, Ե. 1972, էջ 304,311:
18. «Պատմաբանասիրական հանդեսում» տպագրված հոդվածներում Ս.Պետրոսյանը հ.-ե. ծագում է վերագրում մի շարք բառերի. *կոճկ* «վայրի խաղողի մի տեսակ» /ՊԲՀ, 1999, N2,3/, *աղուրի* «որթի տաշտախիլ անելու ճյուղ», *աղոշ/աղօշ* «խաղողի որթի նորածիլ ուղեշ», *սիսակ* «գինու խաղողի մի տեսակ, վարդագույն բարակ կեղևով» /ՊԲՀ, 2010,N3/:

## ԳԼՈՒԽ ՎԵՑԵՐՈՐԴ

# ԵՐԱԺՇՏՈՒԹՅՈՒՆ. ԵՐԱԺՇՏԱԿԱՆ ԳՈՐԾԻՔՆԵՐ

ՆՀԲ-ը *երաժիշտ* բառի երկու իմաստ է արձանագրում՝ «երգիչ ճարտար՝ արուեստական ձայնիւ կամ նուագարանաւ. գուսան» և «երաժշտութիւն, երաժշտական նուագ»:

Մեր տվյալներով V դ. ինքնուրույն գրականության մեջ *երաժիշտ* արմատով կա մեկ վկայություն միայն. «Քաղցրացուցանէր ոմանց զկարգս երաժշտական և զերգս հեթանոսական» /Եղիշ., 64/: Աստվածաշնչում վկայված են *երաժիշտ* և *երաժշտական* բառերը երկուական անգամ[1]: Գրաբարում *երաժիշտ* արմատով ավանդված մյուս կազմությունները /*երաժշտակ, երաժշտաբար, երաժշտանամ, երաժշտապետ, քաջերաժշտական*/ հիմնականում առկայանում են հունարենից կատարված թարգմանություններում: Ամենայն հավանականությամբ, ժողովրդախոսակցական լեզվում *երաժիշտ* արմատով կազմությունները գործածական չեն եղել:

*Երաժիշտ* բառի ծագումը ստույգ չէ: Բառաձևը հուշում է, որ այն կարելի է համարել իրանական փոխառություն: Արմատը թերևս իրան. raz «գաղտնիք, խորհրդավորություն», *իշտ*-ը առկա է նաև *նաժիշտ* բառում, որը դարձյալ իրանական փոխառություն է: Ր-ով սկսվող բառերը, հատկապես իրանական փոխառությունները, բառասկզբում ստանում են *ե* նախահավելվածը /*երամ, երակ, երան*.../: Ենթադրելի է **երազիշտ-երաժիշտ* անցումը:

*Երաժշտութիւն* բառին հոմանիշ *նուագ*-ի իրանական ծագումը հավաստի է: Վերջինս ըստ ՆՀԲ-ի ունի «եղանակաւոր ձայն բարբառոյ և գործեաց. եղանակ. տաղ, գեղգեղ. դայլայլիկ» իմաստները: ԱԲ-ը նշում է միայն «երգ, եղանակ»: Այդ իմաստներն են նշված և Արմատական բառարանում: Թեև ՆՀԲ-ը V դ. ինքնուրույն գործերից հղում է միայն Եղիշեի գիրքը /մնացածները թարգմանական գրականությունից են/, սակայն բառը առկա է այլ գործերում ևս. «Նուագս փանդռան և յերգս ցցոց և պարուց ասեն յիշատակաւ» /Խոր., 27/: «Անդ կատարէր նուագ սաղմոսարանին» /Ագաթ., 241/:



Գրաբարի հոմանիշների բառարանում *նուագի* հոմանիշներ են համարվում *եղանակ, գեղգեղ, գեղգեղանք, դայլայլիկ, երգ* բառերը:

Անշուշտ, շարքի անդամները նույնանիշներ չեն, ունեն իմաստային նրբերանգներ, նաև տարբերվում են հաճախականության և գործածության ժամանակագրության առումներով:

*Գեղգեղ*-ը ՆՀԲ-ի տվյալներով որպես երաժշտությանն առնչվող բառ չի վկայվում, բայց կա *գեղգեղանք, գեղգեղումն* /ուշ շրջանից/, *գեղգեղել*: Բառարանները չեն վկայում նաև *դայլ* և *դայլայլել* բառերը, բայց կա *դայլայլիկ*: Վաղ գրաբարի ոչ թարգմանական գրականությունից ՆՀԲ-ը օրինակներ չունի:

*Մեղեդի*-ն արդի հայերենում նշանակում է «երաժշտական ախորժելի եղանակ, քաղցրալուր երգ՝ երաժշտություն»: Գրաբարում այն ավելի նեղ իմաստով է գործածվում. ըստ Արմ-ի «մի տեսակ եկեղեցական քաղցրաձայն երգ»:

Բառը փոխառյալ է հունարենից և վաղ գրաբարում հաճախական չէ: Բերենք մի վկայություն, «Եւ արար կցուրդս և մեղեդիս քաղցրեղանակս» /Օրբ., Պատմ., 139/:

Բազմիմաստ է *երգ* բառը. ըստ ՆՀԲ-ի «Նուագ ձայնի. բան երաժշտական. օրհնաբանութիւն. գովեստ. շարական. տաղ»:

Գրաբարում հաճախական է բառի «երգ, տաղ» իմաստով գործածությունը: Ահա մի քանի օրինակ. «Որ զայս ի յերգ արկեալ հեգնեն» /Ոսկ., Մտթ., II, 421/: «Եւ երգէին զերգս նորա... և ոչ ոք կարէ գիտել զերգ նոցա»/Յայտ.Յովհ., ԺԴ. 3/: «Անտրտում ուրախութեամբ երգս ի բերան առեալ... ասէին ձայնիւ» /Եղիշ. 80/:

*Երգել* գրաբարում նշանակում է նաև *նվագել*. հմմտ. «Եւ արդ երգեսցուք նուագս այնպիսի հոգւոյն, որ անկեալ դնի և յայլմէ ի գրոց և ի նմին իսկ ի Դաւթայ» /Ոսկ., Պօղ., II, 391-392/: «Եւ խնդրեսցեն տեառն մերում այր մի որ գիտիցէ երգել քնարաւ» /Ա.Թագ. ԺԶ, 16/: Ռուս. թարգմանության մեջ՝ «... поискать человека, искусного в игре на гуслях»[2]:

Բնագրային որոշ օրինակներում *երգել* թե՞ *նվագել* իմաստը հստակ չէ. հմմտ. «Եւ ամենայն ժողովուրդն զուարճացեալ հարկանէին զփողսն եւ երգէին նուագարանօքն երգս և օրհնէին

զօրհնութիւն» /Բ.Մնաց., ԻԳ. 13/: Այդպես է և հետևյալ օրինակը. «Տեսէք ինձ այր մի որ բարուոք *երգիցէ* և ածէք զնա առ իս» /Ա.Թագ., ԺԶ. 17/: Ընդգծվածը համապատասխանում է հուն. *պսալլօ*-ին, որը ունի և՛ *երգել*, և՛ *նվագել* իմաստը: Ռուսերեն Աստվածաշնչում թարգմանված է "Найдите мне человека, хорошо играющего и представьте ко мне": Կա և *նուագ երգել* բառակապակցությունը. «...որպէսզի մանկունք ըստ հասակին եւ կամ որով իսկ տղայք ըստ բարուց, որպէս կարծեն նուագ երգիցեն» /Բրսղ, Պահ., 205/:

*Երգել*-ի իմաստային անհստակության պատճառով է, որ Խորենացու *երգէր ձեռամբ*-ը տարբեր մեկնաբանություններ է ստացել: Ահա այդ հատվածը. «... և յուրախանալն գինով, տեսեալ Տրդատայ զկին մի, զի յոյժ գեղեցիկ էր և երգէր ձեռամբ, որում անուն էր Նազինիկ...» /Խոր., 195/: Ստ.Մալխասյանը մեզ հետաքրքրող հատվածը թարգմանել է *նվագում էր ձեռներով:*

Պրոֆ. Հ.Բարսեղյանի կարծիքով «Ստ.Մալխասյանի «երգէր ձեռամբի» «նվագում էր ձեռքերով» թարգմանությունը վաղուց հաստատված և միանգամայն ընդունելի թարգմանություն է»[3] :

Հիշենք, որ *երգէր ձեռօք* բառակապակցությունը կա և Աստվածաշնչում «... Դաւիթ երգէր ձեռօք իւրովք» /Ա. Թագ., ԺԹ. 10/: Ռուս. թարգմանության մեջ՝ «И Давид играл рукою»:

Հաշվի առնելով *երգել* բառի բազմիմաստությունը՝ դժվարանում ենք կողմնորոշվել *երգել ձեռամբ*-ի տարաբնույթ մեկնաբանությունների գնահատման հարցում, բայց քանի որ հեթանոսական շրջանի արվեստին՝ վարձակներին վերաբերող հասկացություն է, ապա հակված ենք կարծելու, որ *երգել ձեռամբ*-ը «ձեռքի շարժումներով ուղեկցող երգ, նվագ է»[4] :

*Սաղմոս*-ը Աստվածաշնչային հասկացություն է՝ եբրայեցիների քնարական նվագը և հատկապես Դավիթ Մարգարեի երգերը և դրանց ամբողջությունը, որը ձեռք է բերել նաև «հոգևոր երգ», «երգ» իմաստները. հմմտ. «...Եւ մեծաւ պաշտմամբ, սաղմոսիւք և երգովք հոգեւորօք ... յուղարկէին» /Բուզ., 73/: «Զոր առեալ Վահանայ և Հմայեկի ... սաղմոսիւք և աւրհնութեամբ... յԱւշականն եւանէին» /Կոր., 94/:



Սաղմոսերգությանն առնչվում են *կցուրդ* և *մեսեդի* հասկացությունները: *Կցուրդ*-ը ՆՀԲ-ը մեկնում է «կցուած երգոց, կամ սաղմոսաց, տուն մի սաղմոսի կցեալ խորհուրդ աւուրն...»: *Մեսեդին* ըստ Արմ-ի երեկոյան սաղմոսերգության կցուրդն է: Բառը հունարենից կատարված փոխառություն է:

«Երգել, նվագել» իմաստն ունի և գրաբարում ոչ հաճախական *ոգել* բառը. «Երգս առեալ գոչեն ... պարառեալ՝ երգ նոր ոգեն ձայնիւ» /ՆՀԲ/: Իմաստային նրբերանգները հաշվի առնելով՝ կարելի է հոմանշային շարքը լրացնել այլ բառերով: Գրաբարի հոմանիշների բառարանում *նուագել*-ի հոմանիշ են համարվում «1. եղանակել, 2. հարկանել, բախել, 3. վերաձայնել, 4.յեղյեղել, 5. սաղմոսել»[5]:

*Երգիչ* բառը գրաբարում նվազ հաճախական է: V դ. ոչ թարգմանական գրականության մեջ այն կիրառել է միայն Ագաթանգեղոսը /2 անգամ/. «Զուխտ փափկութեան տացես ըմպել արժանեացն ըստ բանի հոգևորական երգչին» /280/: «Աշակերտելոց իցեն յազգս ազգաց ըստ բանի հոգեւորական երգչին» /471/:

Նշված օրինակներում *երգիչ* բառի ընդհանրական «երգասաց, երգ կատարող» իմաստը հստակ չէ: Երգիչը այս օրինակում վերաբերում է Աստվածաշնչի Դավթին՝ հոգևոր երգչին:

*Երգիչ* բառով երեք վկայություն էլ կա Աստվածաշնչում, որից մեկը առկա է ՆՀԲ-ում: Ահա մեկ օրինակ ևս. «Եւ ետես՝ եւ ահա կայր ի վերայ սեանն ըստ օրինի իւրում, եւ երգիչք եւ փողարք շուրջ զարքայիւ» /Դ. Թագ., ԺԱ. 14/:

Այստեղ էլ դարձյալ մեզ հետաքրքրող բառի իմաստը հստակ չէ: Նկատված է, որ եբրայերենում *երգիչ* բառի փոխարեն *իշխան* է: Նույնը և ռուսերեն թարգմանության մեջ. "И видит, и вот, царь стоит на возвышении, по обычаю, и князья и трубы подле царя":

V դ. գրաբարում *գուսան* «երաժիշտ, երգիչ» դարձյալ նվազ հաճախական է: Վկայել է Բուզանդը /չորս անգամ/, իսկ Խորենացին էլ ունի *գուսանական* /մեկ անգամ/. «Բայց թէպէտ և ոչ ի բուն մատեանսն, սակայն որպես Մար Աբաս Կատինայ պատմէ՝ ի փոքունց ոմանց և յանանշանից արանց, ի գուսանականէն այս գտա-

նի ժողովեալ ի դիւանի արքունեաց» /47-48/: Երկու օրինակ էլ բերենք Բուզանդից. «Աչօքն յառաջ կոյս պշուցեալ հայէր ընդ պէսպէս ամբոխս գուսանացն» /196/: «Ըմպէին անդ գինի բոզօք և վարձակօք և գուսանօք» /41/:

Այս վկայություններից իսկ ենթադրելի է, որ գուսանությունը, գուսանական արվեստը հիմնականում վերաբերում է նախաքրիստոնեական մշակույթին, և V դ. հեղինակները, լինելով քրիստոնեության ջատագովներ, արհամարհանքով ու քննադատաբար էին վերաբերվում դրան:

Հ.Մանդակունին, որը հայտնի է իր «թատերամերժ» հայացքներով, «Վասն անաւրէն թատերաց դիւականաց» ճառում գուսանությունը համարում է մերժելի, պիղծ սովորություն. «Զի չար է սովորութիւնն, չար են և յորդորիչք նորա՝ գինի եւ գուսան եւ սատանայ» կամ «Զի ուր կատակք եւ գուսանք են եւ խաղ եւ ծաղր լկտիք, անդ եւ դեւք ընդ նոսա ի պարու անցանեն եւ սերմանեն բազում աղտեղութիւնս» /ՄՀ,Ա, 1228-1229/:

Ահա մի հատված էլ Բարսեղ Կեսարացու «Վեցօրեայից». «Եւ զայն ոչ առնուն ի միտ, թէ գուսանութիւնն իւրովք պատիր արուեստիւք զապականութեան նշանակ գործէ ի տեսողս իւր, եւ իրք առականաց են անդ, որոց առաջի ամենայն մարդկան դնին ծանակութիւնքն» /Բրսղ, 100-101/:

Հետհինգերորդդարյա մատենագրության մեջ էլ գուսանական արվեստը չի խրախուսվում. դա ակնհայտ է, օրինակ, Սիմեոն Աղձնեցու մի գործում. «Քանզի նուագ գուսանացն մոռացումն առնէ ահեղ աւուրն դատաստանին եւ լինին պատճառք կորստեան ամբարիշտ մարդկան»[6]:

Աստվածաշնչում *գուսան*-ը, բնականաբար, նույնպես հաճախական չէ: Վկայված են հետևյալ օրինակները. «Միթէ գիտիցե՞մ ինչ ի մէջ բարւոյ եւ չարի ... կամ թէ լսիցե՞մ տակաւին զձայն գուսանաց եւ վարձակաց» /Բ.Թագ., ԺԹ. 35/: «Արարի ինձ գուսանս եւ երգեցիկս՝ արս եւ կանայս...» /Ժող., Բ, 8/:

Ռուսերեն Ս. Գրքի նշված օրինակներում *գուսան* բառին համապատասխանում է певец-ը: Ի դեպ, ռուսերենը певец է թարգմանում նաև այն դեպքերում, երբ հայերենի համապատասխանը ոչ թե *գուսանն* է, այլ սաղմոսանուագը. հմմտ. «Еман певец, сын Иоля...», «Էման սաղմոսանուագ» /Ա. Մնաց., Զ, 33/: «И певцы сыновья Асафевы». «Եւ սաղմոսանուագքն որդիք Ասափայ» /Բ. Մնաց., ԼԵ, 15/:

Ըստ վկայված օրինակների՝ գուսանները նաև կանայք են. հմմտ. «Երաժիշտ էր, ուսուցանէր զգուսանս կանայս և վարձ առնոյր» /ՆՀԲ/: ՆՀԲ-ի մեկ այլ վկայությամբ գուսանի՝ կին լինելը պարզ է դառնում միայն հունարեն համապատասխանակից. «Կանխեցին իշխանք հանել զօրհնութիւն ի մէջ գուսանաց և գովչաց» /հուն. երիտասարդուհեաց/: *Գուսան*-ի վերոհիշյալ կիրառությունը հաճախական չէ, այդ իմաստով երբեմն գործածվում է *վարձակ*-ը՝ ի հակադրություն *գուսան*-ի: «...կամ թէ լսիցեմ տակաւին զձայն գուսանաց եւ վարձակաց» /Բ. Թագ., ԺԹ. 35/: Ռուսերեն՝ «И буду ли в состоянии слышать голос певцов и певец?»:

Երգիչների սեռային տարբերակումը արտահայտվում է նաև այր/կին բառերի միջոցով. «Եւ ամենայն իշխանքն արք եւ կանայք ասացին զողբսն ի վերայ Յովսեայ...» /Բ.Մնաց., ԼԵ, 25/ /իշխանքն՝ եբր. բնագրում երգեցողք/: «Որք էին երգեցիկք սաղմոսասացք արք եւ կանայք՝ երկերիւր քառասուն և հինգ» /Նէեմ, Է, 67/:

*Խաղ*-ի «երգ» իմաստը գրաբարի բառարանները չեն արձանագրում: Բառը, ինչպես նաև *խաղ ասել* «երգել», *խաղ կապել* «երգ հորինել» կապակցությունները գործածական են բարբառներում: Եթե հավաստի է *խաղ*-ի հ.-ե. ծագումը /Ջահուկյան, 1987, էջ 134, 176/, ապա կարելի է ենթադրել *խաղ* «երգ»-ի գոյությունը գրաբարում՝ հաշվի առնելով նաև բառի «ծաղր, ծանակ» իմաստը՝ նաև ժողովրդախոսակցական *խաղ ու պար* կապակցությունը:

*Տաղ*-ի համար գրաբարի բառարանները նշում են և «երգ» իմաստը: Ըստ Արմ-ի՝ «երգ, քերթուած, ոտանաւոր». Գ.Ջահուկյանը *երգ*-ի հոմանիշային շարքում նշում է միայն *տաղ* բառը[7]: Աճառյանը նկատել է, որ դասական գրաբարում *տաղ*-ը չի գործածվել. հավելենք, որ հետդասական շրջանի ինքնուրույն գրականության մեջ էլ այն հաճախական չէ: ՆՀԲ-ի վկայած օրինակներից

էլ հստակ չէ *տաղ*-ի «երգ» իմաստը: *Տաղ*-ի գործառական շրջանակները ընդլայնվել են միջինհայերենյան փուլից:

Ուրեմն՝ *տաղ-երգ* հոմանիշային շարքը կարելի է ընդունել խիստ վերապահությամբ:

*Երգ, երգել*-ի հետ հոմանշային եզրեր ունեն *գեղգեղանք, գեղգեղել, գեղօն* բառերը:

Իմաստային ենթախմբում ամենագործածականը *երգ* բառն է, որը բառակազմական գործուն բաղադրիչ է: *Երգ* բաղադրիչով գրաբարյան կազմություններն են. երգաբան, երգաբանել, երգաբանութիւն, երգագիր, երգագրել, երգագրութիւն, երգակ, երգիչ, երգակից, երգակցել, երգակցութիւն, երգահան, երգաձայնութիւն, երգայարդար, երգասողութիւն, երգատրութիւն, երգարան, երգել, երգեցիկ, երգեցող, երգեցողական, երգեցողութիւն, երգիչ, երգող, երգողաբարբառ, երգողական, երգողասէր, երգողութիւն, եղերերգութիւն, զուգերգող, կաքաւերգիչ, նախերգաբար, նախերգակ, նախերգել, նախերգութիւն, նուագերգել, նուագերգություն, նուագերգիչ, ողբերգագին, ողբերգակ, ողբերգական, ողբերգակեմ, ողբերգել, ողբերգութիւն, ողբերգակութիւն, պարերգակ, պարերգող, պարերգութիւն, սաղմոսերգ, սաղմոսերգել, սաղմոսերգիչ, սաղմոսերգող, սաղմոսերգակ, սաղմոսերգութիւն, տաղերգութիւն, քնարերգակ, քնարերգութիւն, քնարերգող, օրհներգաբար, օրհներգական, օրհներգելի, օրհներգու, օրհներգութիւն:

*Քնարերգող* բառը ՆՀԲ-ը չունի: Այն առկա է Ոսկեբերանի գործերից մեկում: «... ոչ զքնարէն և ոչ զայլ իմեքէ ... այլ զնուագարէն և զքնարերգողէն...» /Ոսկ.,Պօղ., II, 143-144/:

*Կաքաւերգիչ* և *նուագերգիչ* բառերը նույնպես չունի ՆՀԲ-ը: Դրանք մեզ հանդիպել են Սիմեոն Աղձնեցու վերոհիշյալ գործում. «Եւ զնուարգերգիչ քնարից սաղմոսաց», «արդ ծանեաւ թշնամին, եթէ մեծ զէն են կաքաւերգիչքն իւրոյ չարութեան...»[8]:

Մի շարք կազմությունների բառակազմական հիմքերը բառարաններում վկայված չեն՝ եղերերգ, ողբերգ, զուգերգ, պարերգ, նախերգ, տաղերգ, օրհներգ չկան, կան՝ եղերերգութիւն, զուգերգող, պարերգակ, պարերգութիւն, օրհներգաբար, օրհներգական... Մի շարք բառերում էլ *երգ* արմատի հիմնական իմաստը մթագնված է:



Օրինակ՝ ըստ ԱԲ-ի *նախերգաբար* նշանակում է «վաղուց», *նախերգակ*՝«նախընթաց բան», *նախերգան*՝«սկիզբ»:

*Նուագ* բաղադրիչով են հետևյալ բառերը. նուագածու, նուագակից, նուագայարդար, նուագարան, նուագարանական, նուագաւոր, նուագել, նուագերգ, նուագերգել, նուագերգիչ, նուագերգութիւն, նուագութիւն, աննուագ, արտանուագ, յարմարանուագ, քաղցրանուագ: ՆՀԲ-ը *յարմարանուագ* բառը չունի: ԱԲ-ը մեկնում է «բազմութեամբ երգ»: Մեզ հանդիպած օրինակում բառը ունի թերևս «լավ երգ, պատշաճ երգ, երաժշտություն» իմաստը: «Ուստի և զամենայն յարմարանուագն հնչեցէք, որ ոչ զմարդիկ միայն այլ զվերին զօրութիւնսն հրճուցեցոյց» /Ոսկ., Ճառ., 447/: *Արտանուագ*-ը հունաբան կազմություն է՝ էքսմելես-ի պատճենումը, որը կարելի է թարգմանել «*անմեղեղի, տհաճ, անախորժ* երաժշտություն»: Ակնհայտ է, որ *երաժշտություն* իմաստային խմբի որոշ միավորներ հեթանոսական մշակույթին, գեղջուկ, ժողովրդական երգարվեստին բնորոշ բառեր են: Դրանց իսկությունը ակներև է դառնում նաև մատենագրության տվյալ հատվածի համատեքստում: Գեղջուկ երգերը ակունքվել են հեթանոսական շրջանից, գոյատևել նաև քրիստոնեական շրջանում, և ինչպես նշում է Ն. Թահմիզյանը՝ «Հայաստանում վաղ ավատատիրական հարաբերությունների կազմավորման շրջանում ձևավորվում է հայկական քրիստոնեական եկեղեցին, որն ստանձնելով ավատատիրության պաշտոնական գաղափարախոսի դերը, իր հսկողության տակ է առնում հայոց մշակութային, այդ թվում և երաժշտական կյանքը... անկախ դրանից Հայաստանում վաղ ավատատիրական շրջանում շարունակում են ծաղկել աշխարհիկ երգ-երաժշտության ճյուղերը»[9]:

Արվեստագետը նշում է *շեր* և *շոիչք* կոչվող երգիծական երգերը: Առաջինը վկայված է Հ.Մամիկոնյանի գործում, երբ թշնամուն հաղթելուց հետո Վահան Կամսարականին և Վարազ Պալունուն ընդառաջ են գալիս «արք գեղջն երգօք և պարուք», որոնք «*շեր հանեալ* ասէին «կերան զազանք զմարմինս դիակացն և գիրացան, կուզն կերեալ ուռեաւ իբրև զարջ» /ն.տ./:

*Սոիչ* /նաև *սոինչք*/ վկայել է Ստ.Սյունեցին. «Զկատակերգութիւն աշխարհօրէն... զեպերականն և զհեգնականն առնել ճառս և սոիչս, որպես ռամիկքն սովորաբար ստեղծանեն առ այնոսիկ»[10]:

*Պար(ել)* հասկացությունը արտահայտվում է հիմնականում *պար, կաքաւումն, կայթ, խաղ, ցուց* բառերով: Պարը, պարելը քրիստոնեությունը չէր խրախուսում: Գրաբար մատենագրության մեջ այդ հաստատող բազմաթիվ վկայություններ կան: Ահա մի հատված «Կանոնագիրք հայոց»-ից. «Չէ մարթ քրիստոնէից ի հարսանիս երթալ եւ կաքաւել կամ պարու գալ, այլ պարկեշտութեամբ ընթրիս ուտել եւ ճաշակել որպէս եւ վայել է քրիստոնէից» /1964, 227/:

Բնականաբար, *պարել* հասկացությունն արտահայտող բառերը մեր մատենագիտության մեջ քիչ են: Նվազ հաճախական են հատկապես *կայթել* և *ցուց* բառերը:

*Կայթել* V դարի հեղինակներից վկայել է թերևս միայն Ագաթանգեղոսը. «Երգս առեալ բարբառեցան կայթիւք վազելով, ցուց բարձեալ մարդկանն» /Ագաթ., 99/:

*Ցուց*-ը Արմ-ը մեկնում է «ուրախութեան խաղ, երգ, պար, կայթիւն»:

Բացի վերոհիշյալ օրինակից *ցույց*-ը վկայել է և Խորենացին. «Հինքն Արամազնեայց ի նուագս փանդռան և յերգս ցցոց և պարուց զայսոսիկ ասեն յիշատակաւ» /Խոր., 27/:

ՆՀԲ-ը *կայթեմ* բառով ոչ թարգմանական գործերից վկայություն չի բերում, իսկ *ցուց*-ով Խորենացու և Ագաթանգեղոսի վկայություններն են: Ցուց-ի՝ ՆՀԲ-ի բացատրության մեջ «պար» իմաստը ցայտուն չէ: «Որպէս թէ ցունծք, այսինքն ցնծութիւն /անհաջող ստուգաբանություն – Լ.Հ./ կամ ցոյցք ուրախութեան, հանդէս, ձայն նուագաց կամ նուագ ձայնից. շաչիւն. շառաչիւն»: «Պար» իմաստը չի նշում և ԱԲ-ը: *Ցուց* բառի «պար» իմաստը ակնհայտ է հատկապես Խորենացու վերոնշյալ վկայության մեջ:

*Ցուց/ք/* բառը Արմ-ում ստուգաբանված չէ: Ուշագրավ մեկնություն ունի Ստ.Մալխասյանը. «Ցուց կամ ցուցք. պարի մի տեսակի անունն է, բայց որ տեսակի՝ որոշ չէ: Տարբեր կերպով են հասկանում: Քանի որ բառը գործ է ածվում պար բառի մոտ, որ



տառացի նշանակում է կլոր պար, բոլոր պար, երբ պարողներն իրար ձեռքից բռնած մի շրջան են ձևացնում՝ կարծում ենք, թե ցուցքը հակադրությամբ պետք է նշանակե կենտ պար, ինչպես է լեզորին /լեզգինկան/: Ագաթանգեղոսի մեջ այս բառի գործածությունը /«կայթիւք վազելով, ցուց բարձեալ զքաղաքամէջսն լցին»/ հարմար է գալիս մեր ենթադրած նշանակության»[11]: Խաղալ «պարել» իմաստով հավաստի վկայություններ մեր ձեռքի տակ չկան: Այն ենթադրելի է խաղալիկ-ի «պարող, պարուհի» իմաստից. «Դարձեալ առցես զթմբուկ քո եւ ելցես ընդ ժողովս խաղալկաց» /Երեմ., ԼԱ, 4/: Ռուս. թարգմանության մեջ՝ «Снова будешь украшаться тимпанами твоими и выходить в хороводе веселящихся»:

Գրաբարի բառարանները չունեն *ոտնածել* բառը, որը թերևս նշանակում է «պարել»: Ահա մեզ հանդիպած միակ օրինակը. «Եւ զոտնածել կաքաւչաց մատամբքն զնուագսն յաւրինել» /Եմես., Ճառ., ԺԳ, 355-356/:

*Պար/ել/*և *կաքաւել* առավել հաճախական են. դրանք վկայված են Vդ. և՛ ինքնուրույն, և՛ թարգմանական գրականության մեջ, թեև, ինչպես նշել ենք, *պարել*-ը քրիստոնեական բարոյականությունը չի խրախուսում:

Հ.Ոսկերբերանը, մեկնելով Աստվածաշնչի *ոտիւքն կաքաւէին* /Ես., Գ. 10/ հատվածը, գրում է. «...զայս ոչ ինչ սակաւ լկտութեան օրինակ է, զի ամենեւին և աչօք և հանդերձիւք և ոտիւք և գնացիւք մերկացեալ զգածութիւն՝ ի լկտութիւն կործանէին... իբրեւ քարոզք իմն են անդամքն հտպիտ խաղալիկք. զի զորօրինակ նկարչաց խառնեալ զերանգս՝ զի՞նչ կամիցին պատկեր նկարել նկարիցեն, նոյնպէս և անդամոյ մարմնոյ խաղալիկք՝ զբարս մտացն հաւաստեաւ նկարեն և յայտ յանդիման ամենեցուն ցուցանեն» /Ոսկ., Ես., 36/:

Բուզանդը, խոսելով Ներսես Մեծի մահից հետո գլուխ բարձրացնող հեթանոսական ծեսերի և սովորույթների մասին, գրում է. «Ապա յետ մահուան Ներսիսի յորժամ զմեռեալսն լային, փողովք և փանդռովք և վնօք զկոծսն պարուցն կաքաւելով..., արք և կանայք պղծութեամբ ճիւաղութեամբ ... զմեռեալսն յուղարկէին» /193/:

Ինչպես նշում է ակադ. Գ.Ջահուկյանը, հայերենում «չի պահպանվել պարելու գործողության բնիկ հնդեվրոպական մասնագիտացված անվանում. խաղ/-ամ/ բառը, եթե այն իրոք բնիկ հնդեվրոպական է, բազմիմաստ է» /Ջահուկյան, 1987, 266/:

Եթե որոշ օրինակներում դժվար է զանազանել *պարել* և *կաքավել*-ի նրբիմաստային յուրահատկությունները, ապա օրինակներ էլ կան, որոնք հուշում են, որ *պարել* բառով արտահայտված հասկացությունը կապ ունի *պար*-ի նախնական նշանակության հետ՝ «շուրջ, շրջան»: Կարելի է ենթադրել, որ *պարել* սկզբնապես նշանակել է «շուրջպարը նաև խմբապարը», իսկ *կաքաւել*-ը՝ «մենապարը, ոչ շուրջպարը»: Ի դեպ, *պարել*-ի այդ նրբիմաստը երևում է և մատենագրության վկայած տվյալներից. հմմտ. «Յորս և դու հայեցեալ տեսէր շուրջ զաստուածային սեղանովն պարելով զտղայսն» /Փարպ., 35/: «... և սոքա որպէս օրիորդք պարեն շուրջանակի հանդերձ չորիւք եղանակօք, բազում բարեկարգութեամբ մնան միմեանց և յանկարծակի երագահաս ի հակառակն ոչ փոխարկին, այլ զուգակշիռն ի մէջ անցուցանել ոչ խափանին» /Ոսկ., Ճառք Անդր., Թ, 776/:

Աստվածաշնչում գործածված են *պարել*-ը և *կաքաւել*-ը:

Ուշադրության է արժանի մի հանգամանք ևս. Библия-ի плясать-ի /Բ. Թագ., Զ, 16, 21, Ժող. Գ. 4, Մատթ. ԺԱ. 17, ԺԴ. 6, Մարկ. Զ. 22/ հայերեն համապատասխանակը *կաքաւել* է. հմմտ. «Ետես զԴաւիթ արքայ զի կաքաւէր և նուագէր զնուագարանսն» /Բ. Թագ., Զ,16/: «Ժամանակ կաքաւելոյ» /Ժող., Գ.4/: «Եւ ի մտանել դստերն Հերովդիայ և ի կաքաւել» /Մարկ., Զ, 22/: Ռուս.՝ «Когда выйдут девицы Силомские плясать в хороводах» /Դատ., ԻԱ, 21/: Հատվածի հայերեն համապատասխանակն է. «Եւ յորժամ տեսանիցէք թէ ելանեն դստերք բնակչացն Սելովայ պար առեալ պարուք»:

Հիշյալ օրինակներից ակնհայտ է դառնում ոչ միայն *պարել*-ի և *կաքաւել*-ի հաճախականության պատկերը, այլև դարձյալ հաստատվում է, որ *պար, պարել*-ը ենթադրում է շուրջպարը:



Հայ թարգմանիչը պատահականորեն չէ, որ Դատ. ԻԱ. 21-ում գրում է *պար առեալ պարուք*, իսկ մյուս հատվածներում՝ *կաքավել*: Նա բծախնդրորեն հետևել է հունարեն բնագրին:

Ահա մեկ վկայություն ևս Աստվածաշնչից՝ հայերեն և ռուսերեն. «Լքան յուրախութենէ սիրտք մեր եւ դարձան ի սուգ օրհնութիւնք պարուց մերոց» /Ողբ. Երեմ., Ե, 15/: «Прекратилась радость сердца нашего: хороводы наши обратились в сетование»:

«Պարել» իմաստով *կաքաւ* արմատից գրաբարում առկա են հետևյալ կազմությունները. *կաքաւաճև* «կաքավելով, պարի նման», *կաքաւարան* «պարելու տեղ», *կաքաւել, կաքաւեցուցանել, կաքաւիչ* «պարող», *կաքաւութիւն* ...

*Պար* արմատով՝ *պար առնուլ* «պարել, շուրջպար բռնել», *զուգապարել* «պարակից լինել» /*զուգապար* բառարանները չեն վկայում/, *կռձապար* «կռձողների, լացկանների պար»:

### Երաժշտական գործիքներ

Գրաբար մատենագրությունը ավանդել է երկու տասնյակից ավելի լարային, փողային և հարվածային երաժշտական գործիքների անվանումներ: Զարմանալի է, որ այդ անվանումներում բնիկ հայերեն բառեր չկան, եթե չհաշվենք *երգարան* բառի *երգ* արմատը: Ընդհանրական են *երգարան* և *նուագարան* բառերը. «Եւ քանզի նոքա զերգարանսն ունէին, որ են նուագարանք, քանզի ասէ թէ զուռեաց նոցա կախեցաք զերգարանս... » /Պօղ., II, 22/:

Ընդհանրական անվանումներ են *գործի/ք/ երաժշտական* և *ձայնաւոր գործիք*-ը: «Իբրև գործւով երաժշտականաւ կարասցէ ոք յարմարել» /ՆՀԲ/: *Ձայնավոր գործի/ք*/ վկայված է Եղիշեի «Վասն հոգւոյ մարդկան թէ ուստի գան» գործում. «Ապա թե ոչ իցէ քնարն, չերեւի քնարահարն. սոյնպէս և ամենայն գործիք ձայնաւոր երգոցն ի ձեռն արուեստաւորին երեւին» /ՄՀ,Ա, 1064/: Կա և *ձայնաւոր արուեստ*, որը ՆՀԲ-ը չի վկայում. «...որ յաւրինեալ էր փողս եւ քնարս եւ սրինգ, որ ծնծղայք կոչի, փոխանակ որք ի տաճարին

Տեառն սաղմոսս, զոր նա յաւելուածով արար յամենայն ազգ ձայնատու արուեստից» /Վ.Արև., Դան., 57/:

*Իրանական լեզուներից* են հետևյալ բառերը. *բարբուտ, թմբուկ, տաւիղ, վին, նուագ/արան/:*

*Բարբուտ*-ը վկայված է ուշ շրջանից՝ եզակի օրինակով /Ուռհայեցի/, որը նշում է և ՆՀԲ-ը. «Նստան ի գինարբուս, սիրեցին զբարբուտ և զերգս գուսանաց»: ՆՀԲ-ը բառը մեկնում է «նուագարան. ազգ քնարի»:

Հունարենից են՝ *բամբիռն, երգիռն, սաղմոս/արան/, սրինգ:* ՆՀԲ-ը *բամբիռն* և *փանդիռն* նշում է որպես տարբեր բառեր: Արմ-ը ունի միայն *փանդիռն* վերագրելով փոքրասիական ծագում: *Փանդեռն* բառով կազմություններից են՝ *փանդեռնահար/փանդռնահար, փանդռնահարութիւն, փանդռներգութիւն, փանդռներգակ:* *Բամբիռն/բանդիռն* բառերով ՆՀԲ-ը բաղադրություններ չի նշում:

*Երգիռն*-ը Արմ-ը բացատրում է «մի տեսակ նուագարան»: Այսինքն՝ այդ գործիքի բնույթը հստակ չէ: ՆՀԲ-ն էլ մեկնում է. «...բառ յն. *օրգանօն.* այսինքն՝ գործի նուագաց. նուագարան, որ առ նախնիս էր որպէս *մըսխալ,* այսինքն սրինգ բերանով փչելի բազմաթիւ եղեգամբք աշտիճանաբար. նա և բազմափող ջրահնչակ. և առ յետինս շինեցաւ մեքենայ բազմափող, որ տայ զձայն պէտղ հողմաբեր օդով բքոց՝ հանդերձ բախմամբ մատանց»: 5-րդ դարի մի վկայությամբ հաստատվում է, որ *երգիռն*-ը փողային գործիք էր. «Որպէս և յերգիռնն արուեստապետն ընդ մի բերան փչէ և բազմաթիւն փողոցն հաւասարակ գոչեն. ոմն սուկ, ոմն թաւ և ոմն եւս թանձրագոյն...» / ՄՀ,Ա, 1099/:

Ասորերենից են՝ *ծնծղայ, շեփորայ, քնար /ջնար/:* Աճառյանը չի ընդունում, որ *քնար* և *ջնար* նույն բառերն են /տե՛ս Արմ., *Ջնար* բառահոդվածը/:

Մի շարք բառերի ծագումը հստակ չէ. *գաւիկ/գաւին, կտակարան, ջութակ, սրուիլ, փող:* *Գաւիկ/գաւին*-ը Արմ-ը համարում է սխալագրություն և ուղղում՝ *վին* /տե՛ս Արմ., Գաւիկ բառահոդվածը/:

*Կտակարան* գործիքի անվանում գրաբարի բառարանները չեն վկայում: Աստվածաշնչում կա մի այսպիսի նախադասություն.



«Ի մէջ ուռեաց նոցա կախեցաք զկտակարանս մեր» /Սաղմ., ՃԼԶ, 2/: Եբրայերենի համապատասխանակը՝ *զքնարս, հուն.*՝ օրգանա, ռուսերեն թարգմանությունը՝ «на вербах, посреди его повесили мы наши арфы»:

*Սրուիլ*-ը նույնպես գրաբարի բառարաններում չկա: Այն մեզ հանդիպել է Ս.Եփրեմի կցուրդներում. «Սրուիլս հարկանեն երիտասարդք և ջնարաւորք երգեն ջնարիւք» /Եփր., Կց., 6/: Թերևս բառի զուգահեռներ են ռուս. свирель, բուլղ. свирол-ը, բայց գրաբարյան վկայության բուն աղբյուրի հարցը պարզ չէ: *Ջութակ*-ի միակ վկայությունը ՆՀԲ-ում Նարեկացուց է:

Մատենագրության մեջ ավանդված են նաև մի քանի երաժշտական գործիքների մասեր՝ *լար, աղի* «լար», *կնտնտոց, հարիչ, եղջիւրահար...*

Կան վկայություններ գործիքների կազմության, գործառութային և հնչերանգային առանձնահատկությունների մասին. օրինակ՝ փողը որպես բանակի /ռազմական նվագարան/, նրա պղնձյա և եղջերյա տեսակները, աւագափող, գալարափող անվանումները[12]: «Զոր մարգարէն աւագափող զնա անուանէ» /ՆՀԲ/: «Ի ձայն մեծ գալարափողոցն զիւր գունդսն ստիպէր» /Եղիշ., 118/: «Եւթնաղի քնարն գրեթէ քան զամենայն գործիս լաւագոյն է» /Փիլ., ՆՀԲ/: «Որպէս զչորեքաղեան երգարանս տես դու զմեզ» /ՆՀԲ/: /*Երգարան* այստեղ երաժշտական գործիքի անվանում է/: «Տաւնաղեաւ սաղմոսարանաւ սաղմոս ասացէք նմա» /Սաղ., ԼԲ, 2/:

Երաժշտագետ Կարինե Խուդաբաշյանը, անդրադառնալով փռյուգիական-հունական *ավլոս* երաժշտական գործիքին, գրում է. «Հին ժամանակներում հայերն այդ նվագարանն անվանում էին «օղ»: Կամ գուցե՝ «փող»: Հավանաբար, Փավստոս Բուզանդի մոտ հիշատակված փողերը հենց այն նվագարաններն են, որոնց այժմ զուռնա կամ դուդուկ են անվանում»[13]:

*Երաժիշտ* «որևէ գործիքի վրա նվագող» հասկացությունը գրաբարում հաճախ արտահայտվում է *երաժշտական գործիքի անվանում + հար* բաղադրիչով. «Եւ առհասարակ թմբկահարք և սրնգահարք, քնարահարք և փողահարք իւրաքանչիւր արուեստօք պէսպէս ձայնիւք բարբառեցան» /Բուզ., 196/:

*Նուագածու*-ն երաժիշտն է, նվագողը, իսկ *նուագայարդարը*՝ նաև *երգայարդարը*՝ հորինողը՝ երգահանը. «Տուք ձայն բարբառոյ նուագածուաց ի մէջ ցնծացելոց» /Դատ., Ե, 11/: «Սիմոնիդէս նուագայարդար ճանաչէր և Քսէնոփանէս... երգահան... /Եւս., Քր., II, 200/:

*Բամբռաաաց*-ը բամբիռ նվագողն է կամ նվագելով երգողը:

Աստվածաշնչում՝ ավելի կոնկրետ Սաղմոսներում, վկայված երաժշտական գործիքների անվանումների թարգմանության վերաբերյալ նուրբ և ուշագրավ դիտարկումներ ունի Լ.Տեր-Պետրոսյանը: «Սաղմոսների հայերեն թարգմանության մեջ նկատվում է մի չափազանց հետաքրքիր երևույթ: Այնտեղ, որտեղ հունարենում և մյուս բնագրերում հիշատակվում են երաժշտական գործիքներ, հայերենը դրանց անվանումները փոխարինում է վերացական «օրհնաբանական» բառերով»:

Նա բերում է բազմաթիվ զուգահեռներ. ահա մի քանի նմուշ. /տպագրական դժվարություններից խուսափելու համար հունարեն համապատասխանակները չենք նշում/:

| | Հայերեն թարգմանություն | Յոթանասնից և մյուս բնագրեր |
|---|---|---|
| ՃԾ.3 | օրհնեցէք զնա *ի ձայն օրհնութեան* | ի ձայն փողոյ |
| ՃԾ.4 | օրհնեցէք զնա *ցնծութեամբ* գովեցէք զնա *ուրախութեամբ* | թմբկաւ և պարուք աղեօք և տաւղաւ |
| ՃԾ.5 | օրհնեցէք զնա ի բանս քաղցունս | ի ծնծղայս քաղցունս |

Սաղմոսների թարգմանության այս յուրահատկությունը ըստ Լ.Տեր-Պետրոսյանի վկայում է, «որ հայ եկեղեցում երաժշտական գործիքների գործածությունը մերժված է եղել»:

Նկատելով, որ, այնուամենայնիվ, Սաղմոսներում երաժշտական գործիքներից կան *սաղմոսարան, փող* անվանումները, Լ.Տեր-Պետրոսյանը գրում է. «Թե ինչու է հանդուրժվել *տասնաղիւ սաղմոսարան* անվանումը, պարզ է. ըստ երևույթին Հայաստանում այդպիսի գործիք չի եղել, և *սաղմոսարան* բառն էլ, կապված լինելով *սաղմոս*-ի հետ, հավատացյալների մոտ որևէ հեթանոսական հիշողություն չի արթնացրել: Իսկ *փողը*, ինչպես հայտնի է, հնում ոչ այնքան նվագածության գործիք էր, որքան հանդիսությունների, տոնախմբությունների ազդանշան»[15]:

Նկատված է նաև, որ Աստվածաշնչի մյուս գրքերում երաժշտական գործիքները հայերեն թարգմանությամբ վերարտադրվել են իրենց համարժեքներով: Սաղմոսներում այդ անվանումների տարափոխվելը Լ.Տեր-Պետրոսյանը բացատրում է՝ նշելով, որ «սաղմոսներն էին կազմում պաշտոներգության հիմնական բովանդակությունը»[16]:



## ԾԱՆՈԹԱԳՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

1. Տե՛ս Համաբարբառ Հին և Նոր կտակարանաց, Երուսաղէմ, 1895:
2. Այս և հետագա հղումները տե՛ս Библия. Книги священного писания Ветхого и Нового завета, М., 1994:
3. Տե՛ս Հայերենագիտական միջազգային երկրորդ գիտաժողով, զեկուցումների դրույթներ,Ե., 1987, 32:
4. *Երգէր ձեռամբ*-ի, *ցցոյց երգ*-ի, *թուելյաց երգ*-ի մասին տե՛ս նաև Հ.Ստեփանյան, Հին Հայաստանի երաժշտական մշակույթի հարցերը Սրբ. Լիսիցյանի աշխատություններում /Շիրակի հայագիտական հետազոտությունների կենտրոն, գիտական աշխատություններ/, 6, 2003, էջ 104-109:
5. Տե՛ս Ռ. Ղազարեան, Գրաբարի հոմանիշների բառարան, Ե., 2006, էջ 536: Բծախնդիր լինելու դեպքում շարքի անդամների թիվը կարող է աճել:
6. Տե՛ս Աճեմյան մատենաշար, Ա,Ե., 2002, 191:
7. Գ.Ջահուկյան, Հայոց լեզվի պատմություն. նախագրային ժամանակաշրջան, Ե., 1987, 396:
8. Տե՛ս Աճեմյան մատենաշար, էջ 189,190:

9. Ն. Թահմիզյան, Գրիգոր Նարեկացին և հայ երաժշտությունը 5-15-րդ դդ., Ե., 1985, էջ 15:
10. Տե՛ս Н. Адонц, Дионисий фракийский и армянские толкователи, С. Петербург, 1915, ст. 193:
11. Տե՛ս Մովսես Խորենացի, Հայոց պատմություն. աշխարհաբար թարգմանությունը և մեկնաբանությունները Ստ. Մալխասյանի, Ե., 1981, էջ 464:
12. Այդ մասին տե՛ս նաև Հ.Հարությունյան, Հ.Ափինյան, Նվագարանները հին հայոց բանակում /Շիրակի հայագիտական կենտրոն, գիտական աշխատություններ/, 9, 2006, էջ 81-84:
13. Կարինե Խուդաբաշյան, Հայ-փոյուգիական և հայ-խեթական կապերը երաժշտագիտական տեսանկյունից /Հայագիտության արդի վիճակի և զարգացման հեռանկարները. միջազգային համաժողով, Ե., 15-20 սեպտեմբերի, 2003թ., զեկուցումների ժողովածու, Ե., 2004թ., էջ 449/:
14. Լ.Տեր-Պետրոսյան, Սաղմոսների հայերեն թարգմանությունը և նրա նախօրինակը, Էջմիածին, 1975, Ա, էջ 48:
15. Նույն տեղում:
16. Նշվ. աշխ., էջ 41-51:



## ՀԱՄԱՌՈՏԱԳՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ ՕԳՏԱԳՈՐԾՎԱԾ ԳՐԱԿԱՆՈՒԹՅԱՆ ՑԱՆԿ


ԱԲ, Առձեռն բառարան հայկազնեան լեզուի, Վենետիկ, 1865:

Ագաթ., Ագաթանգեղայ Պատմութիւն Յայոց, աշխատութեամբ Գ. Տէր- Մկրտչեան և Ստ. Կանայեանց, Տփղիս, 1909թ.:

Աթանաս, Սրբոյն Աթանասի Աղէքսանդրիոյ հայրապետի ճառք, թուղթք և ընդդիմաս/ա/ցութիւնք, Վենետիկ, 1899թ.:

Անկ. գիրք առաք., Անկանոն գիրք առաքելականք, Վենետիկ, 1904թ.:

Անկ. գիրք հ. կտ. , Անկանոն գիրք հին կտակարանաց, Վենետիկ 1896թ.:

Արծր., Թովմա Արծրունի, Պատմութիւն տանն Արծրունեաց, Կ. Պոլիս, 1852, Պետերբուրգ, 1887, Ե., 1985թ., 2006թ.:

Արմ., Յր. Աճառյան, Յայերեն արմատական բառարան, հտ. 1-4, Ե., 1971-1979թթ.:

Բզմվկ, Բազմավէպ:

ԲՄ, Բանբեր Մատենադարանի:

Բուզ., Փաւստոսի Բուզանդացւոյ Պատմութիւն հայոց, Ս. Պետերբուրգ, 1883թ.:

Բրսղ, Բարսեղ Կեսարացի, Յաղագս վեցաւրեայ արարչութեան. աշխատասիրութեամբ Կիմ Մուրադյանի. Ե., 1984թ.:

Բրսղ, Պահ., Ս. Բարսեղ Կեսարացի, Գիրք պահոց. աշխատասիրությամբ Կիմ Մուրադյանի, Ս. Էջմիածին, 2008թ.:

Գիրք պիտ., Գիրք պիտոյից. աշխատասիրությամբ Գոհար Մուրադյանի, Ե., 1993թ., նաև՝ Խոր., Մատ., 339-381:

Դ. Անյղթ, Ստորոգ., Դաւիթ Անյաղթ, Մեկնութիւն «Ստորոգութեանցն» Արիստոտելի /տե՛ս Դաւիթ Անյաղթ. Երկասիրութիւնք փիլիսոփայականք. համահավաք քննական բնագրերը և առաջաբանը Ս.Ս.Արևշատյանի, Ե, 1980թ.:

Դիոն. քեր., Արուեստ Դիոնիսեայ քերականի եւ հայ մեկնութիւնք նորին. ի լոյս էած եւ ի քննին արկ Ն.Ադոնց, Պետրոգրադ, 1915թ.:

Դրասխ., Յովհաննու կաթողիկոսի Դրասխանակերտեցւոյ Պատմութիւն հայոց, Թիֆլիս, 1912թ.:

Եզն., Եզնկայ վարդապետի Կողբացւոյ Եղծ աղանդոց, Վենետիկ, 1826թ.:

Եղիշ., Եղիշէի Վասն Վարդանայ և Հայոց պատերազմին. Ի լոյս ածեալ

բաղդատութեամբ ձեռագրաց աշխատութեամբ Ե. Տէր-Մինասեան,

Ե., 1957թ.:

Եղիշ., Մատ., Սրբոյ հօրն մերոյ Եղիշէի վարդապետի մատենագրութիւնք, Վենետիկ, 1859թ.:

Եղիշ., Մեկն. արարծ., Եղիշէ, Մեկնութիւն արարածոց, ՄՀ, Ա: Նաև՝ Եղիշէ, Մեկնութիւն արարածոց. աշխատասիրությամբ Լ.Խաչիկյանի, ծանոթագրությամբ Հ. Քյոսեյանի, Ե., 2004թ./:

Եմես., Ճառ. , Եւսեբիայ եպիսկոպոսի Եմեսացւոյ ճառք, ՀԱ, 1956-1959թթ.:

Եմես., Մեկն., Եւսեբիոսի Եմեսացւոյ Մեկնութիւնք ... Վենետիկ, 1980թ.:

Եւագր., Ս. հօրն Եւագրի Պոնտացւոյ Վարք և մատենագրութիւնք, Վենետիկ, 1907թ.:

Եւս., Պատմ., Եւսեբիոսի Կեսարացւոյ Պատմութիւն եկեղեցւոյ, Վենետիկ, 1877թ.:

Եւս., Քր., Եւսեբի Պամփիլեայ Կեսարացւոյ Ժամանակականք երկմասնեայ /Քրոնիկոն/, Վէնէտիկ, 1818 թ.:

Եփր., Կց.,Կցուրդք երանելւոյն Եփրեմի Խորին Ասորւոյ, Վիեննա, 1957 թ.:

Եփր., Մատ., Ս. Եփրեմի Մատենագրութիւնք, Վենետիկ, 1836 թ.:

Թովմ., Դան., Տե'ս Վ. Արեւ. Դան. համառոտագրությունը:

Իսիք., Իսիքիոսի երիցու Երուսաղէմացւոց Մեկնութիւն Յոբա, Վենետիկ, 1913թ.:

Լաբուբ., Լաբուբնեայ թուղթ Աբգարու, Վենետիկ, 1868թ.:



Լամբ., Մատ., Սրբոյն Ներսեսի Լամբրոնացւոյ Տարսոնի եպիսկոպոսի խորհրդածութիւնք ի կարգս եկեղեցւոյ... Վենետիկ, 1847 թ.:

Խաչիկ., Եղիշ., Մեկն արարած., Լևոն Խաչիկյան, Եղիշեի «Արարածոց

մեկնությունը», Ե., 1992թ.:

Խոր., Մովսիսի Խորենացւոյ Պատմութիւն Հայոց. աշխատութեամբ Մ. Աբեղեան և Ս. Յարութիւնեան, Տփղիս, 1913թ.:

Խոր., Մատ., Սրբոյ հօրն մերոյ Մովսէսի Խորենացւոյ Մատենագրութիւնք, Վենետիկ, 1865թ.:

Կանոն., Կանոնագիրք հայոց. աշխատասիրությամբ Վազգեն Հակոբյանի, հ. Ա-Բ, Ե., 1964, 1971թթ.:

Կղնկտ., Մովսէս Կաղանկատուացի, Պատմութիւն Աղուանից աշխարհի. քննական բնագիրը և ներածությունը՝ Վարագ Առաքելյանի, ,Ե., 1983թ.:

/Կղնկտ. Շինգ. համառոտագրությունը վերաբերում է 1860թ. Փարիզ, հրատարակությանը/:

Կոչ. ընծ., Կիւրղի Երուսաղեմայ հայրապետի Կոչումն ընծայութեան, Վիեննա, 1832թ.:

Կոր., Կորիւն, Վարք Մաշտոցի, բնագիրը, ձեռագրական այլ ընթերցվածներով, թարգմանությամբ.... ի ձեռն պրոֆ. դ-ր Մանուկ Աբեղյանի, Ե, 1941թ.:

ՀԱ, Հանդէս ամսօրեայ:

Հիշատ.,Հայերեն ձեռագրերի հիշատակարաններ Ե-ԺԲ դդ. աշխատասիրությամբ Ա. Ս. Մաթևոսյանի , Ե., 1988թ.: ԺԴ դար՝ Ե., 1984: ԺԴ դարի հայերեն ձեռագրերի հիշատակարաններ. կազմեց Լ. Ս. Խաչի-կյան, Ե.,1950թ.: ԺԵ դարի հայերեն ձեռագրերի հիշատակարաններ, մասն Ա, Բ, Գ. կազմեց Լ. Ս. Խաչիկյան, Ե., 1955, 1958, 1967թթ.:

ՀԼՊ, Հ.Աճառյան, Հայոց լեզվի պատմություն, հտ. 1-2, Ե., 1940, 1951թթ.:

Ղեւոնդ, Ղեւոնդեայ վարդապետի Պատմութիւն, Ս. Պետերբուրգ, 1887թ.:

Մագ. Թղթ., Գրիգոր Մագիստրոսի թղթերը. հրտ. Կ. Կոստանեանց, Աղէքսանդրապօլ, 1910թ.:

Մագ. Քեր., Գր. Մագիստրոսի Մեկնութիւն քերականին /տե՛ս Դիոն. քեր., 223-249/:

Մանդ., Յովհաննու Մանդակունւոյ Հայոց հայրապետի ճառք, Վենետիկ, 1860թ., ՄՀ, Ա:

Մխ. Այր.,Մխիթար Այրիվանեցի, Գանձեր և տաղեր. աշխատասիրությամբ Էլեոնորա Հարությունյանի, Ե., 2005թ.:

Միխ. Ասորի, Տեառն Միխայէլի պատրիարքի Ասորւոյ ժամանակագրու-թիւն,Երուսաղէմ, 1870:

ՄՀ, Մատենագիրք Հայոց, Ա-Ե հատորներ. Անթիլիաս-Լիբանան, 2003-2005թթ.:

Ն. Բիւզ., Նոր բառգիրք Հայկազեան լեզուի. սրբագրուած և ճոխացուած Նորայր Ն.Բիւզանդացու ձեռքով. հրատարակութեան պատրաստեց Մարտիրոս Մինասեանը, Ժնեւ, 1990թ.: / ՆՀԲ-ի տպագիր օրինակի վրա ձեռագրով արված հավելումներ են/:

ՆԳ. Մնաց., Գիրք մնացորդաց ըստ հնագոյն հայ թարգմանութեան. զառաջինն ած ի լոյս ըստ կրկին ձեռագիր օրինակաց, հանդերձ բ լուսագիր նմանատպութեամբ նոցին, Գրիգոր Խալաթեանց, Մոսկուա, 1899թ.:

ՆՀԲ, Նոր բառգիրք հայկազեան լեզուի, հ. 1-2, Վենետիկ, 1836-1837թթ.:

Ոսկ., գծ., Մեկնութիւն գործոց առաքելոց խմբագիր արարեալ նախնեաց յՈսկեբերանէ և յեփրեմէ, Վենետիկ, 1839թ.:

Ոսկ., Ես., Յովհան Ոսկեբերանի Մեկնութիւն Եսայեայ մարգարէի, Վենետիկ, 1880թ.:

Ոսկ., ճառք, Յովհաննու Ոսկեբերանի ճառք, Վենետիկ, 1861թ.:

Ոսկ., ճառք Անդր., տե՛ս Ոսկ., ճառք /Անդրիական ճառերը հետհինգերորդդարյան են/:

Ոսկ., ճառք Աշխ., Ս. Յովհան Ոսկեբերան, ճառք. Աշխարք ի մեկնութեանց Սուրբ Գրոց. աշխատասիրությամբ Հակոբ Քյոսեյանի, Ս. Էջմիածին, 2008թ.:



Ոսկ., Մտթ., Յովհաննու Ոսկեբերանի յաւետարանագիրն Մատթէոս, Վենետիկ, 1826թ.:

Ոսկ., Յհ., Յովհաննու Ոսկեբերանի Մեկնութիւն Աւետարանի Յոհաննու, Պոլիս, 1717թ.:

Ոսկ., Պօղ., Յովհաննու Ոսկեբերանի Մեկնութիւն թղթոցն Պօղոսի. հտ. Ա, Բ, Վենետիկ, 1862թ.:

Պատմ. Աղեքս., Պատմութիւն Աղեքսանդրի Մակեդոնացւոյ. աշխատասիրությամբ Հասմիկ Սիմոնյանի, Ե., 1989թ.:

ՊԲՀ, Պատմաբանասիրական հանդես:

Պիսիդ,Վեցօրեայք Գէորգայ Պիսիդեայ իմաստասիրի. տպագրեալ հանդերձ յոյն բնագրաւ եւ լուսաբանեալ ի հ. Աթանաս Վ. Տիրոյեան, Վենետիկ, 1900թ.: Նշվում են տողահամարները:

Սեբ., Պատմութիւն Սեբէոսի. քննական բնագիրը Գ. Վ. Աբգարյանի. արևելահայերեն թարգմանությունը, առաջաբանը և ծանոթագրությունները Գուրգեն Խաչատրյանի և Վանո Եղիազարյանի, Ե., 2004թ.: / Գ. Խաչատրյանը կազմել և հրատարակել է սույն գործի համաբարբառը/:

Սեբեր., Սեբերիանոսի Եմեսացւոյ ճառք, Վենետիկ, 1830թ.:

Վ. Արև., Դան., Վ. Արևելցի, Մեկնութիւն Դանիէլի մարգարէութեան /տե՛ս Հին կտակարանների գրքերի մեկնություններ, 20. աշխատասիրող Հակոբ Քյոսեյան,Ս. Էջմածին, 2007թ./:

Վարք հրնց, Վարք սրբոց հարանց, Վենետիկ, 1855թ.:

Վարք և վկ., Վարք և վկայաբանութիւնք սրբոց, Վենետիկ, 1874թ.:

Վկ. արև., Աբրահամու Խոստովանողի Վկայք արևելից, Էջմիածին, 1921թ.:

Տիմ. Կուզ, Տիմոթէոսի /Կուզի/ եպիսկոպոսապետի Աղեքսանդրեայ Հակաճառութիւն, Էջմիածին, 1908թ.:

Փարպ., Ղազարայ Փարպեցւոյ Պատմութիւն Հայոց և Թուղթք առ Վահան Մամիկոնեան. աշխատասիրութեամբ Գ. Տէր- Մկրտչեան եւ Ստ. Մալխասեան, Տփղիս, 1904թ.:

Փարպ. ԲՄ, Մուրադյան Պ., Յուզբաշյան Կ., Ղազար Փարպեցու Պատմության նորահայտ պատառիկը, ԲՄ, 1973թ.:

Փարպ., Թղթ., տե՛ս Փարպ. համառոտագրությունը:

Փիլ., Բանք, Փիլոնի Եբրայեցւոյ Բանք երեք..., Վենետիկ, 1822թ.:

Փիլ., Ճառ., Փիլոնի Հեբրայեցւոյ ճառք թարգմանեալք ի նախնեաց մերոց, Վենետիկ, 1892թ.:

Փիլ., Մնաց., Փիլոնի Եբրայեցւոյ Մնացորդք ի հայս, Վենետիկ, 1836թ.:

Օրբ., Պատմ., Ստեփաննոս Օրբելեան, Պատմութիւն տանն Սիսական. ի լոյս ընծայեաց Մկրտիչ Էմին, Մոսկվա, 1861թ.:



# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

Լավրենտի Շահենի Հովհաննիսյան

Գրաբարի բառապաշարի իմաստային խմբերի քննություն
/ II մաս/

Համակարգչային էջադրումը Վ.Պապյանի

Հրատ. պատվեր N 337
Ստորագրված է տպագրության 2012թ.:
Չափսը՝ 60 x 84 $^{1}/_{16}$: Թուղթ՝ օֆսեթ N 1:
տպագր. 11.5 մամուլ: Տպաքանակը՝ 150 օրինակ:
Գինը՝ պայմանագրային:

ՀՀ ԳԱԱ «Գիտություն» հրատարակչություն,
Երևան, Մարշալ Բաղրամյան պող. 24գ: